# ՀԻՒՍՈՒԱԾՔ

## ՀԱՅՈՑ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻ ՀԱՄԱՐ

ՅԱՌԱՋԱԲԱՆ, ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ, ԺԱՄԱՆԱԿԱ-
ԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՏՈՒԱԾՆԵՐ

---

Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆՑ

ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

[illegible]

ԽՈՐԵՆԱՑԻ.

ՎԻԵՆՆԱ. 1877.

# ՀԻՒՍՈՒԱԾՔ

## ՀԱՅՈՑ ՄԱՐԶՊԱՆՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻ ՀԱՄԱՐ

ՅԱՌԱՋԱԲԱՆ, ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ, ԺԱՄԱՆԱԿԱ-
ԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՏՈՒԱԾՆԵՐ

Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆՑ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

*''Որք զիւրեանցն զժամանակս եւ զգ-
գործս իմաստութեամբ եւ զքաջութիւն իւ-
րաքանչիւր արձանագրութեան ի վէպս եւ ի
պատմութիւնս, ներբողականաց ի մէջ
արժանի եղեն առից. եւ մեք ընթեռնումք
զառ ի նոցանէ շարադրս բանից ըստ աշխար-
հօրէն կարգաց իմաստնանալ ջանիմ:,,*

ԽՈՐԵՆԱՑԻ:

ՎԻԷՆՆԱ. 1877.

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ

# ԳԷՈՐԳԱՅ Դ.

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ

ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՏՊԱԳՐԵԱԼ ԾԱԽԻՒՔ

ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄԿՐՏՉԻ ՍԱՐԳՍԵԱՆ

Յ. ՍԱՆԱՍԱՐԵԱՆՑ

## Բ. ԳՐՔԻ ՎՐԻՊԱԿՆԵՐԸ.

| Երես. | Տող. | | | Կարդա |
|---|---|---|---|---|
| 3 | 4 | | գտնում | գտնուում |
| 5 | 9 | | հրաժարում | հրաժարուում |
| 7 | 4 | | եւ տուական | եւ պատուական |
| | 12 | (ներքը) | Քուչանաց | Քուչանաց[6] |
| 16 | 10 | „ | Պահ-գունից | Պահ-գունից[7] |
| 23 | 6 | „ | կարողացան | կարողացան[4] |
| 30 | 7 | | հրովարտակ | հրովարտակ[1] |
| 41 | 1 | (ներքը) | ազգը | ազգը[1] |
| 42 | 10 | „ | պատրուճակներն | պատրուճակներն[2] |
| 45 | 11 | | Անգղ | Անգղ[3] |
| 50 | 10 | | քանդում է | սպանում է |
| 55 | 29 | | Ջանդալան | Ջանդալան |
| 56 | 1 | | „ | „ |
| 58 | 10 | | քաջութէան | քաջութեան |
| 59 | 3 | (ներքը) | եկեղեցին | եկեղեցուն |
| 71 | 13 | „ | եկեղեցիների | եկեղեցիներին |
| 76 | 14 | | ընկում | ընկնում |
| 77 | 6 | | Արտաշատում | Արտաշատում[2] |
| | 13 | (ներքը) | Դղոմն | Դղովճն |
| 79 | 14 | „ | ինք | ենք |
| 83 | 5 | | փափագ | փափագ |
| 95 | 2 | (ներքը) | ստանում | ստանամ |
| 103 | 14 | „ | վայելչէ | վայել չէ |
| | 11 | „ | քաշեցին. նորանից | քաշեցին, որ նորանից |
| 111 | 12 | „ | իրենն | իրեն |
| 123 | 6 | | ինչպես | ինչպէս |
| 125 | 8 | | ունելու | ունենալու |
| | 17 | (ներքը) | մեջ | մէջ |
| 127 | 3 | | հրաժարում | հրաժարուում |
| 136 | 6 | „ | Ոսեւան[1] | Ոսեւան[2] |
| 152 | 6 | | Հրեւում | Հրեւում[4] |
| 205 | 7 | | փողեր | փողեր[1] |
| 209 | 5 | (ներքը) | տո էք | տուէք |

## ՅԱՌԱՋԱԲԱՆ.

Անկարելի է պատմութիւն հասկանալ առանց ծանօթ լինելու նորա իսկական աղբիւրներին։ Հասկանալ ասացինք, որովհետեւ պատմական իրողութիւնքն իմանալ կարելի է նաեւ ամենայն մի դասագրքով. բայց թէ ի՞նչ կեանքի եւ ի՞նչ պայմանների ծնունդ են այն իրողութիւնքը, այդ մեզ անհասկանալի կամ գոնէ շատ մութն է մնում, մինչեւ որ չենք ծանօթանում ականատես կամ ժամանակակից պատմիչների գրութեանը։ Եւ այս՝ կրկին պատճառներով. նախ որ դասագիրքը չի կարող ամփոփել իւր մէջ ամենայն մանրամասնութիւն. եւ երկրորդ որ մենք շատ անգամ գտնուում ենք նոյն իսկ դասագիրք հեղինակողի մտքերի ազդեցութեան տակ։

Եթէ պատահի մեզ, օրորինակ, մի քաղցր երգեցողութիւն լսել, մեր սրտի վերայ խորը տպաւորուում է նորա ամբողջ ներդաշնակութիւնը. Նորա ամենայն մի ձայնը, ամէն մի դայլայլիկը գըտնուում է արձագանգ մեր զգացմունքի մէջ։ Բայց եթէ միեւնոյն երգեցողութիւնը մէկ ուրիշը լսած լինի եւ գայ մեզ պատմէ իւր տպաւորութիւնքը, անկասկած մեր սրտի վերայ այն տպաւորուելու չէ, ինչոր անձամբ կարող էինք փորձել։

Այսպէս է եւ դասագրքի նշանակութիւնը պատմական աղբիւրների վերաբերութեամբ. դա-

սագիրքը տալիս է մեզ տեղեկութիւն թէ այս ինչ բանն եղել է, եւ բացատրում էլ է մասամբ թէ ի՞նչ պատճառով է եղել. բայց մենք մնում ենք նոյն իսկ բացատրութեան նեղ շրջանի մէջ, որովհետեւ հնար չունինք մի այլ եզրափակութիւն անելու։ Իսկ երբ աղբիւրներին ենք դիմում, երբ մենք լսում ենք ականատեսի կամ ժամանակակցի պարզ եւ մանրամասն վէպը, մեր առաջը ընդարձակւում է մեր ենթադրութիւնների, նաեւ նոյն իսկ տեղեկութիւնների հորիզոնը, եւ մենք ազատ ենք ամենայն մի իրողութիւն մեր իսկ տեսութեամբը կշռադատելու։

Այսպէս ուրեմն անհրաժեշտ է պատմութեան աղբիւրներին ծանօթ լինել. առանց այդ ծանօթութեան մեզ դժուար է ճիշդ գաղափար ունենալ այս կամ այն իրողութեան մասին. առանց այդ ծանօթութեան մենք չենք կարող հասկանալ մի իրողութեան ներքին կողմը։

Հայոց պատմութեան տեղական աղբիւրները * շատ շատ են եւ բազմատեսակ։ Որքան եւ եռանդ լինի մարդուս մէջ՝ անմիջապէս ուսումնասիրելու այդ աղբիւրները, այնուամենայնիւ հասարակաց համար դա մի անիրագործելի հարկ է. այդ վերապահուած է միմիայն սակաւաթիւ մասնագէտների հմտութեանը։ Անիրագործելի է նախ այն պատճառով, որ ամէն մարդ կարող չէ բոլոր նախնի պատմիչների գրուածները միանգամից իւր ձեռքի տակ ունենալու. եւ երկրորդ, որ դժուար է այն ձեւով օգուտ քաղել այդ աղբիւրներից, ինչպէսոր նոքա կան։

* Մեր խօսքը գրաւոր աղբիւրների վերայ է. անգիր աղբիւրների մասին խօսելու անձեռնհաս ենք տակաւին։

Ի՞նչպէս ծանօթանայ, օրինակի համար, մի գիւղական վարժապետ Հայոց պատմութեան աղբիւրներին. նա զգում է, որ իւր գիտցածը սակաւ է, կցկտուր է, ցամաք է. նա ուրախէ իւր գիտութեան թերին լրացնել մի կերպով. բայց ի՛նչպէս. թերեւս նա դեռ չգիտէ թէ ինչ աղբիւրներ կան. եթէ նա գիտէ եւս, նա չունի այնքան պատրաստութիւն օգուտ քաղելու այդ աղբիւրներից։ Թէ նա ձեռք է առնում Խորենացու պատմութիւնը, նախ եւ յառաջ նա գտնում է այնտեղ մի խառնիխուռն դասաւորած, բաւականին դժուար լեզուով գրած, երբեմն նաեւ շատ օտար անծանօթ նիւթերով լցուած նկարագրութիւն։ Նա մեծ եռանդով կարդում է մի գլուխը, միւսը. կարծես թէ հասկանում է եւ ոգեւորւում է իւր հասկացածով. բայց նորա համար մութն են մնում մի քանի անցքերի յարաբերութիւնը, տեղը, ժամանակը. նա չունի մի առաջնորդ, որ մեկնէր նորա այդ անհասկանալի կողմերը, բաժանէր առասպելութիւնը իրականութիւնից եւայլն . այժ նա մնում է յուսահատուած. Է՜, ասում է, Խորենացին խրթին է. սա իմ խելքիս բանը չէ։ Վեր է առնում Եղիշէի պատմութիւնը. հէնց առաջին գլուխներից նա յափշտակւում է սորա քաղցր ու ներդաշնակ լեզուով, սորա վսեմ ու ոգեւորիչ մտքերով. նա մոռանում է, որ պատմութիւն է կարդում. նա կորչում է Եղիշէի ճոխ եւ փառաւոր լեզուի հոսանքում. շատ տեղ նորա ուշադրութիւնը կենդրոնանում է ոճերի, դարձուածների, ողբերի, ներբողների կամ կրակոտ յանդիմանութիւնների վերայ. այստեղ պատմութիւնը նսեմանում է լեզուի

ճարտարութեան եւ չքեղութեան ու զգացմունքների փսեմութեան առաջ. սա մի բանաստեղծութիւն է, ասում է մեր բանասէրը. սա մի արձակ չարական է, այլ ոչ պատմութիւն. ծաղրում է Եղիշէին: Առնում է ձեռքը փարպեցու պատմութիւնը. այստեղ նա հանդիպում է արդարեւ մի պատմութեան. նա նկատում է, որ կարծես թէ մի պառաւ նստած իւր ցաւերն է պատմում միառմի. բայց թեթեւ չէ նորա պատմածը. շատ տեղ չափազանց շատախօսութիւն է անում, պատմութեան նիւթին չվերաբերող դատողութիւններ, ածականներ, միով բանիւ աւելի խօսք քանթէ պէտք էր. նա տկար գոլով սորա խօսքերից էլ մի բան յօրինել կապել միւսների հետ՝ ասում է. "փարպեցին էլ այլ կերպ է ներկայացնում այս ինչ անցքը" եւ ծաղրում է:

Այսպէս է լինում եւ բոլոր միւս աղբիւրների հետ. եւ այդ շատ բնական է. որովհետեւ աղբիւրները կշռելու եւ միմեանց հետ համաձայնեցնելու համար լոկ ընթերցողութիւնը բաւական չէ. հարկաւոր է նաեւ այլ ուսումնական պատրաստութիւններ ունենալ:

Միեւնոյն ժամանակ պէտք է չմոռանանք, որ Հայոց պատմութեան աղբիւրները կրկին նշանակութիւն ունին գիտութեան մէջ: Մէկ՝ որ նոքա բովանդակում են իրենց մէջ նախնական լեզու. ուրեմն հարկաւոր է ուսումնասիրել նոցա իբրեւ մի լեզուագիտական կամ մատենագրական միջոց: Մէկ էլ՝ որ նոքա բովանդակում են իրենց մէջ ժամանակակից կամ հնադարեան կեանքի եւ անցքերի նկարագիրը. ուրեմն հարկաւոր է ուսումնասիրել

նոցա իբրեւ իսկ-պատմութեան աղբիւր։ Նոցա այդ երկու դերը սովորաբար իրարու հակառակ են. ինչո՞ւ. որովհետեւ եթէ մարդս, զորօրինակ, Եղիշէի գրութեան վերայ իբրեւ մի գեղեցիկ ճարտասանական գրուածի վերայ նայելու լինի, այն ժամանակ հարկաւորութիւն չունի բովանդակութեան վերայ ուշադրութիւն դարձնելու եւ փնտրելու նորա մէջ ժամանակագրական հետեւողութիւն, աշխարհագրական ճշդութիւն եւ դատողութեան որոշութիւն. այստեղ ամենակարեւորը գործի արուեստական կողմն է. այսինքն՝ քերականական ձեւերի ճշդութիւնը, դարձուածների փափկութիւնն եւ ազդուութիւնը, նախադասութեան կազմակերպութիւնն եւ առանձնութիւնքը եւ նկարագրութեան շքեղութիւնը. այս ասելով մենք հեռու ենք այն մտքից թէ այս դէպքում բովանդակութիւնը նշանակութիւն չունի. բայց լեզու ուսումնասիրողի ուշադրութեան համար այդ բովանդակութիւնը երկրորդական բան է։

Ձեռնամուխ լինելով Հայոց պատմութեան աղբիւրների մշակութեանը՝ մենք յատկապէս նայել ենք նոցա վերայ իբրեւ իսկ-պատմագրական յիշատակարանի վերայ. որքան եւ ջանացել ենք լեզուի գեղեցկութեանը չվնասել, այնու ամենայնիւ այդ եղել է մեզ համար իբրեւ երկրորդական գիտելիք. եւ այս ոչթէ անարգ համարելով լեզուի նշանակութիւնը, այլ, ինչպէս վերեւը բացատրեցինք, պատմութեան Էական կողմերին դիւրեաւ ծանօթացնելու դիտումն ունենալով։

Այժմ բացատրենք թէ ինչ է մեր նպատակը եւ ինչ ճանապարհով ենք կամեցել հասնելու նորան։

Մեր նպատակն է դիւրութիւն ընծայել մեր հայրենակիցներին անմիջապէս ձեռքի տակ ունենալու եւ ուսումնասիրելու Հայոց պատմութեան աղբիւրները. այսպիսի մի նպատակ անիրագործելի պիտի մնար, եթէ ձգտէինք Հայոց ամենահին ժամանակներից սկսել պատմութիւնն եւ հասնել մինչեւ վերջը. անիրագործելի այն պատճառով, որ այդ բնաւ համապատասխան չէ մեր ոյժերին. ըստ չափու կարողութեան եւ կարեւորութեան դիմելով այդ նպատակին, բաւական էր, որ մենք աշխատէինք գէթ այն դարերի աղբիւրները նախապէս մշակելու, որոնք մեր կարծիքով աւելի մեծ նշանակութիւն են ունեցել Հայոց ազգային կեանքի զարգացման համար։ Այսպիսի մի նպատակի համար ընտրեցինք Հայոց մարզպանութեան ժամանակը։ Բոլոր այն տեղական աղբիւրները, որոնց մէջ կարելի էր տեղեկութիւն գտնել այդ ժամանակուայ մասին՝ հաւաքեցինք ի մի, համեմատեցինք նոցա մէջ եղած տեղեկութիւնները եւ ինչոր պատմութեան համար կարեւորն էր նոյնութեամբ քաղեցինք եւ հիւսեցինք իրար հետ կամ շարեցինք այնպէս, որ գոյացաւ նոյն ժամանակուայ նկարագիրն իբրեւ մի պատմութիւն մի բերանից հաղորդած։ Ի հարկէ պատահում էր բաց թողնել մեր պատմիչների նկարագրութիւններից կամ խորհրդածութիւններից այնպիսի հատուածներ, որոնք իբրեւ ճարտասանական օրինակներ գրուածքի գոհարներն են, կամ այնպիսի խօսքեր, որոնք մեր կարծիքով լոկ շատախօսութիւններ են. այս ամէնը մեզ ներեցինք անելու միմիայն հաւատարիմ մնալով մեր վերեւը յայտնած մտքերին՝ այն է՝ ուսումնասիրել նախնեաց գրուածներն իբրեւ

պատմագրական յիշատակարան, այլ ոչ իբրեւ մատենագրական։

Մարզպանութեան ժամանակը մենք բաժանեցինք երկու մաս։ Արշակունեաց թագաւորութեան անկումից մինչեւ Վահան Մամիկոնեանի մարզպանութեան առաջին տարին (432—486) Հիւսուածքիս առաջին մասն է. իսկ Վահանից մինչեւ Արաբացւոց արշաւանքը լինելու է երկրորդ մասն։

Առաջին մասի աղբիւրները գլխաւորապէս Եղիշէի եւ Փարպեցու պատմութիւններն են, թէեւ ուր որ կարելի էր, մենք օգուտ ենք քաղել Խորենացու, Սեբէոսի, Թովմայ Արծրունու եւ այլ պատմիչների տուած տեղեկութիւններից եւս։ Մեր ձեռքն եղած Եղիշէի պատմութիւնը 1828 թուին, իսկ Փարպեցունը 1793 թուին Վենետիկ տպած օրինակներն են։ Որովհետեւ բոլոր այս աղբիւրները գրոց լեզուով են գրուած, այդ պատճառով Հիւսուածքիս բնագիրն էլ գրաբար է։

Գրաբար հասկացողների սակաւաթիւ լինելը գիտենալով՝ մենք լաւ համարեցինք տալ նաեւ մի աշխարհաբար թարգմանութիւն։ Որովհետեւ այս թարգմանութեան գլխաւոր նպատակներից մէկն էլ այն է, որ միջոց տրուի երկու բարբառների մէջ համեմատութիւն անելու, այդ պատճառով մեր արած թարգմանութիւնը գրեթէ բառացի է. տեղտեղ միայն մտքի պարզութեան կամ լեզուի դիւրութեան համար ազատութիւն տուած ենք մեզ։

Ուրոր լուսաբանութեան կարօտութիւն կար, կամ նաեւ ամփոփելու կարիք, այնտեղ աւելորդ չհամարեցինք համառօտ ծանօթութիւններ դնելու. նաեւ բացատրեցինք աշխարհագրական տեղերի որ-

պիսութիւնը կամ թէ ի՛նչ յարաբերութիւն ունի մի իրողութիւն միւսի հետ։ Այն աղբիւրները, որոնցից օգուտ ենք քաղել ծանօթութիւնների համար, յիշուած են իւրաքանչիւրն իւր տեղում։

Անցքերի ժամանակը որոշելու համար աւելացուցինք նաեւ երեք տեսակ աղիւսակ. առաջինը ցոյց է տալիս Հայոց պատմութեան զուգընթաց ժամանակագրութիւնը. սորանից կարելի է տեսնել թէ Սասանեան թագաւորութեան սկզբից մինչեւ Վահան Մամիկոնեան ո՞րպիսի ժամանակակից թագաւորներ եւ իշխաններ են նստել Հայաստանում, Պարսկաստանում եւ Բիւզանդիայում, նաեւ ո՞րպիսի կաթուղիկոսներ. երկրորդ աղիւսակը ցոյց է տալիս միմիայն Հայոց թագաւորների եւ կաթուղիկոսների ժամանակագրութիւնը զանազան հայ պատմիչների ցուցումներով. եւ երրորդ աղիւսակը ցոյց է տալիս միմիայն Հայոց մարզպանների, կաթուղիկոսների եւ նոցա օրով պատահած նշանաւոր անցքերի ժամանակագրութիւնը։ Թէ՛ Հիւսուածքի Ա. եւ Բ. գրքերի եւ թէ՛ նոյն իսկ Գ. գրքի համար աւելի մեծ նշանակութիւն ունին Ա. եւ Գ. աղիւսակները։

Աշխարհագրական տեղերի մասին գէթ մօտաւոր գաղափար ունենալու համար պատրաստեցինք նաեւ պատմական քարտէզ, որը ներկայացնում է ամբողջ Սասանեան պետութիւնն այն սահմաններով ինչոր եղել է նա Ե. դարում եւ ամբողջ Հայաստանը։

Բնագրի մէջ բերած հատուածներից զատ կարեւոր համարեցինք Գ. գրքի մէջ տեղաւորել ժամանակագրական դասաւորութեամբ եւ այն պատմիչների խօսքերը, որոնք Եղիշէին ու Փարպեցուն

ժամանակակից չեն եղել, սակայն հաղորդել են մի քանի հետաքրքիր տեղեկութիւններ, որոնց մասին չի յիշուում Նոցա գրուածների մէջ: Այդպիսի տեղեկութիւնքը չվստահացանք հիւսել ամբողջի մէջ՝ աչքի առաջ ունենալով միքանի ժամանակագրական Թերութիւնք, որոնց մասին տես Գ. գրքի "Այլ եւ այլք" բաժինը, ուր եւ յայտնել ենք մեր հայեացքը այդ տեղեկութիւնների վերայ:

Այս ամէնը կատարելիս՝ համոզուած գոլով՝ որ ուսումնասիրող հասարակութեանն այնուամենայնիւ մի անմշակ նիւթ ենք նուիրում, մենք կարեւոր դատեցինք մի լուսաբանող ներածութիւն եւս գրել. դորա նպատակն է պարզել եւ ամփոփել միքանի առաջնորդող մտքերը, որոնց ազդեցութեան ներքոյ կատարուել է Հայաստանում այն ամէնն ինչոր նկարագրած են Եղիշէն եւ Փարպեցին. այդպիսի մի ներածութեամբ, եթէ ոչ լիովին գէթ մասամբ պարզուած կըլինի ընթերցողների համար նաեւ այն, թէ Ե. դարում ինչ ուղղութիւն էր թագաւորում Սասանեան-Պարսիկների եւ Բիւզանդեան-Յոյների քաղաքականութեան մէջ*:

Ամփոփում ենք մեր խօսքը յայտնելով ընթերցողներին հետեւեալը: Նախ որ Հիւսուածքս այդ մէկ հրատարակութեամբ վերջանալու չէ, այլ դա մի կտոր է այն ամբողջ շարքից, որը մտադիր ենք գլուխ հանելու դոյն իսկ ծրագրով. ինչպէս բացատրեցինք, այդ ծրագրի մէջ մնում են՝ ա) գրաբար բնագիրը. բ) աշխարհաբար թարգմանութիւնը. գ) ծանօթութիւնք եւայլն. դ) քարտէզ

* Թէ աշխարհագրական քարտէզի եւ թէ ներածութեան տպագրութիւնն առ այժմ յետաձգուում է:

եւ ե) լուսաբանող ներածութիւն։ Երկրորդ որ Հիւսուածքս դասագիրք չէ, այլ ձեռնտուութիւն է։ Երրորդ որ Հիւսուածքս նշանակուած է չափահասների համար, այլ ոչ սանուկների։ Եւ չորրորդ որ Հիւսուածքս իբրեւ ձեռնտուութիւն պիտի նպաստէ գլխաւորապէս պատմութեան ուսմանը, որովհետեւ այստեղ ամփոփուած են Հայոց մարզպանութեան մօտ վաթսնամեայ պատմութեանը վերաբերեալ բոլոր մեզ յայտնի գրաւոր-տեղական աղբիւրները։ Դպրոցներում այդ իսկ նպատակին ծառայեցնելու եղանակը կախուած կը լինի նոյնիսկ տեղական վարժապետների հմտութիւնից. նոքա ունենալով իրենց ձեռքի տակ Հիւսուածքի բոլոր մասերի նիւթը՝ կարող են նորա վերայ ստեղծել դասատուութեան եղանակ. այդ կախուած կը լինի նոցա պատրաստութիւնից եւ մտաւոր կարողութիւնից։ Այնու ամենայնիւ մենք մեր կողմից էլ կարող ենք մատնացոյց լինել գործադրութեան հետեւեալ կէտերի վերայ։

Ա) Այն դպրոցներում, ուր աւելի ընդարձակ են աւանդում ազգային եւ եկեղեցական պատմութիւնը, Հիւսուածքիս Ա. եւ Բ. գլքերը կարող են լինել իբրեւ դասագիրք մարզպանների ժամանակուայ պատմութեան համար։ Բ) Ամենայն տեղ ամբողջութիւնից միայն միքանի գլուխ ընտրելով կարելի է ընթերցանութեամբ մասմաս ծանօթացնել դեռավարժ աշակերտներին Հայոց հին ժամանակուայ միքանի նշանաւոր անձերի եւ անցքերի հետ, զորօրինակ՝ Վարդանանց պատերազմին, կանանց վիճակին, Վահան Մամիկոնեանին եւ այլն. գլուխների բաժանումն եւ բովանդակութեան համառօ-





տութիւնն աշխարհաբարի մէջ ոչ պակաս օգնում են այս նպատակին։ Եւ Գ) աչքի առաջ ունենալով այսինչ կամ այնինչ գլուխը, ծանօթութիւնների մէջ ամփոփուած տեղեկութիւնները եւ ժամանակագրական աղիւսակները, վարժապետներին դժուար չէ գրաւոր աշխատութիւններ տալ աշակերտին այն մտքով, որ միջոց տան նորան մտածելու իւր ուսած նիւթի վերայ, քըքրելու ուրիշ աղբիւրներ եւ տեղեկութիւններ հանելու եւ այլն. այս կողմից վարժապետները մեծ օգուտ տուած կըլինէին աշակերտին, եթէ ցոյց տային հետզհետէ եւ այն աղբիւրները, որոնցից կարելի է օգուտ քաղել։ Մենք մեր ծանօթութիւնների մէջ տեղտեղ գիտութեամբ աշխատել ենք աւելի շատ բաների վերայ ուշադրութիւն դարձնել եւ ամփոփիչ լինել, որպէսզի վարժապետները միջոց ունենան իրենք առանձին առանձին մտածելու մեր հարեւանցի նկատողութիւնների վերայ եւ շարադրութեան նիւթ ստեղծելու կամ հարցեր դնելու աշակերտների համար։ Այսպիսի շարադրութիւնների նպատակը պէտք է լինի՝ արթնութիւն մտցնել աշակերտի մտածողութեան մէջ, որպէսզի նա հետզհետէ կարողանայ ընդելանալ քննադատութեան ձեւերին. վարժապետներից կախուած կը լինի այդ ճանապարհով ներշնչել աշակերտի մէջ փոքր ինչ կասկածոտութիւն եւ հետազօտութեան ոգի, որպէսզի նա կոյրզկուրայն չհաւատայ ամենայն մի տեղեկութեան. վարժապետներն այդպիսի շարադրութիւններով միայն կարող են առաջնորդել աշակերտին այնպիսի թեթեւ հարցերի մէջ՝ ուր համբակը կարող է կշռադատող լինել, այլ ոչ յափշտակուող,

ուր նորան դժուար չի լինիր կրիտիկոս հանդիսանալ, այս ինչ կամ այն ինչ վկայութեանն եւ այլն: Խօսք չկայ, որ այսպիսի շարադրութիւններով կարելի է վարժեցնել միմիայն հասած աշակերտներին, օրինակի համար, ներսիսեան դպրոցի վերին դասարաններում:

Աւելորդ ենք համարում յիշել այստեղ եւ այն որ Հիւսուածքի Ա. գիրքը կարող է ծառայել դպրոցներումն իբրեւ նպաստ Հայոց լեզուի դասատուութեան. ա) գրաբարի ուսման մէջ միջակ շարադրութեանը ծանօթացնելու համար նա յարմար է իւր նիւթի հետաքրքրականութեամբ եւ ընտիր ու դիւրընտել ոճովը. վերլուծութեան, թարգմանութեան, շարադրութեան նիւթ տալու, թելադրութեան համար եւ այլն նա յարմար է իւր բազմատեսակ գլուխներով, որոնք ամէնքն առանձին առանձին առած ինքնուրոյն են իրենց բովանդակութեամբ եւ համառօտ իրենց կազմութեամբ. եւ բ) զանազան մատենագրների ոճի վերայ մի հարեւանցի ճաշակ տալու համար Հիւսուածքի Ա. եւ Գ. գրքերը կարելի է գործդնել իբրեւ մի առձեռն ծաղկաքաղ. այստեղ վարժապետներին հեշտ կը լինի ուշադրութիւն դարձնել ոչ միայն լոկ քերականական ձեւերի տարբերութեան կամ բազմատեսակութեան վերայ, այլեւ նոյն իսկ առանձին խօսքերի հնութեան, այլափոխութեան (ներքին կամ արտաքին), աղճատման եւ այլ կողմերի վերայ. աւելի ուշադրութեան արժանի են այդ դէպքում իւրաքանչիւր մատենագրի գործ դրած հազուագիւտ խօսքերը. այստեղ վարժապետի առաջնորդութեամբ աշակերտը պիտի հետեւի զանազանել բառի օտար





ամ հարազատ լինելը, այժմ հնացած կամ գործածական լինելը, ռամկական կամ գրականական լինելն և այլն. նմանապէս պիտի արժուն լինի տեսնելու թէ ո՛ր հաղուադիւտ խօսքը ո՛ր մատենագրի երչի տակ ի՛նչ մտքով է գործ դրուել*։

Մեր այս համառօտ խօսքը վերջացնելիս սրտանց պարտաւորութիւն ենք համարում յայտնել եր ընթերցողներին, որ այս մեր աշխատութիւնն ւր աշխարհ գալովը պարտական է Մեծապատիւ Տէրտէր Սարգսեան Պ. Սանասարեանցին, որն ազնւասիրաբար բարեհաճեցաւ իւր վերայ առնել հիւսւածքիս տպագրութեան ծախքը։ Զուզելով վերաւորել մեր մեծապատիւ բարերարի համեստութեան զգացմունքը՝ փոխանակ մեծամեծ գովեստներ ռայլելու, որոնց նա բազմօք արժանի է, մենք

* Զորօրինակ Եղիշէն միքանի խօսքերն այնպէս է գործ դրել, ինչպէսոր այժմ մենք ենք գործածում. եր. 82 ասում է "գունդ կազմէին, ոչ գնոսա չկօթակ արասցեն". եր. 315 ասում է "թիկամբն հետ.. գձեռն ի վայր ընկեց". եր. 355 ասում է "բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պէտք". եր. 246 ասում է "ըղորթերս (պարտքերը) հարկաց աշխարհի". եր. 266 "Սայաք" խօսքը գործ է դրել "ապառում էինք" բառի մտքով, ինչպէս այժմ էլ միքանի գաւառականներում ասում են "Սում էինք". եր. 128 գործ է դրել "ցանել" բայը, որ այժմ "սերմանելն" է, բայց Ե. դարու ընտիր գործածութիւն չէ. եր. 252 ասում է "եւ զօրհանապազ զնոսա յօլոյ հանէին", այժմս էլ մենք, բայց ոչ երբէք ընտիր մատենագրներն, այս ոճը գործ ենք ածում հասարակ խօսակցութեան մէջ "աչքից հանել, "աչքից ձգել, աչքից ընկնել" եւայլն։ Եղիշէն ունի եւ միքանի օտար խօսքեր, որոնք այժմ եւս գործածական են, զորօրինակ՝ ռամն (79), զնդան (243), գեան (108), ուչխարոյ (37), լաշկար (251), խարտոտն (քարվան). օտար են եւ պոտխանդարոն (կապարճ, եր. 12.) մարզ (106), փոշտեհէ (240, 281), պայտառ, փայտարել եւ այլն սոցա նման խօսքերը. արդի գործածական խօսքերից են՝ էեհ, երդ (երդիք), փանէք, տնկառուր եւ այլն։ Եղիշէն գործ է դնում եւ միքանի խօսքեր, որոնց նշանակութիւնը մտքով է հասկացուում, բայց ճշգրիւ յայտնի չէ. զորօրինակ, ողասատամ, փարէմեր, երահէկ, ողարբանել, ամբարտանել եւ այլն։

բաւականանում ենք միայն հրապարակաւ յայտնելով նորան մեր խորին շնորհակալութիւնը։

Ի վերջոյ լիաշուրթն շնորհակալութիւն ենք մատուցանում մեր այն թանկագին բարեկամներին, որոնք իւեւիցէ մտերմաբար նպաստած են մեզ թէ հիւսուածքի պատրաստութեան եւ թէ նորա տպագրութեան գործերում. մեր այդ բարեկամների համեստութեանը խնայելով՝ չվստահացանք յանուանէ յիշել նոցա այստեղ։

Այս անդրանիկ համեստ աշխատութիւնը, որ ահաւասիկ մատուցանում ենք հայ գրականութեան սեղանին, իբրեւ մի նոր փորձ, անկասկած՝ չէր կարող ազատ լինել եւ զանազան թերութիւններից. բանասէրների անաչառ քննադատութեանն ենք թողնում այն՝ ինչ որ վերաբերելու է թէ սորա պակասութիւններին եւ թէ արժանաւորութիւններին։

Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆՑ։

Ազգային ՌՅԻԶ Թուին
եւ փրկչական 1877.
յունվարի 15ին։

Սանկտ-Պետերբուրգ։



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԳԼՈՒԽ Ա.

1. *Աշխարհ Հայոց = Հայոց երկիր, Հայաստան։*

*Ա. Արդի լեզուով “աշխարհ„ խօսքը նշանակում է բոլոր երկիրը կամ հողագունդը. սակայն գրոց լեզուով Ե. դարում նշանակում էր մի որեւիցէ ազգի բնակութեան տեղը. մինչեւ անգամ մի որեւիցէ ցեղի բնակութեան տեղն էլ կոչւում էր աշխարհ. զորօրինակ “Հայաստան աշխարհ„ կամ “Աշխարհ Հայոց„ նշանակում է Հայոց ազգի բնակութեան տեղը, ուրիշ խօսքով Հայոց երկիր. “Սիւնեաց աշխարհ„, որ Մեծ Հայքի գաւառներից մէկն էր, նշանակում է Սիւնեաց նախարարութեանը պատկանող երկիր, ուրիշ խօսքով՝ Սիւնեաց գաւառ։*

*Հայոց լեզուի մէջ, ինչպէս նաեւ շատ հին լեզուների մէջ, այդ երեւոյթը զարմանալի չէ, որ մասնաւոր սահման ունեցող բառն աւելի ընդհանուրի վերայ է տարածուում. աշխարհ բառի նման են ազգ, տուն եւայլն բառերը. այսօր եւս միքանի բարբառներում ազգ խօսքը՝ ազգատոհմ խօսքի տեղ է գործածուում; որից եւ աւելի ընդհանուր գործածելի է դառել “ազգական„ բառը, սակայն յայտնի է թէ ինչ նշանակութեամբ է գործածուում ազգ բառը արդի հայերէնի մէջ. աւելի նշանաւոր է տուն բառի գործադրութիւնը, որ ունի նմանութիւն աշխարհ բառի գործածութեան հետ. տուն, որ իրօք բնակարան է նշանակում, հին հայերէնի մէջ գործ էր ածուում տոհմ, ցեղ բառերի տեղ. զորօրինակ “տուն Արծրունեաց„ նշանակում է Արծրունեաց ցեղը. “տուն Թորգոմայ„* նշանակում է Թորգոմեան ազգ, Թորգոմի*

* Այսպէս անուանում էին Հայերին նոցա դրացի հարաւային ազգերը, որոնց մէջ եւ Եբրայեցիք։

Ա· 1 սերունդ։ Սորանից եւ “տանուտէր,, խօսքի իսկական նշանակութիւնը կարելի է հասկանալ, ըստորում, ինչպէս գիտենք, տանուտէրները միայն մի տան գըլխաւորը կամ տէրը չէին, այլ ամբողջ ցեղի կամ ազգատոհմի. այդ պատճառով եւ մի տոհմի նահապետն եւ տանուտէրը միեւնոյն անձն էր լինում. տանուտէր խօսքն այժմու գործածութեամբ գրեթէ միեւնոյն ծագումն ունի. այժմ տանուտէր ասում են մի գիւղի գլխաւորին, որն ընտրուում է հասարակութեան կողմից նորա գործերը տնտեսելու. միքանի տեղ տանուտէր ընտրում են մինչեւ անգամ գիւղի պատուաւոր ծերերից, որ միայն սովորութիւնների նահապետականութիւնը կարող է յառաջ բերել։ Խօսք չկայ, որ տանուտէր նշանակում է արդէն, ոչ թէ տան գըլխաւոր, կամ մի ցեղի մէջ աւագը, այլ մի որեւիցէ խումբ տների կամ մարդիկների գլխաւոր. հարկ չկայ միւս կողմից ապացուցանելու, որ տանուտէր խօսքի ծագումը հին գործածութեան պտուղն է եւ այդ խօսքն ինքը Հայոց հնութեան մնացորդներից մէկն է, եւ ոչ թէ մի նոր շինծու խօսք։

Աշխարհ, ազգ, դուռն եւ այլ այսպիսի խօսքերն այսօր կորուցել են համարեա իրենց բուն նշանակութիւնը, սակայն թողել են իրենց հնութեան հետքերը նորանից բաղադրեալ ուրիշ խօսքերի մէջ. բացի այն՝ նորա նախնական նշանակութեան հետքերը մնացել են նաեւ գաւառական բարբառների այլեւայլ դարձուածների մէջ, այդ պատճառով պէտք չէ սխալ կարծել այժմու ռամկական գործածութիւնը կամ շփոթել նորա միտքը։

Արդի լեզուով աշխարհ+ խօսքը նշանակում է եւ ամուսնական կենակցութիւն. զորօրինակ եթէ ասում են “այսինչը աշխարհք մտած է,, կամ “այնինչը աշխարհք մտնել չի ուզում,,, այդ նշանակում է, որ առաջինը ամուսնացած է, իսկ երկրորդը ամուսնանալու ցանկութիւն չունի, այս մտքից է եւ յառաջացել “աշխարհական,, բառի նշանակութիւնը. յայտնի է, որ այդ բառն արդի գործածութեամբ նշանակում է

այնպիսի մարդ, որը վանական չէ, այսինքն ամուսնական կարգից հեռացած չէ։ Գլ. Ա. 1

Բ. Ինչպէսոր Խորենացու աշխարհագրութեան* մէջ տեսնում ենք, Հայոց աշխարհն Ե. դարում հետեւեալ սահմաններն է ունեցել՝

Արեւելքից՝ Կասպից (Վրկանայ) ծովն եւ Ատրպատականը,

Հարաւից՝ Ասորեստանը, Միջագետքն, Ասորիքն եւ Կիւլիկիան,

Արեւմուտքից՝ Փոքր Ասիայի յունաբնակ գաւառները՝ Փռիւգիա եւ այլն։

Հիւսիսից՝ Աղուանք այսինքն այժմու Բագուայ նահանգը, Վրաստան, Կողքիս այսինքն Գուրիան, եւ Խաղտիք այսինքն Լազերի երկիրը։

Ուրեմն եթէ բնական սահմաններով որոշելու լինինք, Հայաստանի սահմաններն եղել են՝

Հիւսիսից՝ Կուր գետը, որի ձախակողմեան եզերքը Վրաստան եւ Աղուանք էին, իսկ աջակողմեանը Հայաստան։

* Կարծիք կայ, որ այս աշխարհագրութիւնը Խորենացու հեղինակածը չէ. այսպիսի կարծիք առաջինն յայտնեց գաղղիացի հայագէտ Սէն-Մարտէնն իւր Mémoires sur l'Arménie, Paris, 1819. երկասիրութեան մէջ՝ ապացուցանելով, որ այդ աշխարհագրութիւնը Ժ. դարից յառաջ հանդէս գալ չէր կարող. մինչդեռ մեզ յայտնի է, որ Խորենացին Ե. դարու մատենագիր է։ Հ. Ինճիճեանն իւր Հնախօսութեան Գ. հատորի մէջ ջանաց հերքել ուսումնական Գաղղիացու կարծիքը, բայց անյաջող. ընդորում մինչ ցայժմ էլ տակաւին արծարծւում է եւրոպական ուսումնականների մէջ այդ խնդիրը։ Վերջին օրերս լոյս տեսաւ Ս. Պետերբուրգի համալսարանի Պրօֆէսօր Պր. Ք. Պատկանեանցի մի երկասիրութիւնը Армянская Географія VII вѣка н. р. х. վերնագրով, որի մէջ ուսումնական հեղինակը զօրաւոր փաստերով ապացուցանում է, որ Խորենացու անունով հռչակուած աշխարհագրութիւնը գրուած է Է. դարում եւ իբրեւ հեղինակ կամ կազմող այդ աշխարհագրութեան համարում է Անանիա Շիրակացուն, որն ինչպէս յայտնի է, Է. դարու մատենագիր է եւ հռչակուած է իբրեւ համարող եւ աստղաբաշխ։

Այսպէս թէ այնպէս՝ այդ աշխարհագրութիւնը պահպանում է դարձեալ իւր նշանակութիւնն իբրեւ հնագոյն աղբիւր Հայոց աշխարհի տեղագրութեան համար։

*Արեւելքից՝ Կասպից ծովը եւ Գեղմանց (Գիլանի) ռաները.*

*Հարաւից՝ Զագրոշ լեռների գօտին եւ նորա թեւերը դէպի արեւմտեան Հիւսիս։*

*Արեւմուտքից՝ Տօրոսեան լեռների արեւմտեան թեւերը փոքր Ասիայում։*

*Այս ընդհանուր սահմանների մէջ ամփոփուած երկիրն եւ ասուում էր ընդհանրապէս Աշխարհ Հայոց.* սակայն բուն Հայաստանն յատկապէս կոչւում էր Մեծ Հայք. այս անունով կոչւում էր Հայոց երկիրը մինչեւ Եփրատի արեւմտեան ափերը. Եփրատից արեւմուտք՝ Ալիս եւ Գայլ գետերի վերին մասերում տեղաւորուած երկիրը, ուր ըստ աւանդութեան դեռ Արամ նահապետի օրով շատ Հայեր գաղթած են եղել իրենց բուն երկրից՝ ասուում էր փոքր Հայք։*

* *Հայաստանի տարածութիւնը մօտաւորապէս 6000 քառակ. մղոնի է հասնում. նորա երկայնութիւնը մօտ երեք անգամ աւելի է լայնութիւնից. եթէ Եփրատի արեւմտեան ափերից մինչեւ Կասպից ծովի եզերքն հաշուելու լինինք, Հայաստանի երկարութիւնն ընկնում է* 31°—47° *արեւել. երկ. մէջ եւ հասնում է շատ շատ* 130—140 *մղոնի կամ* 900 *վերստի. մինչդեռ լայնութիւնն, եթէ Մասիուս լեռների ստորոտից մինչեւ Սեւան լճի հիւսիսային ծայրը հաշուելու լինինք, տարածւում է* 37°—41° *հիւս. լայն. եւ հասնում է մինչեւ* 70 *մղոնի կամ* 400 *վերստի։ Եթէ աչքի առնենք հների հաշիւը, մենք կըտեսնենք, որ նոքա չափազանց շատ էին հաշւում Հայաստանի ընդարձակութիւնը. եւ այդ զարմանալի չէ. որովհետեւ չունէին ուրիշ միջոց երկրի տարածութիւնը կամ մի հեռաւորութիւն հաշուելու աւելի հաստատուն կերպով. նոցա աղբիւրն եւ միջոցներն էին միմիայն ճամբորդների տուած տեղեկութիւնները. ինչպէս գիտենք նոքա ճամբորդի անցկացած տարածութեան չափը կամ ձիու ապարէզով (մանզիլ) կամ օրերով ու ժամերով կամ ոմանք քարընկեցով եւ այլ այսպիսի փոփոխակ պայմանների տակ դրուած չափերով էին իմանում։ Ը պատճառով հասկանալի է թէ ինչո՞ւ Պլինիոսը (Ա. Ք. Ց.)* 260 *մղոն է համարում Հայաստանի երկայնութիւնը եւ* 130 *նորա լայնութիւնը. կամ Պտղոս (Բ. դար Ք. Ց.)* 100 *մղոն երկ. եւ* 63 *լայն. կամ Ցտինոսը (Գ. դար Ք. Ց.)* 220 *մղոն երկ. եւ* 140 *լ ԺԸ դարի աշխարհագիրներից մէկը՝ Մաններտ համա էր* 130 *մղ. երկ. եւ* 80 *մղ. լայնութիւն. զարմանա որ բոլորի մօտ լայնութիւնն անհամեմատ աւելի կականից։ (Տես* Mannert, Geographie der Griechen und 1797. Nürnberg.)





Հայաստանի այս արեւմտեան բաժինը մեծ մասով Գ Յունաց եւ Հռովմայեցւոց իշխանութեան տակ է եղել. նա բաժանուում էր հետեւեալ կերպով. Կեսարիայից մինչեւ Պոնտոս կոչուում էր Առաջին Հայք. Պոնտոսից Մելիտինէ՝ Երկրորդ Հայք. Մելիտինէից Ծոփք՝ Երրորդ Հայք. այս բաժանումը, որ արեւմուտքից արեւելք է դասաւորած, ցոյց է տալիս, որ օտարարեւմտեան իշխանութեան տակ են եղել այդ գաւառներն այլ ոչ տեղական։

Այլ է Մեծ Հայքի բաժանումը. այնտեղ բնութեան բազմապատկեր տեսարաններն եւ յատկութիւնները, նորա անթիւ հովիտներն ու ձորերը եւ մարդկութեան առաջին բնական ճանապարհ համարուող գետերի բազմութիւնն եւայլն, յառաջ են բերել եւ հակաբարոյ ցեղերի եւ ազգատոհմերի բազմատեսակութիւն. այս պատճառով ամբողջ երկիրն իւր բաժանումներով ներկայանում է մեր աչքին ո՛չ միայն իբրեւ միքանի քաղաքական աշխարհներ, այլ գրեթէ իբրեւ միքանի ինքնուրոյն աշխարհագրական դիրք ունեցող երկիրներ։ Խորենացին 15 գաւառի անուն է տալիս որոնք Ե. դարում Հայոց երկրի գաւառներն են եղել։ Այդ գաւառները գրեթէ ամէնքն էլ առանց բացառութեան ունին իրենց բնական սահմաններն, այս պատճառով յիշենք նախ եւ յառաջ բնութեան գլխաւոր մասերի՝ այն է գետերի անունները, որոնց հետ համընթացաբար գնում են եւ լեռները։

Մեծ Հայքն երկու մաս կարելի է բաժանել իւր ջրերի վերաբերութեամբ. Արեւելեան կամ Կուր-Երասխի բաժին, եւ Արեւմտեան-հարաւային կամ Ճորոխ-Եփրատ-Տիգրիսի բաժին։

Արեւելեան բաժնում գտնուում են երկու ամենամեծ գետերը՝ Կուր եւ Երասխ, որոնք միանում են իրար հետ համարեա թէ Հայաստանի արեւելեան սահմանի վերայ, մինչդեռ նոցա ակունքը գտնուում են Հայոց երկրի արեւմտեան լեռնակողմում։

Կուր գետի աջակողմեան եզերքն համարեա ամբողջապէս պատկանում է Հայաստանին. նորա նշա-





Գւ· Ա· Նաւոր վտակներն են աջ կողմից 1) Ալգէթ, 2) Խրամ
1
3) Աղստեւ, 4) Լուքնաս կամ Զեղամ, 5) Բերբեր
6) Կիւրեակ, 7) Թարթառ եւ 8) Խաչէն։

Երասխ գետն ամբողջապէս Հայաստանին է պատկանում, մինչդեռ միւս գետերի ներքին մասերը օտար երկիրներ ոռոգելով՝ արտաքոյ Հայաստանի են միանում ծովի հետ. Երասխի աղբիւրը գտնւում է Բիւրակնեան լեռների հիւսիսային ստորոտում, իսկ նորա հոսանքի ժամանակ գրեթէ անընդհատ ուղեկից են նորան աջ կողմից՝ Ջրաբաշխ, Բարդող եւ Մասեաց լեռները, որոնք ընդհատւում են՝ երբ Երասխն հասնում է Մասիսին եւ այնտեղից փոխում է իւր արեւելեան ուղղութիւնը դէպի արեւելահարաւ. այստեղից միայն սկսում են թափուիլ Երասխի ծոցն աջ կողմից զանազան գետեր, մինչդեռ ձախ կողմից գրեթէ անընդհատ իւր աղբիւրներից սկսած ընդունում է իւր ծոցը շատ մանր եւ խոշոր գետեր։ Երասխի ձախակողմեան վտակներն են ա) Մուրց, բ) Ախուրեան, գ) Մեծամօր, դ) Հրազդան, ե) Ազատ կամ Գառնի, զ) Արփա գետ, է) Ճապաղ գետ, ը) Երնջակայ ջուր, թ) Բարկուշատ, որ երկու բազուկ ունի՝ 1) արեւմտեան՝ Որոտնոյ եւ 2) արեւելեան Հագար։ Իսկ աջ կողմից ա) Մակուայ գետ, բ) Կարմիր գետ, որ երկու բազուկ ունի՝ 1) հարաւային՝ Կոտուր եւ 2) հիւսիսային՝ Տըղմուտ եւ գ) Սեւջուր, որ նոյնպէս երկու բազուկ ունի 1) արեւմտեան՝ Ահար եւ 2) հարաւային՝ Արդաբիլու գետ։

Ոչ պակաս նշանաւոր է Հայաստանի արեւմտեան ջրերի ցանցը. այնտեղ երեք գլխաւոր հովիտներն ե ամփոփում իրենց մէջ այդ ցանցը։

Ա. Ճորոխի հովիտ, որ սկսւում է Հայաստա ամենաբարձր տեղից, ուր Բիւրակնեան լեռների թե երն են, եւ արեւելեան-հիւսիսային ուղղութեա կտրում է Պարխարի գօտին եւ գնում միանում է ա րեւմտեան ուղղութիւն բռնելով՝ Սեւ ծովի հետ։ Ճո րոխ գետի վտակների մէջ նշանաւոր են նորա աջակող մեան վտակները՝ 1) Թորթում, 2) Օլթի, 3) Արտանուշ

Բ. Եփրատի հովիտն Ասիայի ամենաընդարձակ եւ երկար հովիտներից մէկն է. սակայն նորա ո՛չ — այնքան նշանաւոր մասն է գտնուում Հայոց հողի վերայ. եւ այդ մասն էլ միանգամայն լեռնոտ եւ բարձրաւանդակ երկիրներ են։ Եփրատն երկու մեծ բազուկներ ունի, հիւսիսային եւ հարաւային. առաջինը սովորաբար կոչուում է Եփրատ, եւ առնում է իւր սկիզբը Կարին գաւառում Էրզրումի շրջակայ լեռներից. մինչդեռ հարաւայինը, որ սովորաբար Արածանի, արդի անուանակոչութեամբ Մուրատ՝ է ասուում, առնում է իւր սկիզբը Ջրաբաշխ գօտու հարաւային ստորոտներից։ Նորա սկզբնական հոսանքին ուղեկից են աջ կողմից Ջրաբաշխ եւ Բիւրակնեան լեռները, իսկ ձախ կողմից Սիփան, Նիմրուդ եւ Սիմ կամ Տօրոսեան լեռները. Ի վերջոյ հիւսիսային եւ հարաւային բազուկները միանում են իրար հետ գրեթէ Մեծ Հայքի արեւմտեան սահմանի վերայ։ Միացեալ բազուկների անունը մընում է այնուհետեւ Եփրատ, միքանի անգամ իւր ընթացքը փոխելուց յետոյ՝ նա հոսում է արեւելեան հարաւային ուղղութեամբ մինչեւ Տիգրիսի հետ միանալը։ Գլ. Ա. 1

Գ. Տիգրիս գետն էլ երկու բազուկ ունի. արեւմտեան եւ արեւելեան. արեւմտեան Տիգրիսն առնում է իւր սկիզբը Տօրոսեան լեռների հարաւային ստորոտից. նախ հարաւ է հոսում, ապա հարաւային արեւելք, եւ միանում է իւր արեւելեան բազկի հետ, որ առնում է իւր սկիզբը Կորդուաց լեռների հիւսիսային ստորոտից, եւ արեւելեան ուղղութեամբ հասնում է արեւմտեան Տիգրիսին. երկուսը միանում են Վան լճի արեւմտեան հարաւային կողմից Սիմ լեռների հարաւային ստորոտներին մօտ։ Տիգրիսի վտակների մէջ նշանաւոր են մեծ եւ փոքր Զաւ գետերը, որոնք երկուսն էլ նորա ձախ կողմից են հոսում։

Հայաստանի մեծ գետերի այս համառօտ յիշատակութիւնն անելուց յետոյ՝ կարող ենք որոշել եւ նորա 15 գաւառների դասաւորութիւնը մօտաւորապէս։

Գ.Լ. Ա. 1

1. Կուր գետ՝

| | | |
|---|---|---|
| Վերեւն* երկու կողմից. մէջը մասամբ աջ կողմից | ա) Գուգարք | Ա. Կուրի գաւառներ-3. |
| Մէջը՝ աջ կողմից-Աղստեւ եւ Թերթեր գետերի մէջտեղը | բ) Ուտիք | |
| Ներքեւը՝ աջ կողմից Թար-թառի երկու կողմով | գ) Արցախ | |

2. Երասխ** գետ՝

| | | |
|---|---|---|
| Վերեւը՝ երկու կողմից եւ մէջը մասամբ՝ երկ. կողմ. | դ) Այրարատ | Բ. Երասխի վիճակի գաւառներ-4. |
| Մէջը՝ երկ. կողմից, աւելի ձախ կողմից՝ Կարմիր գետի հովտ. | ե) Վասպուրական | |
| Ներքեւը՝ ձախ կողմից Բար-կուշատի հովտում | զ) Սիւնիք | |
| Ներքեւը՝ աջ կողմից Սեւջրի հովտում | է) Փայտակարան | |

3. Եփրատ՝***

| | | |
|---|---|---|
| Վերեւն՝ երկու կողմից | ը) Բարձր Հայք | Գ. Եփրատի գաւառներ-3. |
| Արածանի՝ | | |
| Վերեւն եւ մէջն երկու կողմից | թ) Տուրուբերան | |
| Եփրատ եւ Արածանի (միացած) | | |
| Ներքեւն երկու կողմից | ժ) Չորրորդ Հայք | |

* Գետի աղբիւրից սկսած մինչեւ դաշտ մտնելը համարւում է վերին մաս (վերեւը), հովտային հոսումն է միջին մաս (մէջը), իսկ խառնարանին մօտ ընդարձակուած հոսումն է վերջին հոսում (ներքեւը)։ — Կուր (Կուռ կամ Քուռ) Հայոց կոչումն է, Վրացիք այդ գետին ասում են Մթքվարի. արեւմտեան ազգերը Կիւրոս (Cyrus), Կուրա եւ այլն. Կուրի սկզբներում այդ անունը ծանօթ չէ, այլ կոչւում է Արտահանու գետ։

** Երասխ Հայոց հին անուանակոչութիւն է. այժմ ասում են Արազ. արեւմտեան ազգերն Արաքս կամ Արաքսէս. (Araxes.)

*** Եփրատ կոչումն օտար է Հայերի համար. հիւսիսային բազուկը փոփոխական անուններ ունի Հայերի մէջ, իսկ հարաւայինն Արածանի. արեւմտեան ազգերի մէջ այդ գետի անունն է Եւփրատ կամ Եւփրատէս (Euphrates).







4. Ճորոխ՝

Վերեւի մասն եւ մէջն երկ. կողմ. } ժա) Տայք } Դ. Ճորոխի գաւառ-1.

5. Տիգրիս* (արեւմտեան)՝

Վերեւն երկու կողմից — ժբ) Աղձնիք

Տիգրիս (արեւելեան)՝

Բոլոր հոսանքով երկու կողմ. ժգ) Մոկք

Մեծ Զաւ՝

Մէջն երկու կողմից — ժդ) Կորճայք

} Ե. Տիգրիսի գաւառներ-3.

6. Որմեայ** կամ Կապուտան լիճ՝

Արեւմտեան կողմ. } ժե) Պարսկահայք } Զ. Պարսկա-
Արեւելեան կողմ. } Ատրպատական } հայք-1.

Գ. Մ՝եծ Հայքի այս 15 գաւառների քաղաքական նշանակութիւնը խօսք չկայ որ կախուած էր իրենց տեղագրութիւնից, որից եւ կախուած էին նաեւ նոցա ընդարձակութեան միջոցները։ Ամենից ընդարձակ եւ նշանաւոր գաւառները Կուր-Երասխեան գաւառներն

հին կտակարանի մէջ տրուում է Փրատ, Արաբացիք՝ Ֆորատ. ոմանք կարծում են որ այդ անունն հին պարսկական խօսք է եւ համապատասխան է "Ու-ֆրատա-տա" խօսքին, որ նշանակում է "լաւ հուն (անցնելու տեղ) ունեցող" գետ։

* Տիգրիս նոյնպէս օտար կոչումն է. Հայերէն տուում են Դգղաթ կամ Դկլաթ։ Տիգրիս խօսքի նշանակութիւնն է Սլաք (տէգ, տիգի). եւ այդպէս կոչուում է նա իւր արընթացութեան պատճառով. Տիգրիսի անունն արեւմտեան ազգերն էլ այդպէս են տալիս. Արաբացիք Հայոց Դկղաթ խօսքը շինել են Դիջլէհ։ Տիգրիս, Դըգղաթ կամ Դկլաթ, Դիջլէհ — այս երեքն էլ միեւնոյն խօսքն է զանազան ազգերի մէջ զանազան կերպ արտասանուած. ամենահինը Տիգրիսն է, որից եղել է Դգլաթ կամ Դկղաթ. ապա սորանից Դիջլէհ։

** Որմեայ լճից զատ Հայաստանում կան երկու ուրիշ մեծ լճեր, բացի աւելի մանրերը։ Այդ երկու լճերն են ա) Վանայ լիճ, որ Հայերը Բզնունեաց կամ Ռշտունեաց կամ Տոսպայ Ծով էլ էին տուում եւ բ) Սեւանայ լիճ, որ կոչուում էր նաեւ Ծով Գեղամայ. այժմ Գէօքչէ ասուած։ Մանր լճերի մէջ նշանաւոր են Արտահանու կամ Չլտրու լիճը, Թափարաւան կամ Փառաւան եւ Գայլատուաց։ Մեծ լճերի մէջ Սեւանը մօտ 6000 ոտք բարձր է ծովի երեսից, Վանը 4700'. Որմեայն 4500'։

ԳԼ. Ա. էին, որոնցից առանձին ուշադրութեան արժ
Այրարատ, բ) Վասպուրական եւ գ) Գուգարք
արեւմտեան բաժնում իւր տեղադրութեան
ներից աւելի յաջող եւ նշանաւոր քաղաքա
ունէր Տիգրիսեան գաւառներից մէկը միա
Աղձնիք: Սորանից հարկաւոր չէ եզրակացնե
գաւառներն իրենց սահմաններում չունէին
ցէ քաղաքական նշանակութիւն եւ միանգա
նշան էին: Հետեւելով Խորենացու ցուցմունք
լորդ չի լինիր ներկայացնել այստեղ վե
գաւառների դասաւորութիւնն, իրենց քա
նշանակութիւնն եւ մօտաւոր սահմանները:

1. Այրարատ:

Մեծ Հայքի առաջին եւ գլխաւոր գ
Այրարատը. հին մատենագիրներն Այրարատ
նում են "միջոց աշխարհին Հայոց„ "միջաց
"մէջ աշխարհ„ "գլուխ աշխարհաց Հայոց„
Սորանից երեւում է, որ Այրարատն Հայաստ
տեղն է եղել եւ միեւնոյն ժամանակ նորա սի
կեդրոնը՝ ոչ միայն աշխարհագրական այլ ե
քական տեսութեամբ:

Այրարատի սահմաններն էին՝ արեւել
ղամայ լեռներն եւ Գեղամայ ծովը, որ է ա
րալագեազու լեռներն եւ Սեւան լիճը. հիւսի
գարաց լեռները եւ Հիւսիսոյ Ծովակը, որ
Բամբակի, Լօռու եւ Չլտրի լեռներն եւ Ար
լիճը. արեւմուտքից Վանանդայ եւ Ջարիշա
ները, որ է այժմու Սօղանլուի լեռները.
Բիւրակնեան (պին-կէօլ) լեռների արեւելեա
րը, Ջրաբաշխ եւ Բարդող լեռների գօտին եւ
գագաթները:

Այրարատի սահմանակից գաւառներն
րեւելքից Սիւնիք եւ Արցախ. հիւսիսից Գ
արեւմուտքից Տայք եւ Բարձր Հայք. հարա
րուբերան եւ Վասպուրական: Այրարատն ին
քան գաւառ, որոնցից մէկի անունը Նմանա





*բարատ էր եւ Հայոց Թագաւորների բնակութեան տեղն էր իբրեւ նոցա յատուկ սեփականութիւն. Մնացած գաւառները զանազան նախարարութեանց ձեռքն էին իբրեւ ժառանգական պարգեւ Թագաւորների կողմից։*

*Այրարատումն են՝ Մեծ* (16.900') *եւ Փոքր Մասիս,** (12.284') *Արագած* (13.400') *եւ Նպատ լեռները. նոցա մէջն է սկիզբն առնում եւ հոսում Երասխ գետը, որի բազմաթիւ վտակների վերայ գտնուում են շատ գիւղեր եւ բազմամարդ քաղաքներ։*

*Քաղաքներից յիշատակութեան արժանի են՝ Վաղարշաւան՝ Մուրցի եւ Երասխի խառնարանում, այժմ անհետացած. նորա տեղն է Հասան-Ղալայ*

* *Անկարելի է, որ Մասիս սարը միայն մի անուն ունենար. նորա բնութեան եւ տեսարանների բազմազանութիւնը պէտք է զանազան անունների պատճառ լինէր։ Եթէ հիւսիսից՝ Այրարատում բնակողներն անուանում են այդ սարը Մասիս, մեզ յայտնի չէ, թէ ինչպէս էին անուանում նորան հարաւային բնակիչներն, այսինքն Վասպուրականցիք եւ Տուրուբերանցիք։ Մենք գիտենք, որ Մասիսին Տաճիկներն ասում են Աղրի-տաղ այսինքն Ծանր-լեառն. այս ստուգաբանութիւնը շատ կասկածելի է։ Երեւի Տաճիկ կամ Թուրք ժողովուրդը (ինչպէս առհասարակ սովոր է) Մասիսի մի որեւիցէ անհասկանալի կոչումը շինել է Աղրի. թերեւս Աղրի անունն էլ նոյնչափ հայերէն է ինչպէս եւ Մասիսը. մենք գիտենք, որ Արագած անունը դառել է Ալագեազ. չէ կարելի ասել թէ սա Թուրքի խօսք է, թէեւ ունենար Թուրքերէնում մի որեւիցէ նշանակութիւն. մանաւանդ որ ինչպէս յայտնի է երբեմն այդ անունն արտասանում են նաեւ Ալագեօզ (Ծաղկաչեայ)։*

*Միգուցէ Մասիսի հարաւային երեսի անունն էր Աղրէ (թերեւս Արղէ, Արխէ, Արհէ, Արքէ կամ Ար'րէ խօսքերից աղճատեալ). աւանդութեամբ մնացած Արարատ կոչումն էլ, որ գրաւոր յիշատակարաններով չի հաստատուում, մեր կարծիքով սկզբում նոյն հարաւային երեսի անունը պէտք է լինէր։*

*Արարատ կոչումը պէտք չէ շփոթել Սարարադի հետ, որ նոյնպէս մի գագաթի անուն է Կորդուաց լեռներում. Ասորիք կարծում էին, որ Սարարադի վերայ իջաւ Նոյեան տապանը. (տես Խոր. Պատմ. Հաւիփ։)*

*Նոյնպէս հարկաւոր չէ շփոթել Արարատը՝ Այրարատ անուան հետ, վերջինս դաշտի անուն է Մասիսից հիւսիս, իսկ Արարատ կամ Արարադ կոչումներն երեւի վերաբերում էին այն տեղերին միայն, որոնք Մասիսից հարաւ էին ընկնում։*

Գլ. Ա. 1 բերդը։ Երուանդաշատ՝ Ախուրեանի եւ Ն
Նարանում, այժմ աւերակ. Նորա տեղն
րամլու գիւղը. Վաղարշապատ՝ Քասաղ գ
այժմ գիւղաքաղաք. այստեղ է Հայոց Հ
կան աթոռը Ս. Էջմիածնի վանքում.
Երասխի եւ Մեծամօրի խառնարանում, այ
այստեղ է Խորվիրապ սաուած վանքը. Դ
կամ Ազատ գետի վերայ, այժմ աւերակ.
րեան գետի վերայ, այժմ աւերակ. այս
շավանք գիւղը. Կարս՝ Ռահ գետի վերա
ղաքներից զատ Այրարատի երեւոր ծածկ
վանքերի եւ հնութիւնների աւերակներ
չնչին մասը միայն ազատուած են խաղաղ
լու երկիւղից։

Նշանաւոր է Այրարատի պտղաբերա
հարստութիւնը, ինչպէս նաեւ տեսարանն
կութիւնն եւ օդերի քաղցրութիւնը։ Ն.
միչներից մէկը՝ Ղ. Փարպեցին՝ շատ գեղ
գրել է նորա այդ նշանաւոր կողմը։ "Արշակ
տասում է Փարպեցին, ստիպուած էր թող
րատ գաւառն եւ գնալ. ստիպուած էր թ
ընդարձակ, որսալից դաշտերը, որոնց չոր
ղեցկանիստ եւ պարարտարօտ լեռներն
զանազան որսի կենդանիներով լցուած. ս
որոնց կատարներից իջած ջրերը՝ դաշտեր
հացին եւ գինուն առատութիւն են տալ
քաղցր համ եւ ուղաբուղխ ընդէզէններ
թիւն։ Նորա խոտերի առատութիւնը կ
անթիւ արօտականներ՝ թէ ընտանի էշեր
րի երէների անհամար երամներ, որոնք ա
մարմնով երեւում են գէր, թանձրաթ

* Քասաղ գետի արդի անունն է Ապարան չ
եւ այլն. մեզ այնպէս է երեւում, որ Քա
ծոցը թափուելուց յառաջ Զէյվա աւանի
նում է մի այլ գետի հետ. ինչքան որ ս
վկայութիւնից եզրափակել կարելի է՝ Քաս
գետի (այսինքն Զէյվի ջրի, Սեւջրի) վտ
րա միջնորդութեամբ է միանում Երասխ
Գլ. Դ. 1։)





տաւողագաւակ։ Իսկ նորա անուշահոտ ծաղիկներ[ը]
հոտը քաջ որսասէր մարդոցն եւ հօտարածներին
առողջութիւն է տալիս եւ վերանորոգում ու կազ-
դուրում է նոցա միտքն եւ զգայարանքը։ Կան Այրա-
րատում եւ զանազան բոյսերի արմատներ, որոնք օգ-
տակար դեղերի համար պէտք են գալիս։ Բայց Այ-
րարատի ընդարձակ դաշտերը մենակ տեսանելի կեր-
պով չեն գրաւում աշխատասէր մարդուն. այլ աւել[ի]
աշխատանք փնտռող մարդոցը գետնի տակ պա-
հուած օգուտներն էլ են հասկացնում, ունին ոսկի
պղինձ, երկաթ եւ պատուական քարեր։ Կան նաեւ
որդեր կարմրատեսիլ զարդ եւ գոյն պատրաստող-
ների համար։ Իսկ Այրարատի գետերն աշխատասէ[ր]
մարդիկների փորը կշտացնել կարող են զանազան տե-
սակ մեծ եւ փոքր ձկներով։ Այրարատը սնուցանում
է իւր մէջ նաեւ զանազան հաւեր. կրկչաձայն, առա-
պարասէր, վիմասոյզ, սորամուտ կաքաւի եւ սալամբ[ի]
երամներ. կամ թփամուտ, մացառաղօղ, եղեգնաբնակ
պարարտամարմին եւ անուշահամ վայրի աքարներ[ի]
տեսակներ. նաեւ կան այնտեղ ջրասուզակ, մամռա-
խնդիր, խօզակեր եւ մեծամարմին փոր, թանձր եւ
սագ։ Նախարարները որսի գնալիս միքանիսը այծեամ-
ների եւ վայրի էշերի յետեւից էին վազում. ոմանք
ձիով ընկնում էին եղջերուի եւ եղնիկի երամներ[ի]
յետեւից. միքանիսն էլ սրերով սպանում էին սաստ-
կանդամ վարազներին, իսկ շատերը մանր մանուկներ[ի]
իրենց դաստիարակների եւ ծառաների հետ միասին
բազէներով զանազան տեսակ թռչուններ էին բռնում
եւ բերում էին ընթրիքը ճոխացնելու համար։ Եւ այ[դ]
որս անօղներին աչք էին պահում շատ ձկնորսներ[ը]
մանուկներ եւ երբ տեսնում էին, բերում ընծայ էին
տալիս իշխաններին ձուկ, զանազան վայրի թռչուն-
ների ձագեր եւ ձուեր. նոքա էլ իրենց ուզածի չափ
վեր էին առնում այդ ընծաների մի մասը եւ իւրեանց
հաւաքածոյն էլ մի բան նոցա էին տալիս. եւ երբ
հանում էր ամէն մարդ իւր ապարանը, բաշխում էին
տանը մնացող բարեկամներին իրենց բերածները

Գւ. Ա. 1 լաւերը. բայց մեծ մասով օտարներին էին տալիս։ Եւ պէտք էր տեսնել ամէնի տան ընթրիքին ինչպէս իրար վերայ դիզած էին լինում երէները կամ ինչպէս շարած էին լինում նոցա գլուխները։”

“Եւ Արշակ թագաւորն այսպիսի մի գաւառը պիտի թողնէր եւ գնար։ Այն գաւառը, որն Հայոց աշխարհի գլուխն է, որն իւր լիութեամբ նման է Եգիպտացւոց երկրին եւ Աստուծոյ դրախտին. նա պիտի թողնէր անթիւ ապարանների բարձրաբերձ շինուածները. անյագ եւ ամենալի դաշտերի ուրախութիւնը եւ հրեշտակի ցոյց տուած Աստուծոյ սուրբ տունն եւ մեծ եկեղեցին (Էջմիածին) եւ այլն։” Այրարատի պտղաւէտութիւնն այսօր եւս նշանաւոր է իւր բազմատեսակութեամբ, որն եւ հաստատում է Փարպեցու նկարագրութեան արժանահաւատ եւ բնական լինելը։

Այրարատի վերայ շատ հին եւ նոր գրուածքներ կան աշխարհագրական եւ պատմական տեղեկութիւններ տուող. բացի Վենետիկ հրատարակուած Հ. Հ. Ինճիճեանի եւ Ալիշանի հանրածանօթ ստորագրութիւնները, ուշադրութեան արժանի են նաեւ ի թիւս այլոց Հ. Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանի “Ստորագրութիւն Էջմիածնի եւ այլն.” 1842 թ. Էջմիածին տպած, եւ Մեսրոպ Թաղիաթեանցի “Ճանապարհորդութիւն ի Հայս” 1847 թ. Կալկաթա տպած։

2. Սիւնիք։

Այրարատից արեւելք եւ Սեւանայ լճից հարաւ Որոտնոյ եւ Հագարի գետերի հովտում եւ Երասխի վերայ գտնուում է հին Սիւնեաց աշխարհը։ Սիւնեաց հիւսիսային սահմանն է՝ Արցախ եւ Ուտի գաւառները. արեւելքից՝ Փայտակարան եւ մասամբ Արցախ. հարաւից՝ Վասպուրական եւ մասամբ Փայտակարան. արեւմուտքից՝ Այրարատ եւ մասամբ Վասպուրական։ Սիւնեաց աշխարհումն է հին ժամանակներից հռչակուած Տաթեւի վանքը, որ գտնուում է Որոտնոյ գետի մի առուակի վերայ։ Սիւնիքը լեռնոտ աշխարհ

լինելով երկար ժամանակ կարողացաւ պահպանել իւր քաղաքական անկախութիւնը։ Սիւնեաց աշխարհի մասին տես Ստեփաննոս եպիսկոպոս Օրպելեանց (ԺԳ. դար.) "Պատմութիւն տանն Սիսական։„ 1861. Մոսկվա տպ։

3. Արցախ։

Սիւնիքից արեւելահիւսիս Թարթառ գետի ընթացքով երկու կողմից գտնուում է Արցախ գաւառը, որի մասին տես Գլ. ԺԲ. 3։

4. Ուտիք։

Կուր գետի հովտում Աղստեւ եւ Բերբեր վտակների մէջ տեղը Ուտիք գաւառն է. այնտեղ է արդի Գանձակի կամ Եղիսաւէտապօլի նահանգի մի մասը։

5. Գուգարք։

Այրարատից յետոյ ընդարձակութեամբ ամենից նշանաւորն է Գուգարք կամ Գուգարաց աշխարհը։ Գուգարքին սահմանակից էին՝ հիւսիսից Վրաստան, արեւելքից Ուտիք, հարաւից Այրարատ, արեւմուտքից Տայք։ Գուգարքն հին ժամանակներն առանձին բդեշխութիւն է եղել, եւ իբրեւ սահմանագլուխ գաւառ նշանաւոր էր իւր սահմանապահ զօրքերով։ Միջին դարերում Գուգարքի մէջ ծաղկեցան Հաղբատ, Սանահին, Գետիկ եւ այլն հռչակաւոր վանքերը. Գուգարքի մասն է այժմու Լօռուայ գաւառը Ջալալօղլի քաղաքով։

6. Տայք։

Արեւմտեան սահմանագլուխ գաւառ է Ճորոխ գետի հովտում. սորա սահմաններն են արեւելքից եւ հիւսիսից Գուգարք եւ Այրարատ, արեւմուտքից Եգերաց աշխարհն եւ Սեւ Ծովը, հարաւից Բարձր Հայք։ Տայքը լեռնոտ եւ բազմահովիտ երկիր է. այդ պատճառով եւ համարուում է Հայոց աշխարհի գե-

Գւ. Ա. 1

ղեցիկ գաւառներից մէկը. Ճորոխի երկու կողմի լեռներից թափւում են նորա մէջ շատ մանր եւ խոշոր վտակներ, որոնց վերայ են եւ Տայքի բազմամարդ աւաններն ու քաղաքները, Թօրթում գետի վերայ է Թօրթում քաղաքը. Օլթի գետի վերայ է Օլթի քաղաքը, որ է Ուխտիք ասուած հին մեծ աւանը. Ճորոխի վերայ է Արդուին քաղաքը, որ նշանաւոր է իւր վաճառաշահութեամբ: Իսկ թէ ուր են Փարպեցու յիշած Ջենակս, Արահեզայ եւ Որջնհաղ գիւղերի տեղերը, որոնք Տայքումն են եղել, չենք կարող որոշել:

7. Բարձր Հայք:

Վերի չորս գաւառների նման Բարձր Հայքն էլ սահմանագլուխ կամ եզերեայ գաւառ է. Նորա սահմաններն եղել են՝ արեւելքից Այրարատ, հարաւից Չորրորդ Հայք, արեւմուտքից Փոքր Հայք եւ հիւսիսից Տայք: Այդ գաւառն այդպէս կոչւում է իւր տեղագրութեան պատճառով, որովհետեւ նորա սահմանների մէջն են Բիւրակնեան շղթայի բարձր հովիտներն ու գագաթները եւ նորանից զանազան կողմեր ընթացող լեռնագօտիները. Նորա սահմաններումն են սկիզբն առնում Եփրատ եւ Ճորոխ գետերը: Արդի Էրզրումի գաւառն հին Բարձր Հայքի մի մասն է եւ կոչւում էր Կարին. Բարձր Հայքումն է եւ Երզնկայ քաղաքը, Գոհանամ սարի ստորոտում. սորանից ոչ հեռու գտնւում էր հին Երիզայ աւանը, ուր էր Անահիտ Ոսկեմօր աթոռը. այդ տեղերումն է եւ Գամախ կամ Կամախ անունով ամրոցը, որ յառաջ Անի էլ էր կոչւում, ուր գտնւում էր Արամազդի մեհեանը եւ ուր թաղւում էին Հայոց Արշակունի թագաւորներին: Այն ժամանակ երբ Հայաստանի մի մասը Յունաց կայսերութեան ձեռքն հասաւ, Թէոդոս կայսր հրամանով Բարձր Հայքի Կարին գաւառում, որ սահմանագլուխ էր, մի ամուր բերդ եւ քաղաք շինեցին անուանեցին Թէոդոսուպօլիս որ է այժմու Արզրո

Կարնոյ գաւառի մասին տես Խորենացու գեղեցիկ

կարագրութիւնը, գիրք Գ. գլ. ԾԹ, որն եւ ամբողջապէս բերուած է նաեւ Ասողիկի պատմութեան մէջ, եր. 72 եւ այլն։

8. Չորրորդ Հայք։

Այս գաւառը նոյնպէս սահմանագլուխ է Եփրատ գետի երկու մեծ բազուկների միութեան տեղում. սահմաններն են արեւելքից՝ Տուրուբերան, հարաւից՝ Աղձնիք, արեւմուտքից՝ Փոքր եւ հիւսիսից՝ Բարձր Հայք։ Չորրորդ Հայքի մէջն են՝ ի թիւս այլոց՝ Ծոփաց աշխարհն, Անգեղտունը՝ Անգղ կամ Ինգիլա բերդով, որ այժմ Էգիլ է կոչուում Տիգրիս գետի վերայ։ Ծոփաց աշխարհի նշանաւոր քաղաքներից մէկն է Ամիթ կամ Ամիդա՝ արդի Տիարբեքիրը որ նոյնպէս Տիգրիս գետի վերայ է։ Չորրորդ Հայքումն են նաեւ արդի Խարբերդ (Քարբերդ) եւ Պալու (Բալու) քաղաքներն Արածանու հովտում։

9. Աղձնիք։

Տիգրիսի արեւմտեան բազկի վերայ. հիւսիսից՝ Հայք, արեւելքից՝ Մոկք եւ Տուրուբերան, հարաւից՝ Հայոց Միջագետքը, արեւմուտքից՝ Փոքր Հայք։ Աղձնիքի տեղագրութիւնն իբրեւ սահմանագլուխ գաւառ այնքան յայտնի չէ, որ այնտեղ եւս առանձին բդեշխութիւն կար ինչպէս եւ Գուգարքում։ Աղձնիքումն են հին Տիգրանակերտ քաղաքի աւերակները։

10. Տուրուբերան։

Տուրուբերանը սահմանագլուխ գաւառ չէ, այլ Այրարատի եւ Սիւնիքի նման միջերկրեայ է. նորան սահմանակից են՝ հիւսիսից՝ Այրարատ, արեւելքից՝ Վասպուրական, հարաւից՝ Մոկք եւ Աղձնիք, արեւմուտքից՝ Չորրորդ Հայք։ Տուրուբերանն ընկնում է Արածանու երկու կողմը եւ երկու կողմիցն էլ բարձր լեռներով պատած է. հիւսիսից՝ Բիւրակնեան հարաւից՝ Տօրոսեան եւ Սիմ լեռները գրեթէ անընդհատ ուղեկից են Արածանուն։ Հիւսիսային լեռներից թա-

Գ. Լ. Ա. փուում են Արածանու ծոցը. Խնուսի ջուրն Ե-
1
բուհուր, իսկ Հարաւից՝ Մանազկերտի ջուրն ե
ջուրը. վերջինիս հովտումն է Մուշ քաղաքն
դաշտ տառած տափարակը. Հին ժամանակները
դաւառն էր այդ հովտում:

Տարօնի մէջն է հին Աշտիշատը՝ Քարքէ
սորոտում, ուր գտնւում էրնոյն գաւառի կա
ռուլթեան կեդրոնը. ոչ հեռու Աշտիշատից գտնւ
է եւ Գլակայ վանքն՝ այժմ "Մշու սուլթան սու
Կարապետու վանք,, կոչուած. այդտեղ դրեց սու
Գրիգոր Լուսաւորիչ Հայոց քրիստոնէական եկեղեց
առաջին հիմքը. այդտեղ ամփոփեց նա Կեսարիայ
բերած սուրբ Յովհաննէս Մկրտչի նշխարները: Տարօնումն են Հայոց հռչակաւոր վարդապետների Մեսրոպի, Խորենացու, Անյաղթ Փիլիսոփայի եւ այլոց ծննդեան տեղերը: Կռապաշտութեան ժամանակ Տարօնը Սղկունի նախարարների ձեռքն էր, իսկ քրիստոնէութեան ժամանակ եղաւ ժառանգական սեփականութիւն Մամիկոնեան նախարարութեան: Տարօն գաւառն ունի շատ պատմական հնութիւններ, որոնք կեդրոնացած պէտք է լինին՝ Գլակայ վանքի եւ Մուշ քաղաքի շուրջը: Այնտեղ է՝ ի թիւս այլոց՝ Ս. Սահակ Պարթեւ Հայրապետի գերեզմանը: Տարօնի հին պատմութեան մասին տես Զենոբ Գլակ "Պատմութիւն Տարօնոյ:,,

11. Մոկք:

Տուրուբերանի հարաւային կողմն է Վանայ Ծովակը. սորանից հարաւ ընկնում է Մոկաց աշխարհը կամ Մոկք. նորան սահմանակից են՝ հիւսիսից Տուրուբերան, արեւելքից՝ Կորճայք, արեւմուտքից՝ Աղձնիք եւ հարաւից՝ Միջագետք: Մոկքը Տիգրիսի արեւելեան բազկի վերայ է եւ լեռնոտ երկիր է: Գրեթէ ամբողջապէս Քրդերի ձեռքն է այժմ: Մոկքի մի մասն այժմ եւս նոյնն անունն ունի եւ կոչւում է Մոկս կամ Մուկուս. այդ մասն ընկնում է Վան լճից հարաւ Ընձաքիարս լեռների մէջ:





12. Վասպուրական.

Գլ. Ա. 1

Մեծ Հայքի ամենից ընդարձակ գաւառներից մէկն է Այրարատից յետոյ։ Նորան սահմանակից են հիւսիսից՝ Այրարատ եւ Սիւնիք, արեւելքից՝ Պարսկահայք եւ Ատրպատական, հարաւից՝ Կորճայք եւ Մոկք, արեւմուտքից՝ Տուրուբերան։ Վասպուրականի մէջն են՝ Շամիրամակերտ կամ Վան, Նախիջեւան եւ Մարանդ քաղաքները. այնտեղ է Վարագայ լեառը, Արտազ գաւառն եւ Թադէոս առաքելոյ վանքը, Վարդանանց պատերազմի դաշտն Աւարայր եւ այլն։ Մի ժամանակ Վասպուրականն Արծրունեաց ցեղին էր պատկանում, որոնք այնտեղ հաստատեցին եւ անկախ թագաւորութիւն. նոցա ժամանակ ծաղկեցան այնտեղ շատ վանքեր ու մենաստաններ, որոնց մէջ նշանաւոր է Աղթամարու վանքը՝ Վանայ ծովակի կղզիներից մէկի վերայ։

Վասպուրականի մասին հին պատմական տեղեկութիւններ տալիս է մեզ՝ ի թիւս այլոց՝ Ժ. դարու պատմիչ Թովմա վարդապետ Արծրունին. Վան քաղաքի մասին տե՛ս եւ Խորենացու Գիրք Ա. գլ. ԺԶ։

13. Կորճայք։

Հարաւային սահմանագլուխ գաւառ է սա Կորդուաց լեռների մէջ. սահմանակից գաւառներն են՝ հիւսիսից՝ Վասպուրական, արեւելքից՝ Պարսկահայք, հարաւից՝ Միջագետք, արեւմուտքից՝ Մոկք։ Կորճայքը տեղաւորուած է մեծ Զաւ գետի երկու՛ կողմը. նորա մէջն է հին Աղբակ գաւառը, որ այժմ կոչւում է Էլբաղ կամ Էլբակ եւ գտնւում է մեծ Զաւի ակունքներում. այնտեղ են եւ հին Արեբանոս քաղաքի աւերակները, ուր է այժմ Ս. Բարթուղիմէոս առաքելոյ վանքը. Հայերն այժմ եւս այդ վանքից սկսած մինչեւ Ամեդիա քաղաքը կոչում են Կորճի երկիր. այդ երկրումն է եւ Ջուլամերկ քաղաքն, ուր գտնւում է Ասորւոց մարշիմոնների (պատրիարքների) կացութեան տեղը Կաչանէս Զաւ գետի վերայ։ Կորճայքն էլ Մոկքի նման Քրդերի ձեռքն է։

Գւ. Ա.
1

14. Փայտակարան։

Երասխի ներքեւն աջ ափում գտնուու
լեռնոտ երկիր, որ տեղաւորուած է նորա Սեւ ջ
նունով վտակի հովտում Սաւալան սարի հիւ
ստորոտներում. այդ երկիրն եւ պէտք է լինի Փ
կարանը, որն այժմ մասամբ կոչւում է Ղա
կամ Սեւ լեառն։ Փայտակարանին սահմանակ
հիւսիսից՝ Սիւնիք, արեւելքից՝ Կասպք, հա
Ատրպատական եւ արեւմուտքից՝ Պարսկահա
Վասպուրական։ Թէ ուր է Փայտակարան քա
դժուարանում ենք որոշել։

15. Պարսկահայք։

Կորճայքի արեւելեան կողմից, Ուրմեայ լ
րեւմտեան հիւսիսային կողմը գտնուում է Պա
հայք, որի հիւսիսային սահմանն էր Վասպու
իսկ հարաւայինը Միջագետք։ Պարսկահայքու
Խոյ եւ Ուրմիա քաղաքները։

Հայաստանի այս 15 գաւառներից՝ Տայքը,
եւ Չորրորդ Հայքն, Աղձնիքն եւ Հայոց Միջա
մի մասը Մծբին* քաղաքի հետ միասին՝ Ե. գ
Յունաց կայսերութեան ձեռն էին, մինչդեռ բոլ
գաւառներն ամբողջապէս պատկանում էին
նեան պետութեանը։

Դ. Հայոց աշխարհի բնակիչներն անուան
իրենց Հայ. այդ անունն օտարներին անծանօ

* Մծբին, (Նիզիբիս, Նիզիբին.) Մասիուս լեռնե
րաւային ստորոտում (որ Կորդուաց լեռների շա
կութիւնն է դէպի արեւմուտք.) հին Միգդոնիու
մու Ջախջախա գետի վերայ գտնուում էր հին
նակները մի քաղաք Մծբին անունով, որտեղ Վ
շակ Ա Պարթեւն հաստատեց իւր թագաւորական ս
մինչեւ Երուանդ Բը Մծբինն Հայոց թագաւորո
մայրաքաղաքն էր. ասում են Սանատրուկը ստրս
րակները վերանորոգելու համար բոլոր իւր գանձ
նեց եւ միայն մի գահեկան մնաց ձեռը. այդ պատ
անուանեց այդ քաղաքը «Մնաց մին»։ Մծբին
աւերակ է։

** Ոչ մի ազգի անուն իւր գրացւոց մէջ նոյնը չէ. Ն
ինչպէս են ծանօթանում իրար երկու գրացի կա

Յոյներն Հայերին անուանում են Արմէնիօս, կարծելով որ նոցա նախահայրը Թեսաղացի գաղթական Արմենէոսն է։ Ասորիք եւ Պարսիկներն Հայերին անուանում են Արմինք. Տաճիկներն եւ Արաբացիք Էրմանի, իսկ Վրացիք՝ Սօմխէթ (այսինքն "հարաւային,,)։ Եւրոպայի բոլոր ազգերն Յոյներին եւ Հռոմայեցւոց հետեւելով Հայի անունն Արմէն բառից են կազմում, որով Հայոց երկիրն էլ կոչուում է Արմէնիա (ἡ Ἀρμενία)։ Ոմանք կարծում են, որ Արմէն անունն աւելի հին է քանթէ Հայ անունը սակայն առհասարակ վիճելի հարց է դա։ Աչքի առաջ ունենալով Հայաստանի աշխարհագրական հնութիւնների մնացորդները՝ լեռների, գետերի եւ հին քաղաքների անուններն* եւ այլն, պէտք է հաւանական համարել, որ արդարեւ Արմէն անունն աւելի հին է, եթէ միայն այդ անունը միեւնոյն ազգն է նշանակում, եւ ոչ թէ մի այլ ազգ, որն Հայերից յառաջ կամ յետոյ բնակած է եղել այն երկիրներում։ Խօսք չկայ, որ Հայ եւ Արմէն անունները կարող են հաւասար հնութիւն ունենալ եւ զա-

զգեր, այնպէս եւ անուանում են իրար. այսպէս քաղաքակրթեալ Հռովմայեցիք երբ առաջին անգամ ծանօթացան Գերմանացւոց՝ տեսան, որ նոքա պատերազմ անելիս անսովոր գոռգոռոց են ձգում. այդ պատճառով նոքա այդ իրենց անծանօթ վայրենի ժողովրդին անուանեցին "Գերմանի,, (Germani) այսինքն կռուի ժամանակ գոռացող. ընդհակառակն հարաւային Սլաւները, որովհետեւ չէին կարող հասկանալ Գերմանացու խօսածը, անուանեցին նոցա "Նեմեց,, այսինքն "համր, չխօսող.,, արեւմտեան Գաղղիացիք առաջին անգամ ծանօթացան գերմանական Ալլէման ցեղին, այդ պատճառով Գաղղիացիք բոլոր Գերմանացւոց անուանում են Ալլէման. մինչդեռ Գերմանացին ինքն իրեն անուանում է Դէուտչ։ Այսպէս միեւնոյն ազգը զանազան ազգերի մէջ զանազան անուններ ունի եւ այդ շատ բնական է։ Եւրոպական ազգերի մէջ միայն Ռուսների անունն ամենայն տեղ մի է. զարմանալի է միայն, որ մինչդեռ Եւրոպացիք եւ այլ ազգեր այդ ազգին ասում են Ռուս, Ռուսաց ազգն ինքն իրեն անուանում է "Ռուսսկի,, այսինքն ռուսացի կամ ռուսական։

* Տես Արագած, Արմաւիր, Արաքս (Երասխ), Արածանի, Արարատ, Երնջակ (Ալինճայ), Երէզ, Երեւել, Արուճ, Արճէշ, Արամօնս (Երամօնս), Արգինա, Արցախ, Աղբակ, Աղուանք, Աղձնիք (Արզն) Արծրունիք, Արփանեալ, Արգուբին եւ այլն։

նազան ցեղերի անուն լինել, որոնցից մէկն աւելի շատ դէպք է ունեցել օտարին ծանօթ լինելու. այսպիսով նորա անունն եւս տարածուած է եղել ամբողջ երկրի կամ ազգի վերայ։ Ինչքան մեզ յայտնի էր, տակաւին ոչոք չէ փորձել Հայ խօսքի ստուգաբանութիւնը գըտնելու. մինչդեռ Արմէն խօսքը մեկնելու համար շատ փորձեր արել են Եւրոպայի ուսումնականները, բայց մեծ մասամբ անյաջող. Թերեւս Արմէնը մի ցեղական պատուանուն է, որ ապա ընդհանրացել է մի ամբողջ ժողովրդի կամ երկրի վերայ։ Իբրեւ պատուանուն Արմէն խօսքն էլ (ինչպէս Արիք խօսքը) կարող էր նշանակել "քաջազնեայ, ազնուական,, եւ այլն։

Ե. Հայոց երկիրը զանազան մայրաքաղաքներ է ունեցել. բայց շատ սակաւ են փոփոխուել նորա թագաւորանիստ մայրաքաղաքները, որից եւ երեւում է, որ տիրապետող իշխանները մի ցեղի եւ միեւնոյն աւանդութիւնների հետ կապուած անձինք չէին։ Ամենահին մայրաքաղաքն համարուում է Արմաւիրը. թէ որ ժամանակից մինչեւ երբ մայրաքաղաք էր Արմաւիրն, այդ դժուար է որոշել, որովհետեւ Հայաստանի ամենահին պատմութիւնը տակաւին մութն եւ անմշակ առասպելների մէջ է. Ասորեստանցին, Բաբելացին, Մեդացին (Մարը), Մակեդոնացին, Պարթեւը՝ ամէնքն էլ Հայոց վերայ տէր են եղել. մի երկիր, որի քաղաքական վիճակն այսքան փոփոխական է եղել, մայրաքաղաքներն էլ անշուշտ երկար կանգնել չէին կարող։ Արմաւիրից յետոյ յիշուում է Արտաշատ ապա՝ Մծբին, Եդիսիա, դարձեալ Արմաւիր, ապ Երուանդաշատ, դարձեալ Արտաշատ, ապա՝ Վաղարշ պատ, ապա Դուին եւ այլն։ Այս հանգամանքը կ րելի է նորանով բացատրել, որ ամէն մի թագաւոր նոր քաղաք շինելով ուզում էր, որ այն քաղա բարձրանայ, ուստի եւ այնտեղ էր փոխադրում [illegible] գաւորական աթոռը կամ կառավարութեան կեդ Բայց եթէ Հայաստանի մէջ մի որոշեալ տեղում ինքն Այրարատեան գաւառի մի ծայրից մինչե

ծայրը, նոր քաղաքներ էին կանգնում եւ թագաւո-րանիստ լինում, այդ բնաւ զարմանալի չէ, ընդորում իրօք Այրարատն էր թագաւորութեան կենդրոնն՝ իբրեւ առանձին կալուածք թագաւորների. այնտեղ թէ Արտաշատն ու Արմաւիրը, թէ Վաղարշապատն ու Դուինը չունէին այնպիսի մեծ հեռաւորութիւն իրարից եւ կառավարութեան համար չէին կարող ոչ մի անյարմարութիւն ընծայել: Իսկ թէ Հայոց թագաւո-րանիստ մայրաքաղաքները գտնւում էին նոյեւ մեծ Հայքի սահմաններից դուրս՝ Միջագետքում՝ Մծբին եւ Եդեսիա քաղաքներում, այդ առանձին ուշադրու-թեան արժանի երեւոյթ է: Ինչպէս յայտնի է, հին ժամանակները մի տէրութեան տեղական ներկայա-ցուցիչը մայրաքաղաքն էր իրօք. Յունաստանն Աթէն-քով եւ Սպարտայով էր յայտնի. Իտալիան՝ Հռով-մով. Յունաց կայսերութիւնը՝ Բիւզանդիայով. Հին Ասորեստանի եւ Բաբելացւոց թագաւորութիւնը՝Նի-նուէով եւ Բաբելոնով եւ այլն. իհարկէ այդ քա-ղաքների անունը տալիս աչքի առաջ ունինք այն եր-կրի եւ ազգի քաղաքական զօրութիւնը, ուր գտնւում էին նոքա: Այսպէս էլ Մծբինն եւ Եդեսիան. նոքա Հայոց թագաւորութեան մայրաքաղաքներ են եղել. նշանակում է, եղել է մի ժամանակ երբ Հայոց եր-կիրը գտնուել է հարաւային գաւառներից դուրս եկած մի ցեղի իշխանութեան տակ, որի քաղաքական ներկայացուցիչները Մծբինն եւ Եդեսիան են եղել: Բայց թէ ինչու Մծբինն ու Եդեսիան Հայոց թագաւո-րանիստ քաղաք են համարւում, այլ ոչ այն ցեղի, որի ներկայացուցիչները նոքա էին, այդ մի հարց է, որ ուրիշ շատ հետախուզութիւնների կարօտ է եւ Թողնում ենք աւելի պատեհ ժամանակի:

---

## 2. Ազգ Արշակունեաց = Արշակունեաց ցեղ:

Գ. դարում Ք. յա. Ասիայի արեւմտեան երկիր-ները Մակեդոնացւոց եւ Սելեւկացւոց իշխանութեան տակ էին. բայց այդ իշխանութեան լուծը անախորժ էր

ԳԼ· Ա· ժողովրդի առաջնորդներին։ Արշակ անուն
2 խան, որն ինքը Պարթեւաց երկրում Ս
կուսակալի օգնականն էր, առաջին օրին
այդ լուծը թօթափելուն։ Անտիոքոս Բ.
օրով նա սպանեց Պարթեւաց երկրի Ագա
նունով կուսակալին, դուրս արաւ իր
Սելեւկացւոցն ու Մակեդոնացւոց եւ հա
փոքրիկ անկախ տէրութիւն Հեկատոմփիլո
շուրջը (256 թ. ք. յռ.) կամ ինչպէս Խոր
սում է "ի քաղաքին Բահղ Առաւատի
Քուշանաց։,,**

Այս Արշակի թոռն Արշակ Մեծ՝ ընդ
իր տէրութեան սահմաններն, եկաւ Հա
էլ խլեց Մակեդոնացւոց ձեռքից եւ այ
գաւառ դրեց իր եղբօրը Վաղարշակին,
աւելի ընդարձակէ իր թագաւորութեան
ը. "Սահմանք քաջաց, ասում է նա, պէ
(է), որքան հատանէ, այնքան ունի։,,

Արշակի անունով նորան յաջորդող
կան թագաւորների ցեղը կոչուաւ "Արշ
Արշակունեաց։,, Մեր պատմիչները Պար
կրում թագաւորող ցեղին ասում են Պա
Պահլաւունի (Պահլ, Բահլ, Բահղ). իսկ
նեաց կամ Արշակունի,, կոչումը յատկացն
միայն Հայոց թագաւորական ցեղին. այնու
մենք կարդում ենք մեր նախնի մատենա
մէջ "Ազգ Արշակունեաց,,, դորանով պի
նանք այն Արշակունիների ցեղը, որոնք
Հայոց երկրում։

Հայաստանի Արշակունեաց թագա
սկիզբն ընդունուած է համարել 150 թ. ք
սէս Խորենացին այսպէս է ներկայացնում
կունեաց ցեղի պատմութիւնը։ Առաջին
թագաւորն էր Վաղարշակ, որն եւ առաջին
եղաւ այդ նորահաստատ թագաւորութե

* Տես „Reallexicon" Lübker.

** Տես "Պատմ. Հայոց,, Խորեն. Բ. Բ։

նացին յիշում է, որ նա վերականգնեց հին նախարարական ցեղերի արտօնութիւններն ու կարգերը. հաստատեց նոր արքունի պաշտօններ. Արմաւիր քաղաքում մեհեան շինեց եւ այնտեղ "անդրիս հաստատէ արեգական եւ լուսնի եւ իւրոց նախնեաց.„ աւերուած քաղաքները վերանորոգեց. մայրաքաղաքը Մծբինում հաստատեց. դատաստանական կարգեր եւ այլ օրէնքներ սահմանեց, որոնց մէջ եւ այն, որ թագաւորի աւագ որդին պէտք է համարուի տէրութեան ժառանգ եւ մնայ Մծբինում, իսկ միւսները պիտի գնան Հաշտեանք գաւառում բնակին (Չորրորդ Հայքում Արածանու հիւսիսային կողմը)։ Վաղարշակին է վերագրում Խորենացին Մարաբաս Կատինային ուղարկելը Հայոց պատմութիւնը գտնելու, որպէսզի իմանայ՝ թէ "ովք եւ ո՞րպիսի արք տիրեալ են ի վերայ աշխարհիս Հայոց մինչեւ ցնա. զքաջա՞ց արդեօք եթէ զվատաց անցեալ ունիցի զտեղի։„

Վաղարշակին յաջորդօղ թագաւորների մէջ կան շատերը, որոնք իբրեւ քաջ եւ քաղաքագէտ անձինք են ներկայանում Հայոց պատմութեան մէջ։ Արտաշէս Ա. եւ նորա որդին Տիգրան Բ. մինչեւ անգամ աշխարհակալութեան գաղափարով ոգեւորուած անդր քան զսահմանն Հայաստանի եւս ընդարձակած են երեւում իրենց յաղթութեան համբաւը, աշխատելով խոչընդոտ լինել Հռովմայեցւոց զէնքի տիրապետութեանն Արեւելքում. այս կռիւը կամ մաքառումը Հռովմայեցւոց դէմ՝ Հայոց համար այնուամենայնիւ վատ ելք ունեցաւ, ըստորում Տիգրան Բ.ից յետոյ Հայաստանը մեծ մասով Հռովմայեցւոց գերիշխանութիւնը ճանաչող մի հարկատու տէրութիւն դառաւ. Հայոց թագաւորներն այդպիսով դժուարին դրութեան մէջ ընկան. սոքա Հռովմայեցւոց ահից շատ անգամ ստիպուած էին Պարթեւների հետ ունեցած բարեկամական կապերն եւս խզել. Պարթեւների, որոնք Հռովմայեցւոց անհաշտ թշնամիներն էին եւ անդադար վտանգում էին նոցա լեգէոնները. Հռովմայեցւոց Կեսարների իշխանութեան ժամանակ նոյն

Գլ. Ա. 2 իսկ Պարթեւներին եւս չէր յաջողւում հան գ[illegible]
նոցա հարուածներից։

Հայոց Արշակունիների մէջ Տիգրան Բ.-[illegible] յետոյ աշխարհութեան արժանի են՝ Վաղարշ, [illegible] ղարշապատ, Վաղարշակերտ եւ Վաղարշաւան քա-ղաքները շինեց, Ամանորի տօնը հաստատեց Նաւա[illegible] մէկին կատարելու, Խազիրներին եւ Բասիլերին [illegible] ծեց Հայաստանի սահմաններից անդր քան զկ[illegible] ւեան գօտին եւ ինքն էլ մեռաւ այնտեղ։ Վաղա[illegible] որդին Խոսրով Ա. մեծն ստիպուած էր մաքառել Ա[illegible] տաշիր Սասանեանի դէմ, որ 226 թուին Ք. յտ. սպա-նեց Պարթեւաց Արտաւան թագաւորին, ջնջեց նորա սերունդը եւ տէր դառաւ Պարթեւաց թագաւորա-կան գահին. Խոսրովն հակառակում էր Արտաշիրի մի-տումներին այն դիտաւորութեամբ, որ թոյլ չտայ յի-շեալ գահի վերայ ուրիշ մի ցեղի հաստատուելու Արշակունիներից զատ. եւ նա իւր մաքառումը շարու-նակում էր Հռովմայեցւոց օգնութեամբ, որոնց հա-մար էլ վտանգաւոր էր նոր Սասանեան ցեղի հաստա-տուիլը։ Խոսրովը չկարողացաւ հասանել իւր նպատա-կին եւ սպանուաւ իւր ազգական Անակի դաւաճանու-թեամբ։ Սորանից յետոյ Արտաշիր Սասանեանը չէ թէ միայն Պարթեւաց երկրում հաստատուաւ այլ եւ մուտ գործեց Հայաստան՝ եւ իւր իշխանութեանն են-թարկելով՝ շատ փոփոխութիւններ ձգեց Հայոց նա-խարարական կարգերի մէջ եւս։

Արտաշիրի կամ Սասանեանների 27 ամեայ տի-րապետութեան ժամանակ դահիճների սրից փախու-ցած մանուկ Տրդատը, Խոսրով մեծի որդին, մեծա-նում եւ կրթւում էր Հռովմում իւր դայեակ Ար-տաւազդ Մանդակունու ձեռքի տակ. եւ յաջողու-թիւններն այնպէս բերին, որ Դիոկղետիանոս կայսրը զանազան քաջութիւններով հռչակուած Տրդատին թագաւորական թագով պսակեց եւ իւր լեգէոններից օգնական զօրք տուեց նորան՝ գալ եւ տիրել Հայոց երկրին, որն իւր հայրենի ժառանգութիւնն էր. ամե-նայն յաջողութիւն Տրդատի կողմն էր, երբ նա ըն-

դունուաւ բոլոր Հայ նախարարութիւնից, հալածեց Սասանեաններին եւ վերանորոգեց եղծեալ կարգերը։ Տրդատի օրով լուսաւորուաւ կռապաշտ Հայաստանը Աւետարանի լուսով եւ այդ լուսաւորութեան նախապատճառն էլ Խոսրովի կեանքը դաւաճանօղի որդին Գրիգոր Պարթեւն եղաւ, որին եւ իրաւամբ Լուսաւորիչ անունն յատկացուցին յետագայ Հայերը։ Գլ. Ա. 2

Թէ Արշակունեաց վերահաստատուիլը, թէ քրիստոնէութեան ծաւալումը եւ թէ բիւզանդեան կայսրների բարեկամութիւնն Հայոց թագաւորների հետ՝ պատճառ եղան Սասանեանների ատելութեան զարգանալուն. այդ պատճառով Տրդատի յաջորդները բնաւ հանգստութիւն չունեցան նոցա մեքենայութիւնների երեսից։ Սասանեանների նպատակն էր որպէսեւիցէ ջնջել Արշակունեաց թագաւորութիւնն Հայաստանում, եւ նոքա հասան իրենց նպատակին. ոչ Տրդատի թոյլ որդին Խոսրով, ոչ սորա որդին Տիրան (որ ուզում էր միեւնոյն ժամանակ ծառայութիւն անել չար Յուլիանոսին եւ Շապուհին) ոչ սորա որդին Արշակ Բ. (որ իւր հօր քաղաքականութեանն հետեւելով մինչեւ անգամ շատ արիւնհեղութիւնների պատճառ դառաւ եւ ինքն էլ Պարսից Անյուշ բերդում մեռաւ), ոչ սորա որդին Պապը (որ միայն Ներսէս մեծի շնորհիւ թագաւոր եղաւ, բայց իւր անխոհեմ վարմունքով Բիւզանդիայի դէմ՝ ստիպուած էր Կ. Պօլիս տարուիլ եւ գլխատուիլ.) ոչ մէկը սոցանից չկարողացան իրենց գահն ապահովել. մինչեւոր դրացի տէրութիւնները Բիւզանդիոյ եւ Պարսից՝ լաւ համարեցին իրենց մէջ բաժանել Հայոց թագաւորութիւնը 395թ. Ք. յ.։ Այնուհետեւ Հայոց թագաւորներին նշանակում էին Պարսիկները, որոնք ինհարկէ միշտ աշխատում էին իրենց արբանեակներին նշանակել։ Պարսիկների նշանակած թագաւորների մէջ ուշադրութեան արժանի է Վռամշապուհ, որի ժամանակ Հայոց նշանագրերը գտնուան, Ս. Թարգմանիչք ծաղկեցան եւ զարգացաւ ու ճոխացաւ Հայոց դրականութիւնը։ Վռամշապուհից յետոյ Պարսիկները

Գլ. Ա. նշանակում են, ոչ թէ Արշակունու, այլ մի Ս
2 նեան իշխանի Շապուհ անունով, որպէսզի նա իր
կարողանար որսալ Հայոց նախարարներին դէպի
կապաշտութիւն. բայց նա "ոչ կարաց հաճել
նախարարացն. ամենեցուն ատեցեալ գնա եւ ոչ
քայօրէն մեծարէին:"* Շապուհից յետոյ նախա
ները խնդրում են Վռամից, որ իրենց մի թագ
տայ ցեղէ Արշակունի: Այդ թագաւորն եղաւ Վռ
շապուհի որդին Արտաշիր, որն եւ վերջին Արշակու
թագաւորն էր Հայոց գահի վերայ: Արշակունեա
թագաւորութիւնն յարատեւեց մօտ վեց հարիւր տարի
այսինքն 150 թուից Ք. յա. մինչեւ 432 թիւը Ք. յտ**:

---

3. Նախարարք Հայոց:

"Նախարար ասւում էր հին Հայոց մէջ այն իշխանը, որն իւր ցեղական իրաւունքներով առաջին տեղն էր բռնում բոլոր միւս դասակարգութեանց մէջ:

Նախարարների իրաւունքներն էին՝ ա) ժառանգաբար տիրել այն կտոր հողին կամ գաւառին, որի լիակատար տէրն եւ իշխանն իւր նախնիքն էին. բ) իբրեւ ժառանգական տէր այն գաւառի՝ հարկ առնել նորա բնակիչներից, դատաստան կտրել նոցա մէջ, պատիժ եւ վարձատրութիւն եւ մինչեւանգամ մահուան վճիռներ տալ. եւ գ) ունենալ նախարարական գունդ թէ գաւառի պահպանութեան եւ թէ այլ արքունի ծառայութեանց համար: Միով բանիւ նախարարն ազատ տէր եւ իշխան էր իւր բաժին գաւառի վերայ: Նախարարի պարտաւորութիւնն էր՝ այդ իրաւունքների փոխարէն հարկ տալ թագաւորին եւ հարկաւոր դէպքերում պատրաստ գտնուիլ իւր զօրքով թագաւորին ներկայանալու եւ պատերազմի ու այլ զինուորական գործերի մէջ մասն ընդունելու:

Երկու կարգի նախարարներ կային՝ աւագ եւ կրտսեր. առաջին կարգից էին այն նախարարները,

* Տե՛ս Խորենացի գիրք Գ. գլ. ԾԲ:
** Տե՛ս Գլ. Ա. 8:

որոնք Հայոց ամենահին ազնուական կամ նահապե-տական ցեղերից էին յառաջացել*. իսկ երկրորդ կարգից էին նոքա, որոնց նախահայրերը հասարակ մարդիկ են եղել առանց ազնուական ծագումի եւ նախարարութիւն ստացել են թագաւորներից իրենց մի նշանաւոր ծառայութեան կամ հաւատարմութեան համար: Այսպիսի նախարարների անունը նոյնպէս գրում էին թագաւորական դիւանի մատենում Հայոց նախարարութեան դասակարգի մէջ: Եւ ինչ կարգով որ նշանակուած էր լինում նախարարների անունն այդ մատենի մէջ, այն կարգով էլ պարտաւոր էին նոքա բազմել իրենց բարձերի վերայ թագաւորական սեղանի ժամանակ:

Գլ. Ա. 3

Այս պատճառով եւ մնացել է մեր լեզուի մէջ "ընդունել բարձ եւ պատիւ յարքայէ" դարձուածն այս նշանակում է, որ առհասարակ նախարարութիւն տուողն ու առնողը թագաւորներն էին: Ինչպէսոր մէկի արժանաւոր ծառայութեան համար նախարարութիւն էին շնորհում թագաւորները, այնպէս էլ նորա անհնազանդութեան կամ ապստամբութեան համար խլում էին նորանից այդ կոչումն եւ արտօնութիւնը:**

Շատ անգամ գժտութիւններ եւ կռիւներ էին պատահում, երբ կրտսեր նախարարներն աւագներից վեր նստելու հրաման էին ստանում կամ անստոհմ մարդիկ մինչեւ անգամ աւագ նախարարներից էլ վեր էին անցնում: Երբ Հայաստանն երկու բաժին եղաւ Յունաց եւ Պարսից մէջ (Դ. դարի վերջերում Ք. յտ.) այն ժամանակ նախարարութիւնը շատ թուլացաւ. ըստ-որում շատերը չուզենալով կրակապաշտ Պարսկի իշ-խանութեան տակ մնալ, անցնում էին քրիստոնեայ Յոյների կողմը. եւ այդ գնացողների տեղը ընկնում էր աւելի կրտսեր կամ վատատոհմ նախարարների

* "Նախարարութիւնս եւ նոցին նախարարութեանց նահապետութիւնս հաստատեաց Վաղարշակ, ասում է Խորենացին, զարս պիտանիս, որ ի զաւակաց նախնւոյն մերոյ Հայկայ եւ յայլոց:" Տես Գիրք Բ. գլ. Գ:

** Տես Խոր. Գիրք Բ. գլ. ԽԷ. ԾԷ. ՁԴ. եւ այլն:

Գւ. Ա. 3

ձեռքը։ Այս պատճառով նախարարների մէջ այնքան գժտութիւններ ծագեցան, որ նախնի դասակարգութիւնն էլ խանգարուած ինչարկէ Պարսիկների օգնութեամբ, որոնք Հայոց հին բարետոհմիկ ցեղերի պատիւը նուաստացնելու համար ոչ մէկ միջոցից չէին խորշում, որպէսզի աւելի հաւատարիմ արբանեակներ ունենան Հայաստանում՝ նորընտիր նախարարների մէջ։ Սասանեան թագաւորների քաղաքականութիւնն այս կերպով շատ վնասեց միքանի հին նախարարական ցեղերի պատուին. օրօրինակ մի անգամ Շապուհ թագաւորը նշանակեց Սիւնեաց Անդոկ իշխանին չորեքտասաներորդ տեղումը բազմելու իւր արքայական սեղանի ժամանակ։ Անդոկը թագաւորի այս վարմունքից այնպէս էր վիրաւորուած, որ սեղանի ժամանակ մատ չմտեցուց կերակուրի, եւ վերադառնալով իւր երկիրն ապստամբեցաւ թագաւորի դէմ, անցաւ Յունաց կողմի Հայաստանը եւ երկար ժամանակ դադար չէր թողնում Պարսիկներին իւր ահեղ արշաւանքներով։ Եւ այսպիսի օրինակներ շատ կան մեր պատմութեան էջերում, մանաւանդ Արշակունի թագաւորների թոյլ ժամանակ, երբ նոքա միանգամայն կորուցել էին իրենց նշանակութիւնը։

Որովհետեւ նախարարների դասակարգութեան վերայ խօսեցանք, վասնորոյ աւելորդ չի լինիր մէջ բերել այստեղ հետաքրքրութեան համար նոցա ցուցակը՝ այն ձեւով, ինչ ձեւով որ մենք գտնում ենք մեր մատենագրութեան նշխարների մէջ։

ԺԲ. դարու մի յիշատակարանի մէջ (տես Սոփերք Հայկ. Բ.) ուր պատմուում է Մեծն Ներսիսի վարքի եւ գործունէութեան մասին, ի թիւս այլոց՝ այսպէս ենք կարդում մի տեղում. "Իբրեւ ձեռնադրեցաւ, ասում է, մեծն Ներսէս ի Կեսարիա, եւ եկեալ ի Հայս նորոգէր զգահս իշխանացն Հայոց, զոր էր կարգեալ ի Խոսրովայ եւ յայլ թագաւորացն։ Զնոյնն եւ նա կարգէր ի ժամ ճաշոյն ի սեղան արքային Արշակայ քաջն ղըրե+հարբ–ր։„* Այստեղ նախարարութեանց ցուցակը

* Ստեփ. եպիսկ. Սիւնեաց՝ Ագաթանգեղոսից առած մի





բերելուց յետոյ շարունակում է պատմիչը "Այսքան, Գւ. Ա. 3 ասում է, գահոյք եւ այլ եւս յոլով, զոր ծանր համարեցայ արկանել ընդ գրով, զոր նորոգեաց Արշակ Թագաւորն եւ կարգեաց ի ժամ ճաշոյն իւրոյ ի սեղան իւր բարձս չորեքհարիւրս հրամանաւ մեծին Ներսիսի։ Իսկ ի Թիկանց կուսէ նստէին եկեղեցականք դասս ինն։,,

Սորանից մենք տեսնում ենք որ խօսրով Թագաւորի (Առաջի՞ն թէ Երկրորդ) հաստատած կարգը, որ գուցէ խանգարուած էր Արշակ Բ.ի ժամանակ, վերահաստատել տուեց մեծն Ներսէս։ Կայ մէկ ուրիշ յիշատակարան էլ, որն հրատարակել է Պր. Էմին իւր Խորէն. ռուս. Թարգմանութեան յաւելուածների մէջ (Թէեւ անյայտ է թէ որ ժամանակուանից է մնացած,) եւ հաղորդում է մեզ այն ցուցակը, որն հաստատել է տուել Սահակ Պարթեւը Պարսից Վռամ Թագաւորի ժամանակ։ Այդ յիշատակարանի խօսքերն հետեւեալն է։

". . . հակայ խնդիր արարեալ ի դրան արքունի, յԱրտաշէսի Թագաւորի, զոր ի Տիզպոնն խաւսեցեալ. եթէ ես զռամականն զնամա... զոր Արտաշրի ի դիւանին տեսի ի քաղոց ամսոյ ԺԷ եւ Վռամայ արքայից արքայի եւ բարերարի. եւ գիր արարի ես Սահակ կաթողիկոս, Թէ որպէս ձեր բարերարութիւնդ հրաման տացէ Հայոց ազատաց եւ տանուտէրացն՝ որպէս յառաջ առՀայոց ազգին էին նոյնպէս եւ ի ձերում դիւանի շահ համա . . . ին առնել, որ յայամ հետէ Հայոց ազատաց եւ տանուտէրանց գահ ի յայտ լինէր։ Նոյնպէս Ներսէհ հրամանաւ արքայից արքայի եւ ես . . . հակ

"Սահակն Արտաշէ[...] Թագաւորի արքունիքում [...]ում էր այն՝ ինչու մասին որ խօսուած էր Տիզբոնում ասելով "Քաղոց ամսի 17ին Արտաշիրի եւ արքայից արքայ ու բարերար Վռամի դիւանում ես տեսայ Վռամի պարգեւագիրը. եւ ես Սահակ կաթուղիկոսս խնդիր տուի (Պարսից Թագաւորին), որ նա հրամայէ արձանագրել արքունի դիւանում Հայոց Նախարարների եւ ազատների ազգանունները, ինչպէսոր յառաջ այդ անում էին Հայաստանում. որպէս զի այժմէն իսկ Հայոց ազատների եւ Նախարարների տեղերը որոշուած լինին։,, Արքայից արքայի հրամանով Ներսեհ եւ ես Սահակ

տեղեկութեան մասին խօսելիս՝ ասում է, որ Հայոց Նախարարութիւնը 17 բարձ է եղել, որոնցից 14երորդը հասել է Անդոկ իշխանին Սիւնեաց։

| | | |
|---|---|---|
| Գւ. Ա. 3 | Հայոց կաթուղիկոս կնքեցաք զգահ Նեմակին եւ եդաք մատանի զարքայից արքայի եւ զմերս„ ։ Նոյ է այսպէս արդար եւ ճշմարիտ ։„ | Հայոց կաթուղիկոս պարգեւագիրը կնքեցինք եւ արքայից արքայի ու մեր մատանին (կնիքն) էլ դրինք„ ։ Եւ բոլոր հետեւեալը արդար ու ճշմարիտ է ։„ |

Յետոյ հետեւում է Նախարարութեանց ցուցակը, բայց ո՛չ թէ չորս հարիւր բարձի՝ այլ միայն 70. թերեւս պակասորդը կորել է, ըստորում այդ հատուածն էլ որ ունինք Պր. Էմինի շնորհիւ՝ միմիայն Պր. Ախվերդեանի փորձառութեանն եւ հեռատեսութեան ենք պարտական, որ դէպքով գտել է եւ հասուցել յիշեալ ուսումնականի ձեռքը ։

Այդ երկու հին յիշատակարաններից զատ ներկայացնում ենք մեր բանասէրների քննութեանն եւ նախարարների զինուորական դասակարգութեան ցուցակը, որն հրատարակել է Հ. Յովհ. եպիսկոպոս Շահխաթունեանը իւր "Ստորագրութեան„ մէջ քաղելով Անանիա Շիրակունու ժամանակագրութեան միջից ։ Արդեօք այդ ցուցակն էլ Շիրակունու գրչին է պատկանում՝ թէ ապագայ գրիչների, մենք անձեռնհաս ենք ասելու մի հաստատ բան, բաւականում ենք միայն Հ. Շահխաթունեանի խօսքերը բերելով. "Որովհետեւ յիշատակեցաւ ձմերոց զօրաց Հայոց, ասում է նա, կարեւոր է գիտել հայրենասէր անձանց եւ զանմեռ մշտապատրաստ զօրացն զթիւ ի ժամանակի անդ թագաւորացն Հայոց. զայս ծանօթութիւն ոչ ոք ի պատմագրաց եթող ի գրուածս իւր յաղագս ապագայից, այլ ի խուզարկութեան մերում ի մատեանս հնոց՝ զոր զայն ուղղափառեալ յԱնանիայ Շիրակունւոյ ի վախճանի ժամանակագրութեան նորին, զոր ձեւացուցեալ էր ի քառաբաժին բոլորակ աղիւսակի միում, եւ զբաժինսն որոշեալ անուամբ դրանց՝„ "դրունք հիւսիսային, հարաւային, արեւելեան եւ արեւմըտեան, եւ յիւրաքանչիւր բաժինսն դասաւորութեամբ շարակարգեալ զնախարարսն կամ զազնուականս եւ զաշխարհսն եւ զթիւ յատկացեալ զօրացն նոցին. որոց ամենեցուն գումար թէպէտ ո՛չ համեմատի ամ-





բողջ թուոյն՝ որ ի լուսանցի անդ աղիւսակին նշանակի՝ Գւ. Ա. 3
եւ այն թերեւս ի սխալմանց գրչաց մատենին, բայց այնու ամենայնիւ դարձեալ հարկաւոր դատեցաւ ի մէնջ դնել աստ զօրինակն այնր աղիւսակի, զոր հազիւ ուրեմն ի հնութեանց անտի թղթոցն կարողացաք կենդանացուցանել:,, (Տես Բ. եր. 58:)

Բոլորակաձեւ աղիւսակի լուսանցքումը հետեւեալ կիսատ տողերն ենք կարդում

"...եւ զոմանս ի յայլ աշխարհս գրաւեալս. եւ լինի թիւ մարտիկ արանց, որ ընդ ազգաւք՝ ձդ.ից հազարաց թող զպապաաւորս դրանն արքունի որ է ոստանդ, որք պատերազմ ելանէին ընդ արքայի. եւ մարդպետական որ է ներքինի պահապան ի վերայ թագուհւոյն եւ գանձուցն. եւ ընդ ամենայն թիւ զօրացն Հայոց որ է հարիւր եւ քսան հազարաց:,,

"...եւ մեքանի ուրիշ աշխարհներում գրաւածներին. եւ լինում է կռուող մարդոց թիւը զանազան ցեղերից 84 հազար. բացի արքունի տան սպասաւորները, որ ոստան է (ասւում), որոնք թագաւորի հետ պատերազմի էին գնում. եւ (բացի) մարդպետական (գունդը), որը թագուհու եւ գանձերի վերայ ներքինի պահապան է. եւ բոլորը միասին Հայոց զօրքի թիւն է հարիւր քսան հազար:,,

Այս երեք հետաքրքիր յիշատակարանները մէջ բերելուց յետոյ մենք աւելորդ չհամարեցինք ներկայացնել առանձին աղիւսակով եւ ցուցակների պատճէնը զուգահեռաբար օրինակած, որպէս զի հեշտ լինի համեմատութեամբ եզրակացութիւններ անել նախարարութեանց եւ նոցա զինուորական զօրութեան մասին:

Եթէ ուշադրութեամբ զննելու լինինք այդ ցուցակների մէջ բերուած անունները, մենք ակամայ պիտի յափշտակուինք մի զարմանքով, որ գտնում ենք շատ անուններ մեզ միանգամայն անծանօթ. ո՞րք, ո՞ւր եւ ի՞նչ գործերի մէջ են եղել օրինակի համար Համբուժեան, Աշահմարեան, Տրունի, Մեհնունի, Փառաճունի, Փէրիժունին եւ այլն նախարարները. մի՞թէ մեր պատմութեան մէջ դոցա եւ դոցա նման այլ հարիւրաւոր ցեղերը, որ յիշեալ ցուցակներում կան, անհետք կորել են եւ ոչ մի յիշատակ չեն թողած: Պէտք է յուսալ գոնէ՝ որ հնախոյզ պատմագէտներն

Գւ. Ա. 3

ու լեզուագէտները կարողանան գտնել դոցա յիշատակների հետքերը եւ այդ մեռած անհասկանալի անունները բացատրելով՝ մի լոյս ձգել կարողանան մեր պատմութեան հնագոյն դարերի վերայ։

Աչքի առաջ ունենալով այն մեծ թիւը, որ ներկայացնում է մեզ Ժ.Բ. դարի յիշատակարանը, պէտք է զարմանալ նմանապէս նախարարների չափազանց շատութեան վերայ։ Բայց մենք գործնից եւ տեսնում ենք, որ նախարարների նշանակութիւնը Հայաստանում այն չէ ինչոր շատերն են ենթադրում։ Ինճիճեանն, Էմինը, նոցա հետ եւ այլք կարծում են որ նախարար խօսքը նախ եւ արար խօսքերից է կազմուած*, որից եւ դուրս են բերում այն միտքը՝ թէ նախարար նշանակում է առաջին գործակատար կամ տէրութեան առաջին պաշտօնակալ, եւ Ինճիճեանը նախարար խօսքի դէմը դնում է լատիներէն "բռէֆէգտուս„ (praefectus) խօսքը, որ քերականօրէն գրեթէ նոյն կերպ է կազմուած, բայց նոցա պատմական նշանակութիւնները միանգամայն նման չեն իրարու։ Եթէ նախարար խօսքի պատմութիւնը գիտենայինք, այնժամանակ գուցէ կարելի լինէր համեմատել մի այլ խօսքի հետ. բայց քանիոր մեզ անյայտ է նորա իսկական ծագումը եւ գործադրութեան սկիզբը, մենք չենք կարող վերը բերուած ստուգաբանութեամբ բաւականանալ։

Թէ ի՞նչ էր նախարարի իրաւունքն եւ պարտաւորութիւնը՝ մենք վերը ներկայացուցինք, ուստի

* Աչքի առաջ ունենալով միքանի Հայոց խօսքերը, որոնք արտաքուստ նման են նախարար խօսքին. (օրոր. նախիր, նախկին, նախնի, նախատ, նախանձ, նախապետ, նահապետ, նահանգ, նահանջ, նահատակ եւ այլն) մեզ այնպէս է երեւում, որ շատ սխալ է կարծել թէ նախարար խօսքն երկու պարզ նշանական խօսքերից է բաղկացած՝ նախ եւ արար։ Ինչպէսոր նախիր, նախատ, նախանձ եւ այլ նման խօսքերն իրենց առանձին ինքնուրոյն արմատն ունին, այնպէս էլ շատ հաւանական է, որ նախարար խօսքի արմատը ոչ մի կախում չունի նախ կամ արար խօսքերից, այլ ծածկուած է՝ առ այժմ մեր տեսութեանն անմատչելի մի վանկի տակ։ Երեւիթէ նախարար (նախապետ կամ նահապետ) եւ նահանգ խօսքերի արմատը մի է։





առաջին գործակատար անուանել նորան՝ չէ կարելի. եւ մի՞թէ չորսհարիւր մարդ մի տէրութեան մէջ կարօղ էին առաջին գործակատարներ լինել՝ մէկը միւսի կողքին եւ ամէնքն էլ իւր սահմանի մէջ միանգամայն ինքնիշխան, եւ եթէ կարող էին՝ մի՞թէ կառավարութեան ձեւը՝ միանգամայն նահապետակա՞ն էր մնում եւ չկա՞ր տարբերութիւն տէրութեան պաշտօնատարի եւ նախարարի իրաւունքների մէջ։ Արդարեւ. մեզ յայտնի է, որ շատ նախարարներ միեւնոյն ժամանակ արքունի ծառայութեան մէջ էին լինում* եւ տէրութեան պաշտօններ էին կատարում, ինչպէս օրինակ՝ թագադիր, սպարապետ, հազարապետ եւ այլ պաշտօնատարներ կային նոցա մէջ. բայց մենք չգիտենք թէ միմիայն նախարարների՞ն էին մատչելի այդպիսի պետական պաշտօնները՝ թէ ամենայն մարդու. չկա՞ր արդեօք այնպիսի նախարարութիւն, որն իւր ծագումով պարտական լինէր միմիայն իւր պաշտօնին. չկա՞ր այնպիսի մարդ, որ մի արքունի պաշտօն ստանալու պատճառով ստանար եւ նախարարութիւն, որն եւ որդւոց որդի ժառանգութիւն մնար այդ ցեղին նոյն պաշտօնի հետ միասին։

Գլ. Ա. 3

Նախարարների թուի շատութիւնն աչքի առաջ ունենալով՝ պէտք է կարծել որ կային արդարեւ շատ ցեղեր՝ միմիայն արքունի պաշտօնի համար նախարարական պատուին տիրացած, եթէ մանաւանդ յիշեալ երեք ցուցակների մէջ կան անուններ, որոնք (ինչպէս կարելի է այդ պարզ տեսնել՝) ունին մի որոշեալ նշանակութիւն, այնպէս՝ ինչպէսոր Խորենացին բացատրում է Արծրունի, Հաւնունի, Սպանդունի եւ այլ խօսքերի նշանակութիւնը՝ վերագրելով այդ ցեղերի նախարարներին՝ Արծիւ կրելու, եւ հաւերի ու զէնարանների վերակացութեան պաշտօն։ Բայց խօսքի արտաքին տեսքից եւս պէտք է չխաբուիլ. կարելի է արտաքուստ նա մի նշանակութիւն ունեցող բառ է երեւում մեր աչքին, բայց նորա պատմական նշանա-

* Տես Խոր. գիրք Բ. գլ. Գ. ԺԴ. ԺԹ., գիրք Գ. գլ. Զ. Թ. եւ այլն։

Գլ. Ա. 3 կութիւնը միանգամայն այլ է, ինչպէս են օրինակ՝ Ասպետ, Շահապ եւ այլ սոցա նման անունները։

Սակայն նախարարների այդքան շատութիւնը յառաջացած պէտք է լինի եւ կառավարութեան ձեւից։ Ըստ որում՝ ամենայն նախարարութիւն ունէր իւր մեծը, որ կոչւում էր նահապետ կամ տանուտէր* կամ Տէր. տանուտէր լինում էր սովորաբար նա, որը նոյն նախարարական ցեղի մէջ ամենից մեծն էր տարով. այնպէսոր մնացած նախարարազունները, այսինքն՝ տանուտիրոջ որդիքը կամ եղբարքը՝ գտնւում էին նորա լիակատար իշխանութեան տակ։ Այսպէս՝ իւրաքանչիւր նախարարութեան մէջ կար Աւագ նախարար՝ տանուտէրը, եւ Կրտսեր նախարար՝ սեպուհները։ Թէ ինչպէս էր բաժանւում ժառանգութիւնը նոցա մէջ՝ այդ մեզ դժուար է որոշել, չունենալով աչքի առաջ արժանահաւատ վկայութիւններ. միայն թէ՝ ինչպէս երեւում է՝ տանուտէրն իշխան եւ դատաւոր էր բոլոր նախարարութեան մէջ առհասարակ, իսկ միւս նախարարազունք այսինքն սեպուհներն իրենց բաժին երկրով եւ իրաւունքներով, որ նոքա կարող էին ունենալ այդ բաժնի մէջ, գտնւում էին տանուտի-

* ինչպէս որ աշխարհ խօսքը նախ՝ գաւառ է նշանակում եւ ապա բոլոր աշխարհս, այնպէս էլ տուն խօսքը հին Հայոց կիրառութեամբ նախ՝ բնակարան է նշանակում եւ ապա ցեղ կամ ազգատոհմ. եթէ ասում են "Տուն Արծրունեաց", "Տուն Մամիկոնէից", այդ նշանակում է Արծրունեաց կամ Մամիկոնեան ցեղը, ազգատոհմը։ Այս պատճառով երեւի եւ իւրաքանչիւր ցեղի կամ նախարարութեան աւագը, որ միւսների տէրը կամ իշխանն էր, կոչւում էր տանուտէր այսինքն ազգապետ կամ ցեղի գլխաւորը։

Մեր պատմիչների մէջ՝ Ղազար փարպեցին ամենից յաճախ է գործածում տանուտէր խօսքը. Խորենացին ընդհակառակը սիրում է գործածել նահապետ կամ նախնի եւ կամ աւելի շատ նախարար. նա Հայկին, Պարոյրին նախարար է անուանում. երբեմն եւ նախնի (տես գիրք Ա. եր. 67 եւ գիրք Բ. գլ. Գ.). "Ոչ ասեն նահապետի ազգին՝ Մուրացան տէր, այլ Մարացւոցն տէր (Բ. Ը.) յայնմ ժամանակի առեալ Տիգրանայ զԲարզափրան նահապետ Ռշտունեաց նախարարութեանն, սպարապետ կացուցանէ Հայոց եւ Պարսից զօրաց." (Բ. ԺԹ.) այսպէս է եւ ուրիշ շատ տեղերում. տես գիրք Բ. գլ. ԾԹ. գիրք Բ. գլ. Ձ. Թ. եւ այլն։

րոջ իշխանութեան տակ։* Բայց ժամանակով՝ երբ այդ ցեղերը բազմամարդութեամբ ընդարձակուան եւ քաղաքական կարգերը Թագաւորների շնորհիւ փոփոխութիւնների տակ ընկան, կարելի է, նոյն իսկ սեպուհներն ինքնուրոյն տանուտիրական իրաւունքների տիրանալով՝ իրենց պատկանած գաւառի կամ իրենց կրած ծառայութեան անունով ինքնիշխան նախարարութիւնների դասը մտան, որով հետզհետէ նոցա թիւը շատանալով շատանալով հասած է մինչեւ չորս հարիւրի կամ գուցէ եւ աւելի։

Գլ. Ա. 3

Սեպուհ խօսքի ստուգաբանութեան համար Էմինն** ասում է, որ այդ խօսքը միեւնոյն է ինչ որ սուպահ եւ նշանակում է ձիաւոր։ Այս խօսքի արմատն է Պարսից սուպա, սապ խօսքը, որ նշանակում է ձի։ "Ձիաւոր" գաղափարի հետ սկզբում կապուած էր եւ "ազնուութիւն" գաղափարը, ասում է նա, այսպատճառով սեպուհ նշանակում է "ազնիւ" "ազնուական ծագումի տէր մարդ։" Փոխանակ այսպէս քաշքշելով բացատրելու սեպուհ խօսքը, մենք կարծում ենք՝ բաւական կը լինէր պատմութեան ցուցումներին հետամուտ լինել. սեպուհ խօսքը շատ քիչ է պատահում եւ այն էլ միմիայն բարդութեանց մէջ. այնպէսոր սեպուհի նշանակութիւնից եզրակացնել թէ սեպուհը ձիաւոր կը նշանակէ, չի համապատասխանում սեպուհների իսկութեանը։ Սեպուհներն ամէն տեղ նախարարների եւ ազատների հետ միասին են յիշուում մեր մատենագրների մէջ. "Ժողովեցան, ասում է Փարպեցին,*** ըստ հրամանի տանուտէրացն Հայոց

* Մենք կարծում ենք, որ "Սեպհական" խօսքը Սեպուհ խօսքից է յառաջացել եւ կարող է իւր նշանակութեամբ մատնացոյց լինել սեպուհների պատմական անցեալի վերայ. մենք հաստատում ենք մեր կարծիքը նաեւ Խորենացու խօսքերի վերայ. նա ասում է. "Բայց զտէրութիւնն Աշոցաց եւ զսեպհականութիւնն Տաշրաց կարգէ Վաղարշակ ի զաւակացն Գուշարայ Հայկազնոյ։" "Եւ զերկուս զայսոսիկ յազգաց նախարարացն բառնայ (մեծն Ներսէս). մի՝ զմերձաւորաց խնամութիւն, զոր վասն ագահելոյ սեպհական ազատութեանն առնէին եւ այլն. տես գիրք Բ. Ը. եւ գիրք Գ. գլ. Ի։

** Տես Ասողիկի ռուս. Թարգմանութիւն, եր. 250։

*** Տես գլ. Գ. եւ այլն։

Գլ. Ա. 3 յԱրտաշատ քաղաք սուրբ եպիսկոպոսք ըստ գաւառաց աշխարհին։„ "Նախագոյն հարցեալ (Ցազկերտ) ցՀայոց տանուտէրսն եւ ցսեպուհսն։„ "Այլ դուք, ասում է մի այլ տեղում, որ այժմ յերեցունց աշխարհաց եկեալ էք տանուտէրք եւ սեպուհք, բաւական էք... տալ պատասխանի. եւ լուեալ զայս ամենայն խօսս նախարարացն ի Վարդանայ եւ այլն։ Ածեալ զայս ամենայն զմտաւ նախարարացն ամենեցուն եւ սեպհացն, միաբան եկին եւ այլն։ Զտանուտէրսն եւ զսեպուհսն ի հանդերձս թագաւորականս զարդարէր* (Ցազկերտ) եւ այլն, եւ այլն։ Սոցա նման շատ օրինակներ կարելի է բերել մեր պատմիչների խօսքերից, որ նկատուի թէ սեպուհը նոյն իսկ նախարարարն է, միայն ցեղի իրաւունքների մէջ տարբերուում է տանուտիրոջից։ Սեպուհ խօսքը մեր կարծիքով նոյնանշան է նախարարազուն կամ նախարարորդի խօսքին. որովհետեւ տանուտիրոջ կամ որդին կամ եղբայրն է որ կոչուում էր սեպուհ. իսկ թէ լեզուագիտական բացատրութեամբ կարո՞ղ է այդ խօսքը ծիաւոր նշանակել, մենք կասկածում ենք. աւելի հեշտ կարող է սեպուհ խօսքը նախարարորդի կամ իշխանորդի նշանակել, քանթէ ծիաւոր։**

Այսպէս թէ այնպէս՝ մեր պատմութեան անմըշակութիւնից շատ պէսպէս ենթադրութիւններ անել կարելի է. սակայն ինչոր թէ վերեւը արած նկատողութիւններից եւ թէ՝ մեր մատենագրների խօսքերից եզրակացնել կարող ենք եւ հաստատ գիտենք, այդ հետեւեալն է. ա) որ նախարար խօսքը մի ընդհանուր խօսք է՝ մտքով վերին դասի ազնուական նշանակող,

* Տես գլ. Զ. եւ այլն։

** Սեպուհ խօսքը, եթէ երկու հետեւեալ վանկերից է բաղկացած Սե+պուհ, շատ հաւանական է, որ երկրորդ վանկը պուհ միեւնոյն է՝ ինչոր Զանդիկ լեզուով պուհրա = որդի. այսպէս է կարծում Ֆրիդ. Միւլլեր Վիեննայի համալսարանի պրոֆեսօրը (տես Lautlehre)։ Թէեւ խօսքի մի վանկը որդի է նշանակում, միւս վանկը երեւի նորա յատկութիւնն է նշանակում. այդ պատճառով հաւանական է, որ սեպուհ նշանակում է իշխանորդի, նախարարորդի եւ այլն։

բայց բառացի դեռ մեզ համար չմեկնուած.* բ) Տա- Գ.Լ. Ա. 3
նուտէրը նախարարութեան գլխաւորն էր թէ՛ ներքին կառավարութեան եւ թէ՛ զինուորութեան մէջ, եւ գ) որ միւս նախարարազունք կոչւում էին սեպուհ, եւ խորհուրդների մէջ մասնակցում էին ամէն տեղ եւ ունէին իրենց նախարարական յատուկ իրաւունքները, բայց ոչ վարչական զօրութիւն։

Յոյս ունինք, որ մի ուրիշ անգամ առիթ կ'ունենանք նախարարական դասի վերայ աւելի ընդարձակօրէն խօսելու, որպէս զի կարողանանք աւելի ճիշտ գաղափար տալ թէ մեր հին ազնուականների եւ թէ մեր ներքին կառավարութեան վերայ։

---

4. Հաւատարմութիւն իւրեանց առեալ զթուղթսն Սահակայ եւ այլն։

Հինգերորդ դարում Հայոց թշնամի էին ոչ միայն Պարսիկները, այլ եւ Յոյները։ Երբ տառերը գտան եւ Պարսից բաժնի Հայաստանում տարածեցին Հայոց դպրութիւնը, Սահակ Պարթեւն հարկաւոր համարեց Յունաց բաժնի Հայերի մէջն եւս տարածել այդ դպրութիւնը. բայց Յոյները չուզելով, որ Հայերի մէջ մայրենի լեզուի ուսումն տարածուի, որպէսզի նոքա յունականութիւնը սիրելով խառնուին կորչէին Յոյների մէջ, արգելեցին հայերէն սովորել։ Այս պատճառով Սահակ Պարթեւը նամակներ գրեց Յունաց կայսերն եւ ուրիշ մեծամեծներին եւ Ս. Մեսրոպին ու Վարդան Մամիկոնեանին ղրկեց Բիւզանդիոյ Դուռը, որ հրաման առնեն։ Նոքա գնացին ոչ միայն թոյլտուութիւն ստացան այլեւ մեծ պատուով ու շքեղութեամբ եւս մեծարուան Յունաց թագաւորից։ Այս հանգամանքի վերայ է, որ հիմնեցին նախարարներն իրենց սուտ բողոքը Սահակի եւ Արտաշրի վերայ Պարսիկների առաջ։ Խորենացին շատ կարճ եւ ամփոփ խօսքերով է յայտնում այդ բողոքի միտքը՝

* Նախարար եւ Նահապետ խօսքերի արմատն ինչպէս երեւում է մի է. ոմանք նախապետ էլ են գրում։





Գ. Լ. Ա. 4 տանելով “զՅունովքն գլեալ խորհրդոմն„ որ մենք թարգմանեցինք “սրտով Յոյների կողմն է բռնել։„ Եւ այդ երեք խօսքի մէջ ճշմարիտ որ ամբողջ բողոքը կարելի է ամփոփել, ըստորում Սահակ Պարթեւը իբրեւ քաղաքագէտ մարդ՝ իւր երկրի քաղաքական վիճակը շատ պարզ եւ խորը հասկացող՝ միանգամայն հակառակ էր նախարարների խորհուրդներին. եւ նոցա համոզելու համար մատնացոյց էր լինում Պարսիկների հեթանոս լինելու վերայ, որից երեւում էր, թէ նա ուզում է “գէլս էրօյն խորհել. . ճօյօսերքն Ցօ—նօյ Թէօդօսիօ.„ եւ թէ քրիստոնեայ տէրութեանն աւելի է հաւատում։ Բանն այս է, որ Պարսիկները Արշակունիներին ջնջելու նպատակն աչքի առաջ ունենալով՝ ուզում էին դորանով ընկճել միանգամայն եւ Բիւզանդիոյ կայսերութեան ոյժը. նոցա համար այնքան վտանգաւոր չէր Հայաստանի անկախ թագաւորութիւնը, որքան վտանգաւոր էր այն, որ այդ թագաւորութիւնը կրօնով, աստուածպաշտութեամբ մի ուրիշ աւելի ընդարձակ եւ հզօր տէրութեան հետ մէկ է։

---

5. Ապա կոչէր Վռամ զՍուրէն Պահլաւ, զիւր հազարապետն*, որ ազգակից եւ տոհմակից էր Սահակայ։

Յայտնի է, որ Արտաշիր Սասանեանը կոտորել տուեց Արտաւանի ցեղը. բայց միւս արշակունի ցեղերին, որոնք Պարսկաստանում կային, կարողացաւ նուաճել. այդ ցեղերն էին Բահլ կամ Պահլ քաղաքի անունով կոչուած Պահլաւները։ Երեք Պահլաւ կար. Սուրէնեան, Կարինեան եւ Ասպահապետի։ Սոցանից

* Հազարապետ։ Արեւելքի թագաւորութիւնների մէջ, ինչպէս այժմս է, հին ժամանակներն էլ վերին իշխանութիւնը բոլոր գործերի վերայ պատկանում էր մի առանձին պաշտօնատարի, որը պատասխանատու էր միմիայն թագաւորի առաջ։ Այդ պաշտօնատարն եւ կոչւում էր Հազարապետ։ Այժմս Պարսկաստանում այդ պաշտօնատարը կոչւում է Սադրազամ, իսկ Ցաճկաստանում մեծ վէզիր կամ մեծ եպարքոս։ Թէ ինչու է այդպիսի մի պաշտօնատարի անունն հազարապետ, այդ թողնում ենք լեզուագէտներին։

շատերին պահեցին Պարսկաստանում զանազան բարձր պաշտօններ եւ պատիւներ տալով։ Այդ Պահլաւներից էր եւ Սուրէն՝ Վռամի հազարապետը։

Իսկ թէ ինչպէս կարող էր նա ազգակից եւ տոհմակից լինել Սահակ Պարթեւին՝ բացատրենք կարճառօտ։ Սուրէնեան Պահլաւներից մէկը Անակ Պարթեւն էր, որ ազգականութեան պատրուակով եկաւ Հայաստան եւ սպանեց Հայոց Խոսրով մեծ Արշակունի թագաւորին. Անակի սերունդը սրակոտոր եղաւ Հայերի ձեռքով, բայց ազատուաւ միայն մի մանուկ, որն յետոյ Հայաստանի լուսաւորութեան պատճառ եւ հիմնադիր եղաւ, այն է Գրիգոր Լուսաւորիչ։ Սորա ցեղը իբրեւ Արշակունեաց պահլաւական ճիւղի սերունդ՝ յետագայ ժամանակներում էլ Պահլաւունի կոչուաւ. այս ցեղից էր եւ Սահակ Պարթեւը, որն ինչպէս Հայոց Արշակունիներին նոյնպէս եւ Պարսից Արշակունիներին (Պահլաւներին) արենակից եւ ազգական էր գալիս իւր ծագումով։

---

6. Եւ զթոռն քոյ Վարդան կարգեսցէ ի վերայ Հայոց զուգահաւասար թագաւորին եւ համապատիւ։

Այս Վարդանը Համազասպ Մամիկոնեանի որդին էր եւ Սահակ Պարթեւի թոռը աղջկայ կողմից։ Սահակ Պարթեւը (Ներսէս մեծի որդին, որ Լուսաւորչի թոռան թոռն էր) իւր ցեղի մէջ վերջին շառաւիղն էր արական սեռից եւ ունէր մի դուստր Սահականոյշ անունով՝ ամուսնացած Համազ. Մամիկոնեանի հետ. այդ Սահականոյշի եւ Համազասպի որդին է Վարդան Մամիկոնեանը, որ ժառանգեց Հայոց սպարապետութիւնն եւ երեւելի եղաւ Հայոց պատերազմի մէջ Պարսից մոգութեան դէմ։ Ասողիկը մի տեղում յիշում է թէ նախարարների արձակուելուց յետոյ Հայոց սպարապետութիւնն ընդունեց Մանդնոս՝ Վարդանի որդին։ Սակայն ժամանակակից պատմիչները ոչինչ չեն յիշում Վարդանի սերունդի մասին. յայտնի է միայն, որ Վարդանն երկու դուստր

Գլ. Ա. 6 ունէր մէկը Շուշանիկ մականուանեալ Վարդենի, որ ամուսնացաւ Վրաց Աշուշայ բդեշխի որդու Վազգէնի հետ. միւսի անունը մեզ անյայտ է, բայց գիտենք, որ ամուսնացած էր Արշաւիր Կամսարականի հետ եւ ունէր երեք որդի Ներսէհ, Հրահատ եւ Վահան*:

---

7 **7. Մարզպան:**

Մարզպան կոչւում էր Ե. դարում այն իշխանը, որին յանձնուած էր Պարսից թագաւորի կողմից Հայաստանի բարձրագոյն կառավարութիւնը. նորա պարտաւորութիւններն էին հարկերը հաւաքելու վերայ հսկել եւ վերահսկութիւն գործել նախարարների վերայ, որպէսզի անհաւատարմութիւն չծագի նոցա մէջ դէպի արքայից արքայն. միով բանիւ մարզպանի ձեռին էր երկրի բոլոր կառավարութեան ղեկը:

Սկիզբում մարզպան նշանակում էին Պարսիկ իշխաններին. բայց նոքա՝ միանգամայն անծանօթ լինելով Հայոց երկրի հանգամանքներին՝ դժուարութիւն էին կրում եւ չէին կարող երկար դիմանալ այդ կոչման մէջ. այնպէսոր իվերջոյ սկսեցին Հայերին եւս նշանակել մարզպանութեան գործի, իհարկէ՝ նախապէս հաւաստի լինելով նոցա հաւատարմութեան եւ մտերմութեան մասին: Առաջին հայ մարզպանը, որ նշանակուաւ, Սիւնեաց Վասակ իշխանն էր:

Մարզպան կամ Մարզպետ խօսքը նոյնն է ինչոր կուսակալ կամ սահմանապետ. մարզ պարսկերէն նշանակում է սահման, իսկ պան եւ պետ այն մասնիկներն են մեր լեզուի մէջ, որոնք պահող կամ գլխաւոր են նշանակում: Ոմանք կարծում են, որ մարզպանի նշանակութիւն այն էր, ինչոր Եւրոպայում ունէին մարկգրաֆները: Հայոց առաջին մարզպանների յաջորդաբար կառավարութեան ժամանակի մասին տես ժամանակագրական աղիւսակ Յաւելուածքիս վերջը:

---

* Տես գլ. Ը. 4. եւ Թ. 2:

8. *Արշակունեաց թագաւորութեան վերանալը Հայաստանի միջից 432ին Ք. յ.։* Գւ. Ա. 8

Արշակունեաց թագաւորութիւնը Հայաստանում հաստատուաւ Բ. դարում Ք. յա.։ Այս մասին մեր պատմիչները գրեթէ ամէնքն էլ առհասարակ համաձայն չեն իրար մէջ. մանաւանդ վերջանալու ժամանակի մասին մեծ տարաձայնութիւն կայ։

Արշակունի թագաւորների նախահայրը Հայաստանում Վաղարշակ մեծն է, իսկ ցեղը կոչուաւ Արշակունի նորա նախահօր Արշակ քաջի անունով, որն հիմնեց Պարթեւաց թագաւորութիւնը արեւելքում։

Խորենացին ասում է, որ "Վաղարշակի թագաւորութեան 13րդ տարին թագաւոր եղաւ (Պարթեւաց երկրում) Արշակ մեծի որդին Արշական։,, Արշակ մեծը թագաւորեց 194 թուից մինչեւ 141 թիւը Ք. յա.. ուրեմն Վաղարշակը թագաւորեց իւր եղբօր մահից 13 տարի յառաջ՝ այն է նորա թագաւորութեան 40. տարին, որ է 154 թուին Ք. յա.։

Ասողիկն ասում է, որ Հայաստանի Արշակունեաց սկիզբը Պտղոմէոս Եւգերտի թագաւորութեան (145-117) 12 տարումն էր, որ է 133 թուին Ք. յա.։

Սամուէլ Անեցին ասում է, որ Արշակ մեծը թագաւոր դրեց Հայաստանում իւր եղբօրը Վաղարշակին Պտղոմէոս Եւգերտի (145-117) թագաւորութեան 27րդ տարում, 167րդ Ողիմպիադի 4րդ տարին, որ է 118 թուին Ք. Ա։

Ուրեմն Արշակունեաց թագաւորութեան առաջին տարու մասին մեր պատմիչներն երեք տարբեր թուեր են ներկայացնում.

Խորենացին 154 թիւ Ք. յա.*։
Ասողիկ 133 թիւ Ք. յա.։
Սամուէլ Անեցի 118 թիւ Ք. յա.։

Թէ երբ վերջացաւ Հայոց Արշակունիների թա-

* Էմինը 144 թուին է դնում Խորենացու խօսքերից առած, բայց թէ ի՞նչպէս՝ այդ մեզ անհասկանալի է։ Մեզ այնպէս երեւցաւ, որ դա մի թուաբանական սխալ է. ըստորում եթէ 194ից հանելու լինինք 40, մնալու է 154՝ այլ ոչ 144. տես ռուս. թարգմ. Ասողիկի եր. 314։

Գւ· Ա· 8

գաւորութիւնը, այդ մասին Խորենացին չէ թողել մեզ ոչ մի որոշ տեղեկութիւն։

Ասողիկն ասում է, որ այդ անցքը պատահեցաւ Թէոդոս փոքրի թագաւորութեան (408—450) 24րդ տարին, որ է 432 թուին Ք. յտ։

Սամուէլ Անեցին ասում է, որ այդ պատահեցաւ Թէոդոսի թագաւորութեան (408—450) 14րդ տարին, որ է 421 թուին Ք. յտ։

Թովմայ Արծրունին ասում է, որ այդ պատահեցաւ Յազկերտի թագաւորութեան 2րդ տարին, որ է 439 թուին Ք. յտ։

Ուրեմն մենք ունինք հետեւեալ թուերն Հայաստանի Արշակունեաց թագաւորութեան սկզբի, վերջի եւ շարունակութեան մասին։

| | Երբ է սկսուել | Երբ է վերջացել | որքա՞ն է տեւել |
|---|---|---|---|
| Խորենացին | 154 թ. Ք. յռ. | ,, | ,, |
| Սեբէոս | ,, ,, | 396 թ. Ք. յտ. | 405 տարի. |
| Մովսէս կաղանկատ. | ,, ,, | ,, ,, | 620 տարի. |
| Ասողիկը | 133 թ. Ք. յռ. | 432 թ. Ք. յտ. | 565 տարի. |
| Թովմայ Արծրունին | ,, ,, | 439 թ. Ք. յտ. | 415 տարի. |
| Սամուէլ Անեցին | 118 թ. Ք. յռ. | 421 թ. Ք. յտ. | ,, ,, |
| Կիրակոս Գանձակեցին | ,, ,, | ,, ,, | 568 տարի. |
| Մխիթ. Այրիվանեցին | ,, ,, | 452 թ. Ք. յտ. | 568 տարի.* |

Արշակունեաց թագաւորութեան դադարումը չէր կարող 396 թուին լինել, (Սեբէոս), ըստորում այդ թուին համարուում է Հայաստանի երկու բաժին լինելը Յունաց եւ Պարսից մէջ, որից յետոյ դեռ էլի շարունակուաւ Հայոց թագաւորութիւնը մօտ 40 տարի։ Այն ժամանակը Պարսից թագաւորում էր Յազկերտ Ա. եւ Յունաց Արկադ։ Իսկ թագաւորութեան դադարումը պատահեցաւ Վռամ Բ.ի եւ Թէոդոս Փոքրի օրերը (վերջինս թագաւորեց 408 թուից մինչեւ 450 թիւը)։ Ուրեմն Արշակունեաց թագաւորու-

* Այս թուերից միքանիսը քաղել ենք Պ. Էմինի նկատողութիւնների միջից՝ Ասողիկի Ռուսերէն թարգմանութեան յաւելուածներում։





թիւնը 396 թուականներից յետոյ պէտք է պատահէր։ Սակայն այդ անցքը չէր կարող պատահել եւ 452 թուին (Մխիթար), ըստորում 450 թուին արդէն Վարդանանց պատերազմի գործերն էին կատարւում. եւ ինչպէս երեւում է Ղազարի եւ Եղիշէի վկայութիւններից գրեթէ նոյն տարին, երբ Վարդանանց պատերազմն էր կատարւում Հայաստանում, նոյն թուին եւ մեռաւ Թէոդոս Փոքր Յունաց կայսրը, այսինքն 450 թուին։

Գւ. Ա. 8

15րդ ամ Յազկերտի է 3րդ ամ Մարկիանոսի, ասում է Ասողիկ։ Մարկիանոսը թագաւորեց Թէոդոս Փոքրից յետոյ, ուրեմն նորա թագաւորութեան երրորդ տարին է 453 թուականը. սորանից երեւում է, որ Յազկերտ Բ.ի թագաւորութեան առաջին տարին 438 թուականն է. ուրեմն ընդհանրապէս այս թուականից ուշ չէր կարող վերջանալ Արշակունեաց թագաւորութիւնը, որովհետեւ Արշակունեաց անկման ժամանակակից եւ ականատես պատմիչները՝ Խորենացին եւ Ղազար միաբերան վկայում են, որ այդ անցքը պատահեցաւ Վռամ Բ.ի օրով, այլ ոչ թէ Յազկերտ Բ.ի այսինքն 438 թուից յառաջ։

Սորանից հետեւում է, որ մենք վերը բերած թուերի մէջ միայն երկու թիւ կարող ենք ընտրել, 421 (Սամուէլ) եւ 432 (Ասողիկ). եւ Արշակունեաց դադարման տարին այդ երկու թուի մէջն էլ պէտք է փնտրել։ Աչքի առաջ ունենալով որ 421 թիւը Վռամշապուհի մահուան տարին էր, որից յետոյ համարեա թէ թագաւորութիւն չկար, այնպէսոր մինչեւ անգամ Արտաշէս վերջինի թագաւորելուց յառաջ երկրի հարկերն հինգ տարի առանց հաւաքելու մնացած էին եւ երկիրը շփոթմունքների մէջն էր, ինչպէս յիշում է Թովմայ Արծրունին. ուստի եւ պէտք է կարծել, որ Սամուէլ Անեցին այդ եւ անուանում էր անկումն Արշակունեաց՝ այսինքն Վռամշապուհի մահը։ Իսկ Վռամշապուհից յետոյ հինգ տարին անիշխան անցաւ*.

* Այս ժամանակի մասին Խորենացու վկայութիւնը տարբեր է. նա ասում է որ Վռամշապուհից յետոյ՝ Խոս-

Գլ. Ա. 8

6 տարի էլ Արտաշէսը թագաւորեց, որով ընդ ամէնը 11 տարի անցաւ մինչեւ թագաւորութեան անկման տարին, որ է մինչեւ 432 թիւը։ Սորանից հետեւում է, որ աւելի հաւանական է ընդունել Աստղիկի բերած թիւը, որով Արշակունեաց անկումը հաշուելու ենք 432 թուին կատարուած։ Մինչեւ ցայժմ ընդունուած էր 428 թիւն հաշուել իբրեւ ժամանակ Արշակունեաց անկման, բայց մեզ հասկանալի չէ, թէ ի՞նչ թիւ է այդ եւ ո՞ր պատմիչի վկայութեան կամ ակնարկութեան վերայ հիմնուած։

Իսկ ինչոր կվերաբերի Արշակունեաց առաջին տարեթիւը որոշելուն, այդ մենք անձեռնհաս ենք առ այժմ, քանորում Արշակունեաց յառաջանալու դարը դեռ պարզ չէ մշակուած մեր պատմութեան մէջ։ Մենք մեր պատմիչների խօսքով երեք թիւ ունինք — 154, 133 եւ 118 թուականները Ք. յա։ Նոցա մէջը այնպիսի նշանաւոր տարբերութիւն կայ, որ դժուար է հաստատուել մէկի վերայ, չունենալով անհերքելի ապացոյց գոնէ ուրիշ պատմութիւններից։ Ընդունուած է 149 կամ 150 թուականն հաշուել իբրեւ առաջին ամ Հայաստանի Արշակունեաց. թէ ի՞նչ հիման վերայ, նոյնպէս չգիտենք։

Եթէ 432ը (անկման տարեթիւը) բարդելու լինինք յիշեալ չորս թուերից ամէն մէկի հետ, մենք կըտեսանինք, որ Արշակունեաց ցեղն Հայաստանում թագաւորել է ոչ աւել քան 586 տարի եւ ոչ պակաս քան 550 տարի։

րով Գ. երկրորդ անգամ կառավարեց Հայաստանը մի տարի. ապա Սասանեան Շապուհը չորս տարի թագաւորելուց յետոյ թողեց գահն եւ գնաց Պարսկաստան. այնուհետեւ Հայոց նախարարները Պարսից զօրքերին հալածում են եւ իրենք ինքնագլուխ կառավարում. այս պատճառով Հայոց երկիրը մնում է անիշխանութեան մէջ երեք տարի։ Ուրեմն Վռամշապուհից յետոյ մինչեւ Արտաշէս Գ.ի թագաւորելը՝ խորենացու հաշուով 1 + 4 + 3 = 8 տարի անցաւ, ապա վեց տարի էլ Արտաշէս Գ. ը թագաւորեց, ընդ ամէնը 14 տարի անցաւ մինչեւ թագաւորութեան կործանումը։ Տարբերութիւնը խորենացու եւ Թովմայ Արծրունու հաշիւներում երեք տարի է միայն՝ այսինքն խոր. 14, Թովմայ 11 տարի։ Տես խոր. Գիրք Գ. գլ. ԾԵ, ԾԶ։

## ԳԼՈՒԽ Բ.

1. *ա) Ազգն Սասանայ Պարսկի* = Պարսիկ Սասանի ցեղը։

*բ) Օրէնք մոգուց* = մոգական կրօն։

Ա. Արշակի հաստատած Պարթեւական թագաւորութիւնը* չկարողացաւ այնքան յարատեւել ինչքան Հայոց երկրում հաստատած Արշակունեաց թագաւորութիւնը։ Ինչպէս Արեւելեան ազգերի պատմութեան մէջ շատ սովոր պատահում է, այս անգամ էլ տիրապետող ազգի դէմ միթերուած ամբաւականութեան առաջնորդ հանդիսացաւ վերին դասը, ինչպէս էր Սելեւկացւոց թագաւորութեան կործանման ժամանակ։ Պարթեւաց թագաւորութեան հարաւային արեւմտեան գաւառներից մէկը՝ (Պարսք) կեդրոն էր եղել ամբաւական տարրերի համար. եւ այդ զարմանալի չէ, որովհետեւ մի ժամանակ այդ իսկ գաւառից յառաջ եկաւ Մեդացւոց թագաւորութիւնը կործանող Կիւրոսը. այստեղ ծաղկեցաւ Կիւրոսի հաստատած հին-Պարսից Աքէմէնիսեան թագաւորութիւնն իւր զրադաշտական կրօնով. այստեղ եւ կեդրոնացած էին նոցա քաղաքակրթութիւնն եւ ազգային յիշատակները։ Հինգ դար ու կէս ժամանակից յետոյ այդ իսկ Պարսից գաւառում եւ ծնաւ ահա Նոր-Պարսից Սասանեան թագաւորութիւնն այն ժամանակ, երբ այդ գաւառի մոգպետ Բաբէգի օգնութեամբ, որն ինչպէս երեւում է, ամբաւականների առաջնորդն էր, նորա թոռն** Արտաշիր, որ Պարսից գաւառի կուսակալն էր,

* Տես գլ. Ա. 2։

** Բաբէգի դուստրը ամուսնացած էր Սասանի հետ եւ այդ ամուսնութիւնից ծնած էր Արտաշիրն՝ առաջին հիմնադիրը Պարսից թագաւորութեան։ Այս պատճառով Արտաշիրի անունը տալիս՝ ոմանք ասում են Արտաշիր Բաբէգեան կամ Արտաշիր Սասանեան, իսկ իւր հայրենիքի անունով կոչւում է նա Արտաշիր Սասանեան Ստահրացի։

Գւ. Բ. 1

ապստամբելով Արտաւան Դ. Թագաւորի դէմ՝ սպանեց նորան եւ ինքն եղաւ Թագաւոր Պարսից. Արտաշիրն իւր նոր Թագաւորութեան աթոռն հաստատեց իւր հայրենիքում այսինքն Պարսից գաւառում՝ Էսթակար կամ Ստահր անունով քաղաքում եւ վերականգնեց զրադաշտական ուսման կարգերն ու պաշտամունքը: Այն ժամանակ, երբ քաղաքակրթեալ աշխարհի զանազան խորշերում մի ընդհանուր մրցումն էր իշխում հեթանոսութեան եւ քրիստոնէութեան մէջ եւ շատ տեղեր յաջողութիւնը քրիստոնէութեան կողմն էր. մենք տեսնում ենք, որ Պարսից երկրում վերահաստատուում է մի հին մոռացութեան տակ թաղուած ուսումն: Իհարկէ այս ուսման կամ կրօնի յատկութիւններն եւս վերանորոգիչ տարրեր պէտք է լինէին, որպէսզի կարողանային հին կռապաշտութեան մաշուած գաղափարների փոխարէն մի նոր Թագաւորութեան համար նեցուկ լինել: Զրադաշտական ուսումն արդարեւ ունէր վերանորոգիչ ազդեցութիւն գէթ Պարսից ազգի համար. եւ դորա պատճառը, ոչ այնքան նորա սկզբունքների վսեմութեան մէջն է, որքան նորա պատմական հնութեան եւ նախնականութեան մէջ: Մի նորահաստատ տէրութեան քաղաքական նպատակների համար զրադաշտական ուսման այս յատկութիւնը բաւական էր: Այս երեւում է եւ նորանից, որ Սասանեանների օրով այդ ուսումըն այնպիսի անարատութեամբ չէր պաշտուում, այլ նորա անուան տակ ծածկուած էին զանազան խառն ուսմունքների հետքերն եւս. ինչովոր կարելի էր գրգռել Պարսիկ մարդու քաղաքական փառասիրութիւնը, այն եւ ամփոփուում էր Արտաշրի վերահաստատած կրօնի մէջ. այս պատճառով շատ իրաւացի կըլինի կարծել, որ այդ կրօնն աւելի քաղաքական կրօն էր՝ Պարսից ազգային աւանդութիւնների հետ կապուած, քանթէ մի ուսումն աստուածութեան կամ գերագոյն էակի վերայ: Եթէ այդ առանձնութիւնը չունենար Արտաշրի վերականգնած կրօնը, այն ժամանակ Սասանեաններին դժուար կըլինէր մխա-

Գլ. Բ. 1

բանել այնպիսի խառն ազգութիւններ իրենց իշխանութեան տակ եւ չորս դարից աւել ժամանակ թագաւորելու հնար ունենալ Արեւմտեան Ասիայում։ Այսպէս թէ այնպէս՝ Արտաշրի վերականգնած կրօնի օգնութեամբ Սասանեան ցեղը 425 տարի կարողացաւ դիմանալ Պարսից գահի վերայ եւ մի հզօր պետութիւն կազմել մինչեւ Մահմէտականութեան ժամանակը։ Այդ չորս դար ժամանակում Սասանեանների քաղաքականութիւնը շատ վնասակար էր ուրիշ ազգերի եւ տէրութիւնների համար, որովհետեւ նոքա ոչ միայն աշխարհներ էին ուզում առնել, այլեւ ամենայն տեղ մոգական ուսումը թագաւորեցնել։ Նոքա այս քաղաքականութեանն հետեւելով արդարեւ ունեցան այնպիսի ծաղկեալ ժամանակներ, երբ բոլոր քաղաքական աշխարհը խոնարհում էր նոցա առաջ, բայց երբէք չյաջողեցաւ նոցա բուն նպատակը։ Այսպէս՝ Շապուհ Բ.* (309—380) յաղթող գտնուաւ Բիւզանդացւոց. եւ Հայոց թագաւորութեան վերայ էլ բռնացաւ լիովին Մեհրուժան Արծրունի ուրացողի օգնութեամբ. Յազկերտ Բ. (438—457) ահուդողի մէջ դրեց Բիւզանդացւոց եւ Քուշաններին. եւ չկար մէկը որ ընդդիմանալ կարանար նորա հրամաններին. Խոսրով Ապրուէզի (590—628) զօրքերը նուաճեցին անգամ Բիւզանդեան կայսերութեան միքանի երկրները, տիրեցին Երուսաղէմին, գերեցին սուրբ Խաչը, հասան նաեւ նոյն իսկ Բիւզանդիային եւ անշուշտ կը կործանէին այդ հին կայսերութիւնը, եթէ չլինէր քաջայաղթ Հերակլ կայսրը, որ հալածելով Պարսիկներին՝ հասաւ մինչեւ նոցա մայրաքաղաքն Տիզբոն։ Ի վերջոյ երբ բոլոր արեւմտեան Ասիան ստիպուած էր խոնարհիլ նոր ոգեւորութեամբ ամենայն ինչ քանդող Արաբացւոց դրօշակի առաջ, այն ժամանակ Պարսից Սասանեան թագաւորութիւնն էլ կորուց իւր քաղաքական անկախութիւնը։ Վերջին Սասանեան թագաւորն էր Յազկերտ Գ, որին սպանեցին Մերվ քաղաքում 651 թուին. այն օրից ցիրուցան եղան

* Տես ներքեւը, համար 2։

ԴԼ. Բ. 1 կրակապաշտութեան հաւատարիմ մոգերն եւ ժողովուրդը Ասիայի զանազան խորշերը, իսկ Պարսկաստանն եղաւ մասն Արաբացւոց պետութեան եւ կեդրոն մահմետականութեան. Հին կրակապաշտների հետքերը մնացել են այսօր Եզդ, Կարման քաղաքներում, որոնք հին Պարսից գաւառուածն են. կայ եւ մի փոքրիկ գաղթականութիւն մոգական Պարսերի, որ գտնւում է արդի Բոմբայ քաղաքում Հնդկաստանի մէջ. մի խումբ Գուէբր ասուած կիսավայրենի ժողովուրդ էլ գտնւում է Կովկասի սահմաններում, որոնք, ինչպէս յայտնի է, երկրպագութեան են տալիս Բագուի կրակներին. այս հատուկտոր յիշատակներն են, որ կան ու մնացել են մինչեւ ցայսօր Սասանեան պետութեան բազմաթիւ կրակապաշտ ժողովրդից:

Սասանեան պետութիւնն յարատեւեց 226 — 651 թիւը Ք. յ.:*

Բ. Ինչպէսոր Հայոց նախնի մատենագրների գործածութիւնից երեւում է, “օրէնք,, խօսքի սկզբնական նշանակութիւնն է “սովորութիւն, աղէթ,,. այդ սկզբնական նշանակութիւնից եւ յառաջ է եկել նորա ապագայ նշանակութիւնն իբրեւ “կրօն, կանոն,, եւ այլն: Խօսք չկայ, որ մանուկ դեռահաս ազգերի համար կրօնն է տալիս զանազան բարոյական կանոններ կենցաղավարութեան մէջ, այնպէս՝ ինչպէս նաեւ ժողովրդի տնական կամ ներքին կենցաղավարութեան սովորութիւններն եւ կարգերը լինում են սովորաբար օրէնք հասարակական գործերի մէջ: Ազգերի պետական օրէնսդրութիւնքն էլ, ինչպէս գիտենք, միմիայն ժողովրդական դարաւոր սրբազան սովորութիւնների վերայ են հիմնուած: Այս պատճառով եւ զարմանալի չէ, որ Հայոց լեզուով հին ժամանակն “օրէնք,, խօս-

* Սասանեանների ժամանակագրութեանը վերաբերեալ տեղեկութիւնքը կամ թուերը քաղել ենք Պետերբուրգի համալսարանի Պրոֆեսսոր պ. Ք. Պատկանեանի “Սասանեանների պատմութիւն,, անունով ռուսերէն գրքից: Այս գրքի ցուցումներով ենք կազմել եւ Սասանեաններին վերաբերեալ մասը մեր ժամանակագրական աղիւսակի մէջ:





քը նշանակում էր կրօն. "անօրէն,, խօսքը նշանակում էր անհաւատ. "օրինաց գիրք,, նշանակում էր սովորութիւնների կամ հասարակական կանոնների գիրք, եւ այլն։



Հինգերորդ դարում Պարսից տէրութեան մէջ թագաւորող կրօնն էր մոգական կրօնը, կամ ինչպէս Հայոց պատմիչներն են ասում, զրադաշտական կամ մոգուց օրէնքը։ Զրադաշտական կրօնի անցեալը խորին հնութեան մէջ թաղուած է եւ մինչեւ այն վիճակին հասնելը, ինչոր Ե. դարումն էր, շատ նշանաւոր փոփոխութիւններ են մտել նորա վարդապետութեան եւ աւանդութիւնների մէջ պատմական-քաղաքական իրողութիւնների երեսից։

Բնութեան արտաքին երեւոյթներին՝ կրակին, ջրին, արեւին եւ աստղերին երկրպագութիւն տուող հին Արիական ազգերը — Բակտրիացիք, Մեդացիք (Մարք) եւ Պարսիկներն — հետզհետէ հասան այն մըտաւոր զարգացման աստիճանին, որ կարողացան մի աներեւոյթ ստեղծօղ զօրութիւն ներկայացնել եւ ունենալ աստուածութեան վերայ մի վերացական գաղափար։* "Մի չափազանց զօրեղ կամքի տէր մարդ էր պէտք, որ կարողանար հուր, ջուր, աստղեր եւ այլ տարերք աստուածացնող մարդուն ասել թէ տարերքն աստուած չէ, թէ մարդս տարերքի մէջ պիտի չփնտրէ աստծուն, այլ թէ մարդս կարող է եւ պէտք է հոգւով դիմէ նորան անմիջապէս իբրեւ մի հոգեղէն էակի, որն ամէնից բարձր է եւ որն ինքն է տարերքի արարիչը։ Եւ այդ խօսքն ասողը Բակտրիացի Զրադաշտ մոգն եղաւ. որով նա հիմնաւոր յեղափոխութիւն ձգեց մի քանի Արիական** ցեղերի մէջ։ Զրադաշտի

* Հետեւեալ տեղեկութիւնքը Զրադաշտի եւ նորա ուսման մասին բերում ենք Պետերբուրգի Համալսարանի Պրոֆէսսոր պ. Կ. Ա. Կօսսօվիչի խօսքերով (տես "Զորս յօդուածք Զէնդ Ավէստայի,, անունով ռուսերէն գրքոյկի Յառաջաբանը)։

** Ուշադրութեան արժանի է "Արիք, Արեաց,, խօսքը, որ մի առանձին եռանդով գործ են ածում Պարսից թագաւորներն եւ մեծամեծներն ինչպէս երեւում է Հայ պատմիչների գրուածներից։ Հինգերորդ դարում այդպիսի ազ-

Գւ. Բ. 1

վարդապետութեամբ աշխարհս երկու արարիչ ունի. ամենայն բարութեանց արարիչն Ահուրա Մազդան (Որմիզդն) է. եւ ամենայն չարութեանց արարիչն Անըյօմայնուն (Արհմն) է: "Սկզբում, ասում է Զրադաշտ, երկու ոգի կային՝ երկուորեակ. այդ երկուսն յառաջ բերին կամ ծնան սուրբն եւ պիղծը՝ թէ մտքի թէ խօսքի եւ թէ գործի մէջ: Ընտրեցէ՛ք այդ երկուսից մէկին. եղէ՛ք սուրբ, այլ ոչ պիղծ:" Զրադաշտի ասածով՝ սրբութեան աղբիւրը Որմիզդն է. "Ահուրամազդան է սուրբ եւ արդար. եւ իւր ճշմարտութեան համար, իւր սուրբ գործերի համար փառաբանելի է նա. չէք կարող միեւնոյն ժամանակ երկուսին ծառայել՝ չարին եւ բարուն:" Այս ամէնից երեւում է, որ Զրադաշտն երկու աստուածութիւն էր քարոզում, որոնց ներկայացնօղը Որմիզդն եւ Արհմն էին: Որմիզդ աստուածն այնուամենայնիւ առանց օգնականների չէ. նա ունի իրեն աջակից էակներ. սակայն Որմիզդն է

գութիւն կամ ցեղ չկար. այդ անունը կրում էին Պարսիկներն իբրեւ մի առանձին պատուանուն, որն ունի եւ իւր պատմական պատճառները: "Արիք" խօսքն յառաջ է եկել Արյա խօսքից, որ Սանսկրիտ լեզուով նշանակում է բարետոհմիկ, ազնուական: Շատ հին ժամանակներում թերեւս եղել է մի այդպիսի անուն կրող ազգ Հնդկաստանի սահմաններում, բայց յետոյ այդ կոչումը մնացել է իբրեւ մի հնութեան յիշատակ եւ պատուանուն այն ազգերի, որոնք բաժանուելով Հնդիկներից եւ գաղթելով դէպի արեւմուտք այսինքն դէպի այժմու Խորասան եւ այլն, պահպանել են այդ յիշատակը. այսպէս՝ Զրադաշտի ժամանակներն Արյա կամ Արէ խօսքն երկու նշանակութեամբ էլ գործ է ածուել. մէկ իբրեւ "պատուաւոր", մէկ էլ իբրեւ ազգի անուն. Որմզդի ստեղծած երկրների մէջ առաջինը կոչուում է "Այրյանէմ վայէժօ", այսինքն Արեաց սերմն: Ոմանք կարծում են, որ այդ խօսքից է եւ Արմէն, Արմէնիա կոչումը, կամ այդ խօսքից են յառաջացել "Իրան կամ Երան", որ Պարսկաստանի տեղական անունն է, "Իրօն", որ Օսէրի Հայրենիքի տեղական անունն է, Աղուանք եւ այլն: Այդքանը հաստատ է, որ Սասանեան թագաւորների ժամանակ Արիք կոչումը նշանակում էր ազնուականութեան պատուանուն եւ միեւնոյն ժամանակ բուն երկրի ժողովուրդ, մինչդեռ նոքա, որոնք օտար էին, կոչուում էին Անարի: Իսկ թագաւորներն Աքէմէնիսեաններից սկսած ամէնքը, մինչեւ անգամ Պարթեւներն էլ, այդ պատուանունը գործ էին դնում կոչուելով Արեաց եւ Անարեաց արքայ: Տես Մաքս Միւլլէր:





բոլոր մարդոց միակ արարիչը եւ դէպի Նա պիտի ուղղէն մարդիկ իրենց խնդրուածքները։ Մայն թէ այդ այնպէս շուտ չի լինում. կուգայ ժամանակ, երբ աշխարհք կուգայ Սաօշյեանտը (այսինքն փրկիչը) եւ կըհաստատէ Զրադաշտի վարդապետութիւնը բոլոր մարդկային ազգի մէջ։ Եւ այն ժամանակ մարդկային ազգն էլ զգալու չէ չար աստուած Արհմնի զօրութիւնը եւ չար բանը միանգամայն կ'անհետանայ աշխարհիս երեսից„։

Գլ. Բ. 1

Զրադաշտն յայտնի է նաեւ իբրեւ օրէնսդիր. եւ այդ զարմանալի չէ. որովհետեւ հին ժամանակների քաղաքակրթութեան ու լուսաւորութեան առաջնորդներն արեւելքում մոգերն էին. այդ պատճառով Խորենացին Զրադաշտի անունը տալիս անուանում է նորան "արքայ Բակտրիացւոց„ որ ցոյց է տալիս թէ մոգերը մինչեւ անգամ գերագոյն իշխանութեան էին հասնում իրենց ազդեցութեամբ. Զրադաշտից յառաջ եւ յետոյ մոգական դասը նոյն նշանակութիւնն ունէր, ինչոր Ղեւտացիք Իսրայէլի ժողովրդի մէջ։

Զրադաշտի օրէնքներն առհասարակ շատ մարդասիրական են. մահու պատուհաս կարելի էր տալ մարդուն միմիայն հաւատուրացութեան համար. միւս յանցանքների համար նշանակած պատիժն է տուգանք եւ այն ոչ թէ փողով, որովհետեւ այն ժամանակները փող չկար, այլ անասուններով եւ երբեմն նաեւ ոսկւով։ Քրմերին՝ պաշտամունք կատարելու համար՝ եւ բժիշկներին՝ հիւանդ տեսնելու համար՝ սահմանուած էր վարձատրութիւն հրաւիրողի կարողութեան չափով. միայնթէ բժիշկն իրաւունք չունէր Արի մարդուն բժըշկելու, մինչեւոր գէթ երեք Անարի բժշկած չլինէր։ Զրադաշտն՝ ի թիւս այլոց պատուիրում էր մարդոյն երկրագործութեամբ պարապելու. "միմիայն երկրագործութիւնն է պատրաստում մարդուս համար մի հաստատուն եւ անկապտելի սեփականութիւն. երկրագործ չեղած՝ դու միշտ աչք պիտի ձգես ուրիշի ունեցածին։„ Պատուիրում է կոտորել վնասակար կենդանիներին, որովհետեւ նոքա Արհմնի արարած-

Գլ. Բ. 1 ներն են, իսկ անվնասներին եւ օգտակարներին չսպա-նել. ով որ այդպիսիներին սպանել է ուզում, միմիայն կերակուրի համար իրաւունք ունի։

Այն մարդիկ, որոնք առանց պատճառի հարուած կամ նեղութիւն են տալիս ընտանի անասուններին եւ նոցա հետ խստութեամբ են վարւում, նոյն տեսակ պատիժ պիտի կրէին իրենք, որովհետեւ իրենց մերձաւորին են վիրաւորում։ Խիթիւս այլոց նշանակում է պատիժ այն մարդոց համար, որոնք շանը նեղացնում են. ''Շունն, ասում է Զրադաշտ, Որմզդի պարգեւած պահապանն եւ բարեկամն է. նա քեզանից ոչ հագուստ է ուզում եւ ոչ անկողին. նա օգնում է քեզ որսի ժամանակ. նա պահապան է քու տանդ եւ ստացուածքիդ. նա ուրախացնում է քեզ քու ազատ ժամանակիդ։ Վա՜յ նորան, ասում է, ով որ շանը նեղացնէ կամ նորա համար խնայէ առողջ կերակուր։ Այդպիսի մարդու հոգին մահից յետոյ պիտի թափառի յաւիտենական առանձնութեան մէջ. այն աշխարհքում մինչեւանգամ շունն էլ պիտի դուրս չգայ նորան դիմաւորելու։,, Պատիժների մէջ աւելի խիստ է երեւում Զրադաշտի թոյլ տուած գանահարութիւնը. գանել կարելի էր մտրակով, եւ իրաւունք էր տուած մինչեւ հազար հարուած նշանակելու։ Բազմակնութեան մասին, որ յետոյ Պարսիկների մէջ շատ ընդունուած էր, Զրադաշտը ոչինչ յիշած չէ իւր խրատներում։

Զրադաշտն այս օրէնքներից զատ մոգական դասի մէջն էլ զանազան նորոգութիւններ գործեց. նա այդ ամբողջ դասն երեք կարգի բաժանեց. — աշակերտ, վարպետ (մոպետ) եւ կատարելագործուած վարպետ (դեստուր մոպետ)։ Այս բաժանումով այնպիսի կանոնաւորութիւն ընկաւ նոցա մէջ, որ այնուհետեւ բոլոր քաղաքական աշխարհի ղեկն էլ նոցա ձեռքն անցաւ արեւելքում. սորա գլխաւոր պատճառներից մէկն էլ այն է, որ միայն մոգերն ունէին իրաւունք իրենց հրապարակներում ուսում տալու։ Զրադաշտն եւ նորա հետեւողներր գիտութեան մէջ էլ մեծ ա-





նուն հանեցին այն պատճառով, որ բացի երկրային վարդապետութիւնը նոքա կարող էին երկնային լուսաւորներին նայելով մարդուս վիճակն եւ ապագան գուշակել։ Զրադաշտի եւ նորա հետեւողների համբաւն այնքան մեծ էր, որ մինչեւ անգամ արեւմտեան երեւելի փիլիսոփաները Պիւթագորաս, Պղատոն եւ այլ միքանիսը համարում են Զրադաշտին հետեւող։ Կիկերոնը մոգական դասի վերայ խօսելիս անուանում է նոցա „Genus sapientum et doctorum“ այսինքն "շառաւիղ իմաստասիրաց եւ գիտնոց։„*

Զրադաշտի նորոգութիւնների շնորհիւ մի բարձր քաղաքական նշանակութեան տէր դարձօղ մոգական դասն հետզհետէ ընդունեց իւր մէջ ուրիշ նոր տարրեր եւս, նայելով քաղաքական գործունէութեան շրջանին։ Ինչպէս յայտնի է, Աքեմենիեան թագաւորների օրով Զրադաշտական ուսումն եւ մոգերը առաջնակարգ նշանակութիւն ունէին բոլոր տէրութեան մէջ. երբ այդ թագաւորները տիրեցին եւ Բաբելացւոց աշխարհին, տեղափոխեցին իրենց տէրութեան կեդրոնը Բաբելոն, ուր՝ ինչպէս յայտնի է, ծաղկում էին Քաղդէացիք. վերջիններս էլ մոգերի նման մի առանձին դաս էին կազմում Բաբելոնի թագաւորութեան մէջ. նոքա յայտնի էին իբրեւ քաջ աստեղագէտներ. այդ պատճառով Բաբելոնի քաղաքակրթութեան առաջնորդներն էլ նոքա էին. մոգական դասը Քաղդէացւոց գիտութիւններին եւ միքանի սովորութիւններին ընտելանալով մի նոր ասպարէզ մտաւ, կամ եթէ կարելի է ասել, մի նոր զգեստ եւս հագաւ իւր յառաջուայ հագուստի վերայ։

Զրադաշտական մոգն այժմ սկսեց եւ քաղդէական մոգութիւն անել. թռչունների թռիչին, աստղերի լոյսին, մատաղացու կենդանիներին եւ այլ այսպիսի իրական բաներին նայելով՝ նոքա գուշակում էին աշխարհիս պատահարները, մարդուս բախտն ու ձախորդութիւնը. նոցա ձեռքն էր այսպիսով ոչ միայն ամենայն մի դիւրահաւան ռամկի այլ եւ նոյն իսկ տէ-

* Տես Lübkers Reallexicon.

րութեան աւագանու եւ թագաւորների միրան եւ հոգին։ Մոգերի այսպիսի ուղղութիւն գտնելուց՝ խօսք չկայ, որ նոցա կրօնն էլ բովանդակելու էր իւր մէջ նիւթեղէն սրբութիւններ. դեռ նոյն իսկ զրադաշտական մոգերն արեգակն աստուածացնում էին ընդունելով նորան իբրեւ պատկեր Միհրի.* եւ տեսանելի կերպով պաշտօն էին մատուցանում նիւթեղէն կրակին աշխարհիս վերայ. ըստորում կրակն է, որ նման է արեգակին իւր լուսով, ջերմութեամբ եւ փայլքով, եւ կրակն է այն տարրը, որ մաքրում սրբում է ամենայն պղծութիւն։ Կրակ պաշտելու սովորութիւնը թէպէտեւ հին ժամանակներն էլ մոգութեան նշաններից մէկն էր, բայց աւելի ծաղկեցաւ Սասանեանների թագաւորութեան օրով։

Երբ Պարսից Աքէմենիսեան թագաւորութիւնը միւս՝ Արեւմտեան Ասիայի մեծագոյն մասի հետ միասին խոնարհեցաւ Աղէքսանդր Մակեդոնացու աշխարհակալութեան առաջ, այնուհետեւ մոգերի դրութիւնն էլ մի հպատակ եւ միեւնոյն ժամանակ երկրորդական դասի դրութիւն եղաւ. որովհետեւ Մակեդոնացւոց կամ .քաղաքակրթեալ Յոյների ազդեցութիւնը շուտով տարածուաւ ամենայն տեղ, ուր ոտք էր դնում Աղէքսանդրը. երկար ժամանակ Արեւելքի արեւմտեան երկրներում յունական կարգերն ու պաշտամունքը նախապատիւ էին. իսկ երբ Յոյների տեղ հանդէս եկան կիսավայրենի Պարթեւները, որոնք ինչպէս յայտնի է, Գ. դարում Ք. յ. Սելեւկացւոց թագաւորութեան աւերակների վերայ մի նոր պետութիւն հաստատեցին, նոքա էլ աւոր-

* Միհրը կամ Միթրան Մեդացւոց եւ Պարսից մէջ՝ համարուում էր մի այնպիսի աստուածութիւն, որը միջնորդ էր մարդուս եւ Որմզդի մէջ. այդ պատճառով նա համարուում էր եւ եթերքի աստուած, որի մէջ ամէնից փայլունն եւ երեւելին արեգակն է. Միհրի պաշտօնն էր պաշտպան լինել հաւատարմութեան, պատժել ուխտազանցներին, նաեւ ուրիշների հետ միասին դատաւոր լինել մարդուս գործերին, Չինուանտ ասուած կամուրջի վերայ, որ գտնուում էր երկնքի եւ երկրի մէջ՝ չների պահպանութեան ներքոյ։





Գլ. Բ. 1

ժանօք ընդունում էին արեւմտեան ազգերի պաշտամունքը. մանաւանդ նոցա համար կրօնի տարբերութիւնն այնքան մեծ խոչընդոտն չէր համարւում քաղաքական գործերի մէջ. այլ թէ ինչո՞ւ մոգութեան ուսումը յառաջադիմութիւն չգտաւ եւ չունեցաւ նշանակութիւն Պարթեւների տէրութեան մէջ, այդ բացատրւում է նորանով նախ, որ Պարթեւները չէին հետեւում Պարսից ազգի աւանդութիւններին. նոքա ուրիշ ցեղի եւ աւանդութիւնների ծնունդ էին. եւ ունէին այնու ամենայնիւ իրենց արեգակի եւ լուսնի պատկերն ու նոցա հետ կապուած ինքնուրոյն աւանդութիւններ. եւ երկրորդ, որ նոքա, ինչպէս ասացինք, ախորժանօք ընդունում էին արեւմտեան կարգերը. Պարթեւական մեհեանում տեղ կար՝ ինչպէս տեղական կուռքերի՝ այնպէս էլ Յունաց եւ Հռովմայեցւոց կուռքերի համար. քաղաքական հաշիւներո՞վ էր արդեօք այս երեւոյթը տեղիք գտնում, թէ արեւմտեան ճաշակի շքեղութեան սէրն էր դրդում, այդ այլ հարց է. նշանաւորն այն է, որ այդ օտարասիրութիւնը պատճառ էր, որ պարսկական մոգերը թէպէտեւ կային, բայց չունէին նշանակութիւն տէրութեան մէջ. թէ մոգերն արդարեւ կային, այդ երեւում է եւ նորանից, որ Սասանեան թագաւորութիւնը վերականգնեցաւ մոգերի ազդեցութեամբ. եւ նորա յարատեւութիւնը պաշտպանօղն էլ մոգերն եղան: Բայց թէ ի՞նչ էին մոգերը Սասանեանների օրով. կարելի՞ է արդեօք նոցա անունը տալիս միեւնոյնն երեւակայել ինչոր Զրադաշտից յետոյ էին կամ ինչոր Աքէմենիսեանների ժամանակ: Անկասկած, ինչպէս ամենայն մի կրօնական միաբանութիւն, մոգերն էլ սովոր էին մեծ մասով աւանդապահ լինել, սակայն չէին հրաժարւում եւ նորոգութիւններից: Ե. դարում մենք տեսնում ենք մոգերին նոյն վարդապետութեան իրաւունքներով, ինչպէս յառաջ. միեւնոյն ժամանակ յիշւում է, որ մոգպետները դատաւոր էին նշանակւում, որ նոքա դենպետի պաշտօն էին կատարում եւ այդ պաշտօնի մէջ նոքա առաջին ձայնն ունէին. նոցա խորհրդով եւ

Գլ. Բ. 1

մասնակցութեամբ էր թագաւորը մի գործ սկսում. Թէեւ չէ յիշուում նոցա աստեղախօսութեան վերայ, որովհետեւ ուրիշ քաղդէներ կային, սակայն յիշուում է նոցա քաղաքական գործերի վերայ՝ թէ ինչպէս յորդորում էին աստուածների անունով իրենց թագաւորին, որ ջնջէ քրիստոնէից աղանդը կամ ինչպէս դիտէին գրգռել թագաւորի կասկածը քրիստոնեայ տէրութիւնների դէմ, նոյն իսկ աստուածների անունով, երբ չէին կարող ուրիշ պատճառ գտնել թագաւորի յուզմունքը դադարեցնելու: Զրադաշտը քարոզում էր աներեւոյթ Որմզդին պաշտելու եւ Արհմնին խոտելու. Սասանեան մոգերն աստուածացնում էին արեգակն եւ մանաւանդ նիւթեղէն հուրը: Զրադաշտի պատուէրների մէջ մեհեաններ շինել չկար, այլ բացօթեայ տեղերում էին աղօթում Միհրի պայծառ պատկերի առաջ եւ սովոր էին զոհել նոյնպէս բացօթեայ գտնուող կրակարաններում. Սասանեան մոգերը շինում էին անհամար մեհեաններ եւ կրակատուններ եւ նոցա մէջ՝ պաշտելու համար այնքան կրակ էին վառում, որ փայտակիրների ձեռքերը կաշի էին լինում կացին խըփելուց, մէջքերը քոս էր կապում փայտ կրելուց, աչքերը ջուր էր կապում ծխերի առատութիւնից*: Այսպէս Սասանեանների պաշտամունքներն առաւել արտաքինի վերայ էին հաստատուած եւ նոքա չէին հաւատում ոչ մի հոգեւոր ապագայի, որը Զրադաշտի ուսման գլխաւոր յատկութիւնն էր. դորանից եւ յիմարութիւն էին համարում ամենայն մի բարոյական սկզբունք, անձնազոհութիւն, անմահութեան սէր եւայլն ունենալը. նոքա իրենց կրօնական պարտաւորութիւնները լրացուցած էին համարում, երբ գիտէին կատարել ‘‘զուամունս ծաղրելի շնչմանց,, երբ սպիտակ ցուլեր եւ սպիտակ նոխազներ էին զոհ բերում կրակին, երբ տեսնում էին, որ քրիստոնեայ մարդը հրաժարուելով իւր սրբազան սովորութիւններից նոցա հետ մոխիր է պաշտում եւ նոցա անարգ պղծութիւն-

* Տես Եղիշէ:

ները կատարում. նոցա համար պղծութիւն էր, եթէ մի անասուն առանց յաղելու մորթած լինէր, եթէ ձեռքերն առանց գոմէզի լուացած լինէին.* եթէ խմորն առանց ձորձի շաղաղած լինէր. մինչդեռ եթէ գտնուում են մարդիկ, որոնք աշխարհից հրաժարուում են. եթէ գտնուում են մարդիկ, որ միայն մի կին են առնում. եթէ մայրը որդու, քոյրն եղբօր, հայրն աղջկայ հետ չի ամուսնանում եւ այլն. այդ ամէնը Սասանեան մոգերի վարդապետութեամբ վատ է. այդպիսի մարդիկ կոյր են եւ համր եւ չար դեւերի ձեռքն ընկած:

Գւ. Բ. 1

Սասանեաններն այս կրօնը, որ Հայոց պատմիչները մոխրապաշտութիւն են անուանում, համարում էին ոչ միայն սուրբ, այլեւ դենի մազդէսն**, որ նշանակում է իմաստալից հաւատ, ինչպէսոր Մահմէտականներն իրենց հաւատն անուանում են իսլամ այսինքն ուղղափառ: Այնու ամենայնիւ այդ իմաստալից հաւատն առանց աղանդների կամ բաժանումի չէր. Եղիշէն մի տեղում ասում է, թէ "այս հինգ կեշտք (քէշ — կրօն) են, որ գրաւեալ ունին զամենայն օրէնս մոգութեանն, բայց է միւս եւս զոր Մոգպետն կոչեն:,, Այդ հինգ կեշտերն են՝ ա) զրադաշտական օրէնք, բ) ամպարտքաշ, գ) բոզբայիտ, դ) պահլաւիկ եւ ե) պարսկադեն: Մի մոգպետ, որ այս վեց կեշտը գիտէր, "համակդեն,, պատուանուն ունէր եւ երեւելի էր բոլոր տէրութեան

* Ցօղէլ — իսկապէս նշանակում է զոհել. այդ սովորութիւնն երեւի միայն արտաքին ձեւ էր, որ մորթելու անասունն յառաջ խոստանային պէտք է աստուածներին:— Զոհէ — Փանգամ խօսքն այսպէս թարգմանեցինք, իսկ թէ ի՞նչ խորհուրդ ունի խմորն առանց ձորձի չշաղղելը, այդ հարց է: — Գոմէզ նշանակում է եզի կամ կովի մէզ:

** Ինչպէս տեսանք, Զրադաշտի քարոզած բարի աստուածութեան անունն էր Որմիզդ. այս անունը Զենդիկ լեզուով ասւում էր Ահուրա Մազդա, այսինքն՝ տէր Մազդա կամ տէր ամենիմաստ: Ահուրամազդա անունը հայերէն դառել է Արամազդ եւ Որմիզդ: Այդ անուան երկրորդ մասը այսինքն Մազդա կոչումն է եւ դենիմազդեզն խօսքի մէջ. դէնի + Մազդ + եզն իսկապէս նշանակում է Զենդիկ լեզուով՝ դաէնա + Մազդա + եասնա այսինքն՝ կրօն + Մազդային + պաշտօղ = Մազդայասնադաէնա, եթէ կարելի է այսպէս ասել:

Գլ. Բ. 1 մէջ: Իսկ թէ ի՞նչ են այդ անունները. արդեօք այն գրքե՞րն են նշանակում դոքա, որոնց մէջ զանազան աղանդների վերայ էր գրուած՝ թէ նոյն իսկ կրօնը, այդ դեռ անորոշ է միանգամայն. եթէ ենթադրենք որ "զրադաշտական օրէնք„ ասածը Զրադաշտի վարդապետութիւնն է, որ Զէնդ Ավեստայի մէջ գտնում ենք, իսկ Պահլաւիկ եւ Պարսկադեն ասածները Զրադաշտից յետոյ Պարսից եւ Պարթեւաց տիրապետութեան ժամանակ մտած փոփոխութիւնների վերայ տեղեկութիւն բովանդակող գրքեր են, այն ժամանակ կըմնան որոշելու ամպարտաքաշ, բողբայիտ եւ մոգպետ խօսքերը, որոնք երեւի քաղդէականութեան եւ Սասանեանների ժամանակին են վերաբերում: Այս հարցը՝ այս 6 անունների վերաբերութեամբ կրկնակի նշանաւոր հարց է թէ լեզուագէտների եւ թէ պատմաբանների համար, պէտք է յուսալ, որ ժամանակին՝ վերջիններիս ջանքով այդ խօսքերը բացատրուին եւ մի նոր լոյս տան Սասանեանների եւ մոգութեան առանց այն էլ բաւականին մութ պատմութեանը: Հինգերորդ դարի մոգութեան մասին տես Եզնիկ Կողբացու "Եղծ քէշին Պարսից:„ Տես նաեւ սորա ռուսերէն թարգմանութիւնը պ. Կ. Եզեանցի, Ս. Պետերբուրգ տպած 1858 թուին եւ գաղղիերէն թարգմանութիւնը պ. Ֆլօրիվալի, Փարիզ տպած 1853 թ.:

---

*2. Սկիզբն արարեալ յամացն Արշակայ մինչեւ ցամն վեցերորդ Արտաշեսի:*

Այս Արշակը ոչ այլ ոք է, եթէ ոչ Հայոց Արշակ Բ. թագաւորը. սորա ժամանակ Պարսից Շապուհ թագաւորն սկսեց իւր հալածանքները Պարսից տէրութեան մէջ բնակող քրիստոնեաների դէմ: Արշակ Բ.-ից յետոյ էր, որ Մեհրուժան ուրացող ասուած Արծրունի նախարարը Պարսից զօրքով մտաւ Հայոց երկիրը եւ բռնութեամբ կապում էր քահանաներին ու եպիսկոպոսներին եւ ուղարկում Պարսկաստան, այրում էր Հայոց սուրբ գրքերը, արգելում էր Յունաց

*լեզուն սովորելու եւ ստիպում էր պարսկերէն սովորել* [Գլ. Բ. 2] *եւ մոգութիւն ընդունել եւ այլն։*

*Թէ Եղիշէի ասած Արշակը այս Արշակ Բ. է, այդ տեսնում ենք եւ Եղիշէի այլ տպագրեալ օրինակներից,* ուր նա ինքը պարզ ասում է. «Ցամացն Արշակայ, որդւոյ Տիրանայ, Թոռնորդւոյն Տրդատայ։» Իսկ Արտաշէսը՝ Վռամշապուհի որդի Արտաշէս Գ. է, որի ժամանակ եւ վերջացաւ Արշակունեաց թագաւորութիւնն Հայաստանում. Եղիշէն (նոյն օրինակի խօսքով) Վռամշապուհի տեղ Սռահրաշապուհ է ասում. թէ այդ երկու անունների տարբերութիւնն ունի՞ արդեօք մի նշանակութիւն, այդ խնդրելի է։*

---

3. *Այրուձի. նշանակում է ձիաւոր զօրք։*

*Հայոց զօրքի մէջ նշանաւոր մասն էր կազմում այրուձին. մեր պատմիչների տուած տեղեկութիւններին նայելով հաւանական է, որ Հայերը բացի այրուձին ուրիշ տեսակ զօրք չունէին։*

*Այրուձի դարձուածքն էլ միմիայն հներն էին գործ ածում եւ դորանով յայտնում էին — զօրք խօսքի միտքը. տյրու—ձ եւ զօր+ համանշան բառեր են հների գործածութեամբ։*

*Այստեղ միանգամից ներկայացնենք ընթերցօղի գիտութեանը բոլոր այն խօսքերի ցուցակը, որոնք սովորական գործածութեան (տեխնիքական) խօսքեր են եղել Ե. դարում, եւ միմիայն կարող են այն նշանակութիւնն ունենալ, որով մենք ստուգաբանում ենք այժմ։ Այդ խօսքերն են՝*

1. *Այրուձի = զօրք։*
2. *Արքունիք = թագաւորական՝ տուն, քաղաք, ատեան։*
3. *Ատեան = մեծամեծների ժողովարան, ուր դատաստան էին տեսնում կամ մի հարց էին քննում։*
4. *Ասրուշան = կրակարան, կրակատուն, տես նաեւ Բ. գլ. 14։*

* *Տես Վենետիկ. 1828։*

Գլ. Բ.
3

5. Բդեաշխ = սահմանապահ իշխան, մարկգրաֆ։
6. Բերդեան = բերդի մէջ ծառայող մարդիկ. տես զօրագլխեան, նախարարեան եւ այլն։
7. Բերդակալ = բերդապահ, բերդի գլխաւոր։
8. Գումարտակ = զօրքի մի մասը, երեւի միքանի գունդ միասին։ Կանոնաւոր զօրքի մասերն են՝ գունդ, վաշտ, գումարտակ։ Մենք անձեռնհաս ենք նոցա միջի յարաբերութիւնը որոշելու։
9. Դուռն = 1) արքունիք, այսինքն թագաւորի ներկայութեան տեղը. 2) սահմանապահ բերդ, զոր-օր. Դուռն Հոնաց եւ այլն։
10. Դենպետ = կրօնի գլխաւոր, կրօնագլուխ։
11. Դահլիճ = մեծամեծների ժողովարան (հանդիսաւոր ժամանակ), ատեանի մի մասը։
12. Զօրագլխեան = զօրագլուխ մարդիկ, զօրագլուխներ։
13. Ժողով = եկեղեցական իշխանութեան ատեանը, եպիսկոպոսարան. "հասեալ ի ժողովս եպիսկոպոսաց,, տես գլ. Է։
14. Կեանք = ստացուածք, հարստութիւն, ժառանգական սեպհականութիւն։ Տես գլ. Ժ, ԻԱ։
15. Կատիշ = լեռնական. ինչպէս երեւի՝ այդպիսի վարձկան քաջեր կային լեռնականներից, որ մըտնում էին զօրքի մէջ ծառայելու։
16. Հրովարտակ = նամակ, գիր, թուղթ։ "Աղէ՛ դու անգամ մի հրովարտակ ի դուռն տուր.,, գլ. Ը։
17. Հրապարակ = ա) ատեան, բ) ուսումնարան։
18. Ճակատ = կռուի դաշտի այն մասը, ուր զօրքը դասաւորուում է թշնամու դէմը դնուելու։ "Սկսանէր այնուհետեւ յօրինել զիւրաքանչիւր կողմն ճակատուն.,, եւ այլն. տես գլ. ԻԷ։
19. Մանկտի = / Մանկունք = } ծառայ, սպասաւոր, փոքրաւոր, մոնթ։ Տես գլ. ԺԸ։
20. Մատանի = կնիք / Վաւերականի մատանի = նոյնը } Տես գլ. ԺԵ. 1։
21. Մարձիկ = վարժուած զինուոր. մարզեա՛լ։ Տես գլ. Բ։





22. Նախարարեան = նախարարները, նախարարական Գլ. Բ. 3 դասը։
23. Շկօթակ առնել = աքսորել։
24. Ողջոյն = ա) բարեւ, բ) բարեկամութիւն։ "Նամակ անողջոյն" վատ, բօթաբեր նամակ։
25. Պատշիր = հաստատագիր, խոստմնագիր, արտօնագիր։ Գլ. ԻԳ։
26. Ռոճիկ = օրական հասոյթ, օրական սնունդ, պաշարեղէն։
27. Փշտիպան = Թիկնապահ, օգնական։ Տես Գ. 6։

Նաեւ ուշադրութեան արժանի են հետեւեալ խօսքերը՝

28. Աշխարհ = ա) մի գաւառ, եւ բ) աշխարհքը։ Տես գլ. Ա. 1։
29. Ազգ = ա) մի ցեղ, տոհմ, եւ բ) ազգ։
30. Տուն = ա) տուն, շինուածք, եւ բ) ազգատոհմ ("տուն Թորգոմայ, տուն Արծրունեաց.", եւայլն)։ Տես գլ. Ա. 3։
31. Օրէնք = ա) սովորութիւն (ադէթ), բ) կանոն, օրէնք եւ գ) կրօն, հաւատ։
32. Ուխտ = ա) խոստում, բ) միաբանութիւն եւ գ) եկեղեցական դաս։

---

4. Աշխարհ Յունաց = Յունաց երկիր։
Գաւառք Հոռոմոց = Հոռմի գաւառ։

Հինգերորդ դարում միայն Յունաստանը չէր, որ կոչւում էր աշխարհ Յունաց, այլ բոլոր երկրները, որոնք Բիւզանդիոյ կայսերութեան մէջ էին Միջերկրական ծովից սկսած մինչեւ Եփրատ գետի ափերը եւ Փոքր Ասիան Հայաստանի միջանի գաւառներով։ Որովհետեւ բոլոր այդ գաւառներն յառաջ Հռովմայեցւոց կայսրութեան մէջ էին, այդ պատճառով նոցա անունը մնացել էր Հոռոմոց գաւառ։ Հոռոմ*

* Հոռոմ անունն երեւի յունարէն ὁ ῥωμαῖος (հօ հռօմայօս) խօսքից է, որ նշանակում է հռովմայեցի կամ հռովմէական։ Արդի Հայերը միջանի տեղ Յոյներին տալում են Ուրում. Արաբացիք եւ այլ արեւելեան մահմէտականները Հոռոմներին տալում են րում, րումի. Հայերն ինչ-

Գւ. Բ. 4

ասում են Հայերն այն Յոյներին, որոնք Հռոմայեցիներից յետոյ տէր եղան նոցա ժառանգութեանն եւ հաստատուան Բիւզանդիայում։

Բիւզանդիոյ կայսրութեան ձեռքն էին Հայոց հետեւեալ գաւառները՝ Փոքր, Բարձր եւ Չորրորդ Հայք, Աղձնիք, Տայք եւ Միջագետքի մի մասը Մրծբին քաղաքով։ Այնպէսօր սահմանագիծը Պարսից եւ Յունաց տէրութիւնների մէջ հինգերորդ դարում անցնում էր, երեւի, այժմեան Արզրում, Դիարբէքիր եւ Մօսուլ քաղաքների մօտով։ Արզրումը Յունաց իշխանութեան մէջն էր։

Այդ սահմանը դրուած էր երկու տէրութիւնների մէջ այն ժամանակ, երբ Ղապուհ եւ Արկադ (395—408) թագաւորները բաժանեցին իրար մէջ Հայոց թագաւորութիւնը՝ դեռ չորրորդ դարի վերջերում, Արշակ եւ Վաղարշակ թագաւորների օրով։

---

5. Տիգրոն քաղաք։

Հին Ասորեստանում Տիգրիս գետի ձախ ափումը կար այս անունով մի քաղաք, որ յառաջ այնքան նշանաւոր չէր. սորա դէմուդէմն էր Սելեւկացւոց թագաւորութեան մայրաքաղաքը՝ Սելեւկիա։ Գ. դարում Ք. յա. երբ Պարթեւները թօթափեցին իրենցից Սելեւկացւոց իշխանութեան լուծը, Տիգրոնում հաստատեցին իրենց թագաւորութեան մայրաքաղաքը, որն երկար ժամանակ վաճառականութեան գլխաւոր կե-

պէտք սովորաբար ր գրով սկսուած միավանկ խօսքերի սկիզբը մի ձայնաւոր գիր են աւելացնում, այնպէս էլ ր—մ խօսքի առաջ աւելացուցել են օ— ձայնաւորը եւ եղել է Ո—ր—մ կամ Ո—ռ—մ. այժմ եւս միքանի տեղ նոքա Ռ—ս ասելու տեղ ո—ռ—ս են ասում։ Թերեւս սոյն կերպ են կազմուել եւ հետեւեալ խօսքերը — Արաքս, Երասխ, րաքս (Վրացերէն՝ րաքշի). երամ, րամ. երանգ, րանգ, ռանգ. ուրախ, րախ. արագ, երագ, րա̂գ. արահետ, րահե̂տ։ Ր գրով սկսուող միավանկ խօսքերի խոտումը նշմարելի է եւ —ոփ խօսքի մէջ, որի նախատիպն —ոմ կամ րոմ բնաւ գործածելի եղած չէ։ Հայոց լեզուն այս պատճառով եւ չունի ր կամ ռ գրով սկսուած խօսքեր, եւ ինչ էլ որ կան, մեծ մասը մուրացածոյ են։

դրոններից մէկն եղաւ Տիգրիսի վերայ. այստեղ էր եւ Գլ. Բ. 5
թագաւորական ձմերոցը։ Գ. դարում Ք. յտ. երբ Սասանեանք հաստատուան Պարթեւների տեղ Պարսից թագաւորութեան գահի վերայ, Տիզբոնը մնաց դարձեալ տէրութեան մայրաքաղաք եւ թագաւորական ձմերոց. իսկ ամառն անցնում էին նոքա մեծ մասով Վրկանում կամ Ապար աշխարհում — այժմու Խորասանի կողմերը։

Տիզբոնն այժմ աւերակ է եւ նորա տեղը կոչւում է էլ-Մադայն. Պարսիկները Տիզբոնին ասում են Տայսըֆոն, իսկ Յոյներն եւ Հռովմայեցիք Կտեսիֆոն (Ktesiphon)։ Տիզբոնի եւ Սելեւկիոյ աւերակների վերայ կանգնեցաւ յետոյ հռչակաւոր Բաղդատ քաղաքը, որ մինչեւ հիմայ էլ Թիւրքիայի նշանաւոր վաճառաշահ քաղաքներից մէկն է Տիգրիս գետի վերայ։

---

6. *ա) Աշխարհ Քուշանաց = Քուշանների երկիրը։*
*բ) Ապար աշխարհ = Ապար գաւառ։*

Քուշանների երկիրն հինգերորդ դարում գըտնուում էր այժմու Խիվայի կողմերը՝ Պարսկաստանի արեւելեան-հիւսիսային սահմաններին կից Օքսոս գետի աջ կողմը։ Հարաւային կողմից նորա սահմանները ձգուում էին դէպի Հինդ գետի ակունքը եւ հասնում էին մինչեւ անգամ Հնդկական Ովկիանոսին՝ բովանդակելով իւր մէջ արդի Աֆգանիստանի, Կաբուլիստանի եւ Բէլուջիստանի մի մի մասը։ Այդ երկիրը մի առանձին անկախ թագաւորութիւն էր։ Թէ Ե. դարումն էլ Քուշանների թագաւորը ցեղով Արշակունի էր, այդ չի երեւում Հայոց պատմիչների խօսքերից, բայց հաւանական է. որովհետեւ դեռ Գ. դարում յիշուում են Արշակունի թագաւորներ Քուշանների մէջ։ Բացի ազգային-քաղաքական թըշնամութիւնը՝ շատ կարելի է, որ Սասանեանները տոհմական թշնամութիւն էլ ունէին դէպի Քուշանները. ուստի եւ հասկանալի է թէ ինչո՞ւ նոքա այնպիսի մեծ եռանդով աշխատում էին ընկճելու նոցա։ Պար-

Գլ. Բ. 6

մից տէրութեան համար. ինչպէս եւ Սասանեան ցեղի համար բաւականին վտանգաւոր դրացի էին դառձել Քուշանները Ե. դարում. եւ սորա պատճառն այն է, որ Քուշանների ցեղակից ազգերից մի մասը գրեթէ ամբողջ Եւրոպայի եւ Ասիայի ընդարձակ անապատներն իւր ձեռքն առած՝ մի ահագին տէրութիւն էր կազմում. այդ ազգն էր Հոնաց ազգը, որի ներկայացուցիչն էր Ե. դարում՝ Ատտիլա անունով հռչակաւոր աշխարհակալը: Հոնաց ազգն հին ժամանակները որ է չորրորդ, հինգերորդ դարերում Ք. յտ. գտնուում էր կատարեալ վայրենի կացութեան մէջ. եւ մինչեւ քաղաքական ասպարէզում իւր կիսավայրենի բարքով յայտնի լինելը՝ նա սովոր էր վարել անտառաբնակ կեանք, մեծ մասով ձիու վերայ, առանց տունուտեղի, առանց հասարակական սովորութիւնների: "Հոներն, ասում է մի ականատես, երկաթէ գործիքներով այրում են իրենց նորածին մանուկների այտերը, որ մազ չբուսնի. մինչեւ անգամ ծերեր կան, որ միանգամայն լերկ երես ունին եւ նոցա կզակները կարծես թէ խուզած լինի. նոցա կարճ հասակն եւ համեմատաբար մեծ գլուխը եւ կորովի անդամները թողնում են մարդուս վերայ մի ահռելի տպաւորութիւն. կարելի էր նոցա երկոտանի գազանի տեղ ընդունել կամ միորեւիցէ անճաշակ շինած փայտէ խըրտուիլակի տեղ. առհասարակ նոքա մարդու կերպարանքով կատարեալ անասնութեան մէջ ապրող արարածներ են. իրենց կերակուրը պատրաստելու համար նոքա ոչ բանջար ու համեմ գիտեն, ոչ կրակ. վայրի բոյսերի արմատքը եւ հում միսը ձիերի թամբի տակ մի փոքր տրորած՝ այս է նոցա կերակուրը. նոքա բոլորովին ծանօթութիւն չունին արօրի հետ. ոչ տուն են շինում եւ ոչ խրճիթ, որովհետեւ ամենայն մի պարսպած տեղ նոցա գերեզման է համարուում. այդ պատճառով նոքա մինչեւ անգամ մի յարկի տակ գտնուելիս՝ կարծում են, որ վտանգի մէջ են. անընդհատ թափառելով լեռների եւ անտառների մէջ՝ նոքա փոփոխում են իրենց կացութեան տեղը կամ ու-





ղեղ ասած՝ նոքա ոչ մի կացութեան տեղ չունին. այդ պատճառով նոյն իսկ մանկութիւնից սկսած՝ նոքա սովոր են ամէն կարօտութեան տոկալու՝ ցրտի, քաղցի, ծարաւի եւ այլն: Նոցա հօտերը թափառում են նոցա հետ միասին եւ իրենց յետեւից քաշում են այն սայլերը, որոնց մէջ նոցա գերդաստանն է. այս սայլերի մէջ են մնում եւ կարում կանայք իրենց մարդոց հագուստը. այս սայլերն են նոցա հարսանեկան առագաստը. այստեղ են աշխարհ գալիս նոցա զաւակներն. եւ այստեղ են կրթում նոցա մինչեւ տղամարդութիւնը: Հարցուցէք այս մարդոց, թէ որտեղից էք գալիս. նոքա ձեզ պատասխան չեն տար, որովհետեւ չգիտեն: Նոցա հագուստը մի կտաւէ շապիկ է եւ մի մորթեայ վերարկու. շապիկը մութ գոյն ունի եւ գրեթէ փտում է նոցա մարմնի վերայ. ունին մի տափակ սաղաւարտ եւ մի այծի մորթ, որ նոցա մազոտ ոտերի փաթոթն է. նոցա ոտնաչորը, որ առանց չափի ու ձեւի է պատրաստուում, այնպէս անյարմար է, որ նոքա ոտով ման գալ չեն կարող. այդ պատճառով նոքա միանգամայն անընդունակ են հետեւակ կռիւների մէջ. ընդհակառակը կարելի է ասել, որ նոքա իրենց փոքրիկ, տգեղ բայց տոկուն եւ կայծակի նման արագ ձիերի վերայ բեւեռածի պէս են նստում: Ձիու վերայ են անցկացնում նոքա իրենց կեանքը, երբեմն հեծած, երբեմն կանանց նման կողքին նըստած. ձիու վերայ են նոքա իրենց խորհուրդները կազմում, առուտուր անում, ուտում խմում. եւ մինչեւ անգամ քնում են ձիու վզի վերայ թեք ընկած: Կռիւների մէջ նոքա յարձակուում են զանազան գըլխաւորների առաջնորդութեամբ առանց կարգի եւ դասաւորութեան. եւ յարձակուում են սարսափելի գոռգոռոց բարձրացնելով. եթէ նոքա հակառակութիւն են գտնում թշնամու կողմից, իրենք սկսում են ցիրուցան լինել, խառնուիլ. եւ յետ փախչելու ժամանակ անխնայ քանդում, կործանում, խորտակում են ամենայն բան ինչոր ճանապարհին պատահի: Նոցա անծանօթ է մի ամրոց պաշարելը կամ ղակիչ

ԳԼ. Բ. 6

Գւ. Բ. 6

առնելը. բայց անօրինակելի յաջողութեամբ նետում են նոքա իրենց սլաքները, որոնց ծայրը սուր ոսկոր է. եւ այդ սլաքներով նոքա նոյնչափ վնաս են տալիս, որքան եւ երկաթեայ սլաքներով։ Հոները փոփոխամիտ են, ուխտազանց, անհաստատ են ինչպէս հողմը, եւ բոպէական կատաղութիւնից յափշտակուօղ։ Նոքա էլ անասունների չափ գիտեն թէ ինչ է պարկեշտութիւն եւ ինչ է անպարկեշտութիւն. նոցա լեզուն անհասկանալի է, խառն եւ այլաբանութիւններով լիքը։ Իսկ ինչոր վերաբերում է կրօնին, նոքա ոչ մի կրօն չունին. նոցա ամենից շատ սիրելի բանն է ոսկին*. .։„

Երկու ցեղ էին բաժանուում Հոները. Ուրալեան լեռներից եւ Ուրալ գետից արեւմուտք բնակօղներն ասուում էին "Սեւ Հոնք„, իսկ այնտեղից արեւելահարաւ՝ "Սպիտակ Հոնք„։ Այն ժամանակ երբ Սեւ Հոները ուսորդութեամբ պարապելով զանազան թանկագին մորթեր էին ծախում Պարսից եւ Հռովմայեցւոց վաճառականներին Վօլգայ գետի կողմերը, Սպիտակ Հոնը կողոպտում էր առեւտրական կարաւանները, որոնք Հնկաստանից գալիս էին դէպի Պարսից սահմանները։ Հայոց պատմիչներն էլ զանազանում են այս Հոների անունները. Եղիշէն մի տեղում ասում է "Ցազկերտ խաղաց գնաց ի վերայ տէրութեան Հոնաց աշխարհին, զոր Քուշանս անուանեն։„** Մի ուրիշ տեղում նա ասում է, որ Վարդան Մամիկոնեանը Ճորայ պահակն առաւ եւ Հոնաց մօտ մարդ ղրկեց դաշն կռելու բարեկամութեան. եւ նոյն իսկ Ճորայ պահակն առհասարակ անուանում է Եղիշէն Պահակ Հոնաց։ Ուրեմն Կասպից ծովի արեւելեան երկրներից սկսած մինչեւ արեւմտեան երկրներն, այսինքն այժմեան Խիվայի կողմերից մինչեւ Դերբէնտի կողմերն անխտիր Հոնաց տէրութիւն էր համարուում։ Բայց զանազանութիւն այնուամենայնիւ կար, որովհետեւ Հոնաց աշխարհի մի մասը կոչուում էր Քուշանք եւ

* Ցես Ամմիանուս Մարցելլինուս, Դ. դարու պատմագիր. (Ամէդէ Թիէրի, "Ատիլա„, երես 16, 17 եւ այլն)։
** Ցես երես 21։





ԳԼ. Բ.
6

այդ՝ այն մասն է, որն ինչպէս տեսանք Խիվայի կողմերն է։ Հոն եւ Քուշան անունների վերայ աւելանում է եւ "Հեփթաղ" անունը, որ Փարպեցին է գործ ածում, որի հետ կապ ունի նաեւ Եղիշէի յիշած "երկիր Իտաղական,"* կոչումը։

Ի՞նչ են այս տարբեր անունները։ Մեզ այնպէս է երեւում, որ Հոն անունով մեր պատմիչներն աչքի առաջ ունին արեւմտեան կամ Սեւ Հոներին. իսկ Հեփթաղ անունն յատուկ է միայն արեւելեան կամ Սպիտակ Հոներին. այլ թէ ի՞նչ է Քուշան, այդ դժուար է որոշել. շատ կարելի է, որ Քուշանն էլ Ե. դարում այդ հիւսիսային (Պարսկաստանի վերաբերութեամբ) ազգերի համար այնպիսի մի նախնական պատուանուն կամ կոչումն էր, ինչպէս եւ Արիք անունը նոյն ժամանակուայ Պարսից համար. կամ թէ Քուշան եւ Հեփթաղ համանշան են եւ վերաբերում են միմիայն արեւելեան Հոներին. այս երեւում է եւ նորանից, որ Հայ պատմիչներն առ հասարակ թէ Խորենացին, թէ Եղիշէն եւ Փարպեցին, եւ թէ նաեւ Ագաթանգեղոսն եւ Փաւստոսը արեւելեան անցքերի յիշատակութեան ժամանակ Քուշանների անունն են տալիս, իսկ արեւմտեան անցքերի ժամանակ Հոների։**

Հոնաց ազգի մնացորդներն են Եւրոպայում արդի Հոնգարացիք կամ Մաճառները, Ֆինները որոնք քաղաքակրթեալ ազգութիւններ են. կան նաեւ վայրենի ամբոխներ, ինչպէս են Կալմուկներն եւ միքանի այլ ֆիննական ցեղեր։

Բ. Ապար աշխարհ.

Քուշանաց աշխարհից հարաւային արեւմուտք ընկնում էր Պարսից տէրութեան հիւսիսային արեւելեան սահմանը. այդ սահմանը լեռնային երկիր է մասամբ եւ ունի շատ գետեր, որոնք այնուամենայնիւ չեն հասնում իրենց նպատակին, այլ կորչում են ա-

* Տես երես 32։
** Տես Խոր. Բ. բ. կէ. կը. հբ, հգ. ձե. Գ. կ։
Եղ. եր. 16, 18, 82, 134, 137, 237, 249, 353 եւ այլն։

Գլ. Բ. 6 Նապատի մէջ. այդ լեռներում եւ պէտք է գտնուէր Ապար աշխարհը, ուր կեդրոնացնում էին Պարսիկներն իրենց զինուորական զօրութիւնը Քուշանների դէմ կռուելու։ Այդ գաւառի գետերից մէկը կոչւում է Հարէ-րուդ, որի վերայ գտնւում է Հերատ անուանով քաղաքը, որն այսօր եւս վաճառաշահ քաղաք է։

Հարէ-րուդը նոյն իսկ հին Հարիօն կամ Արիօն գետն է եւ Հերատն էլ Հարեւ քաղաքը, ուր գըտնւում էին Հայոց նախարարները կապանքից արձակուելուց յետոյ։

Հարէ-րուդից հարաւ անցնում է Կուհիսիյահ կամ Սեաւ լեառն կոչուած գօտին, որի հարաւային ստորոտներում գտնւում է Համուն լիճը միքանի նըշանաւոր գետերով. այդ գետերի վերայ դէպի հարաւ գտնւում էր եւ Սագաստանը, որ նոյնպէս Պարսկաստանի հեռաւոր սահմանագլուխ գաւառներից մէկն էր եւ աքսորի տեղ էր համարւում։

Ապար աշխարհի հիւսիսային արեւմտեան կողմն է Նիւշապուհ քաղաքն եւ Ռեւան գիւղը։

---

7. Պահղուան։

Սորա մասին Եղիշէի ռուս. Թարգմանութեան մէջ, երես 13, այսպէս ենք կարդում. "վերջին ժամանակներիս Հայ մատենագրներն, ասում է Թարգմանիչ Պարոն Պ. Շանշիեանցը, Պահ-դուռը կարծում են, որ այժմու Դէրբէնդն է, որն յայտնի է Հայոց պատմաբաններին "Ճորայ-դուռն, Դուռն Ալանաց եւ Դուռն երկաթեայ,, անուններով։ Բայց Յազկերտի հրովարտակի խօսքերին նայելով, որ ասում է թէ "ես գնալու եմ պատերազմ դէպի արեւելից աշխարհը,,, պէտք է կարծել, որ այդ դուռը Պարսկաստանի արեւելեան կողմն էր, ուր բնակւում էին Բակտրիացիք կամ Քուշանք, մինչդեռ Դէրբէնդը գտնւում է Պարսկաստանի հիւսիսային կողմը։ Ուրիշ կերպ դժուար է հասկանալ, շարունակում է նոյնը, թէ ի՞նչպէս կարող էր այն զօրքը որ Հայաստանի հիւսիսային-արեւ-

մտեան կողմն էր, գնալ ներկայանալ Թագաւորին Գլ. Բ. 7
Ապար աշխարհում՝ այսինքն արդի Խորասանում։ Բացի
այն՝ Պահ խօսքը յատուկ անուն չէ, այլ հասարակ
անուն է եւ նշանակում է — Պահապան զօրք, [illegible]։
Պահ նշանակում է ճանապարհն ու կիրճը պահպա-
նող։ Կարելի է արտագրողները Պահլ խօսքի տեղ
պահ են գրել սխալմամբ, ասում է Պարոն Շանշի-
եանց։ Մովսէս Խորենացին յիշում է (Գիրք Բ.
գլ. 54) "Արտաշիրը խոստացաւ Պարթեւներին նոցա
յառաջուան կալուածքն արքայանիստ Պահլ քաղաքը։,,
Պ. Թարգմանիչը շփոթել է երեք տարբեր անուն։
Ճորայ դուռը, Ալանայ դուռը եւ Պահ-դուռը երեք
միմեանցից տարբեր բաներ են, ջոկ ջոկ տեղերում։
Սոցա աշխարհագրական տեղադրութիւնն հետեւ-
եալն է։

Կովկասեան լեռների միջովն հարաւ կամ հիւսիս
անցնելու համար միայն երեք ճանապարհ կայ. մէկը
արեւմտեան ծայրում Սեւ ծովի ափերում, որ մեծ նշ-
շանակութիւն չէ ունեցել պատմութեան մէջ. եր-
կրորդը Դարեալ ասուած կիրճն այժմու Վլադիկաւկազ
քաղաքի հարաւային կողմից. այս դուռը կոչւում էր
Ե. դարում Դուռն Ալանաց. իսկ երրորդն է այժմու
Դերբէնդ քաղաքի տեղը Կասպից ծովի ափերում, որ
Ե. դարում կոչւում էր Դուռն կամ Պահակ Ճորայ,
Դուռն կամ Պահակ Հոնաց, Դուռն կամ Պահակ
Աղուանից։

Իսկ թէ Պահդուռը պէտք է գտնուէր ոչ թէ
Պարսկաստանի արեւելեան կողմը այլ ընդհակառակն
արեւմտեան հիւսիսային, այս երեւում է նորանից, որ
երբ Յազկերտը Քուշանաց դէմ պատերազմում էր Ա-
պար աշխարհում եւ այնտեղ նորա հետ էին քրիստո-
նեայ զօրականները, սաստիկ հրաման տուեց քրիս-
տոնեաների համար թէ "ովոր արեւմուտքից ա-
րեւելք մեզ մօտ գալու լինի, թող գայ, իսկ ովոր
արեւելքից արեւմուտք գնալու լինի, նորա ճանա-
պարհը թող կապուած լինի։,, Սորանից երեւում է,
որ Պահ-դուռը բանակի արեւմտեան կողմն էր ընկնում

Գւ. Բ. 7

այլ ոչ արեւելեան. իսկ բանակն, ինչպէս մեզ յայտնի է, գտնուում էր Ապր աշխարհում՝ այսինքն Խորասանում՝ Պարսկաստանի հիւսիսային արեւելեան կողմերում, որ ցոյց է տալիս թէ Հայաստանը եւ Հայոց զօրքի ճանապարհը պէտք է բանակի արեւմտեան կողմն ընկնէին, այլ ոչ արեւելեան։ Եւ որովհետեւ Պահլ քաղաքը Քուշանաց երկրումն էր ընկնում այսինքն Խորասանի արեւելեան կողմը, վասն որոյ սխալ է ենթադրել, որ Պահդուռը միեւնոյն Պահլ քաղաքն եղած լինէր։ Թէ ո՞ւր էր Պահդուռը, այդ մեզ պարզ կ'երեւի եթէ մտաբերենք, որ Յազկերտն իւր զօրքով խաղաց Քուշանաց դէմ Տիզբոն քաղաքից եւ հրամայեց որ Հայոց զօրքը ներկայանայ նորան Ապր աշխարհում։ Որովհետեւ Ապար աշխարհն եւ Քուշանաց երկիրը կասպից ծովից դէպի արեւելք էր ընկնում, ուստի Պահդրան տեղն այժմու կասպից ծովի հարաւային կողմերը պէտք է ենթադրել։ Ինչպէս յայտնի է կասպից ծովի հարաւային ափերումն անցնում է Էլբուրսի լեռնային գօտին, որի մէկ ճիւղը՝ Գեղմանց ասուած լեռներն են, որ կասպից ծովի արեւմտեան կողմից հասնում են մինչեւ Սաւալանի գագաթը, իսկ միւս ճիւղն հասնում է մինչեւ Ուրմիայ լիճը եւ միանում է Զագրոշի թեւերի հետ։ Այս երկու ճիւղի մէջտեղումն անցնում է Սէֆեդ-րուդ (Ամարդուս) գետի հովիտը, որի ակունքը Սոհունդի ստորոտներումն են։ Այդ հովիտն է եւ այն միակ անցքը, որտեղից կարելի էր գնալ դէպի Պարսկաստանի հիւսիսային արեւելեան կողմերը։ Այն տեղում, ուր Սէֆեդ-րուդը թեքւում է դէպի հիւսիսային արեւելք, որ գնայ թափուի կասպից ծովի ծոցը, կայ մի նեղ եւ լեռնափակ կիրճ, որի արեւելեան կողմն է Ռուդբար անունով անցքը, որտեղ է եւ Ռուդբար քաղաքը, իսկ կրճի արեւմտեան կողմից Սէֆեդ-րուդի աջ ափումը կայ մի բերդ՝ Դէրբէնդ կամ Գեաւուր Գուլայ անունով։ Հին Պահ-դուռը, պէտք է կարծել, որ այդ Դէրբէնդի տեղումն է եղել, ըստորում այդտեղն իւր բնական դիրքով արդարեւ դուռն է Հայոց





եւ Պարսից սահմանի վերայ։ Դէրբէնդ խօսքն եւս, ինչպէս յայտնի է, նշանակում է երկաթեայ դուռն։ Գլ. Բ. 7

Այդ տեղերում Ելբուրսի գօտու մէջ հին Յոյներին եւս յայտնի էր մի դուռ 8—9 փարսախ երկարութեամբ եւ մի կառքի լէնքսի չափ լայնութեամբ, որին նոքա ասում էին Կասպից դուռ (porta Caspia). այդ Պարսիկները փակած են եղել երկաթեայ դռներով։ Թէ՛ աշխարհագրական դիրքից եւ թէ՛ բոլոր մեր վերը բերած տեղեկութիւններից երեւում է, որ "Դուռն Կասպից" միեւնոյնն է ինչոր Ե. դարում "Պահ դուռն" էր կոչւում. եւ այդ Պահ-դուռը կամ Կասպից-դուռը կարող էր գտնուել միմիայն Ռուդբարի կիրճում, որը նոյնպէս մօտ 8—9 փարսախ երկարութիւն ունի եւ շատ նեղ է։

---

8. *Ապար աշխարհ, տես Աշխարհ Քուշանաց,* գլ. Բ. 6։

---

9. *Վիրք կամ աշխարհ Վրաց կամ Իվերիա։*

Արդի Վրաստանն է։ Ե. դարում նորա սահմանները Կուր գետից հարաւ չէին անցնում. այնպէս որ Վրաց աշխարհ ասելով պէտք է հասկանալ Կուր գետի հիւսիսային ափից սկսած մինչեւ Կովկասեան լեռները դէպի հիւսիս. իսկ արեւմուտքից Եգերաց աշխարհն է Սեւ ծովով, հարաւից Գուգարք, արեւելքից Աղուանք։ Այն ազգը որ բնակում է այդ երկրում կոչւում է Վիրք,* այսինքն Վրացի։ Վրացիք շատ

* Վրացիք անուանում են իրենց Քարթլի, որովհետեւ նոցա նախահայրն ըստ աւանդութեան՝ Թորգոմի որդիքներից մէկը Քարթլոսն է։ Հին ազգերն էլ՝ Հայերի նման՝ Իբերիա են ասում Վրաստանին, բայց Արաբացիք եւ նոցանից առած՝ ուրիշ արդի ազգերը Վրացու անունը Կուր կամ Գուր գետի անունից են հանում. Արաբացիք Վրացուն ասում են Գիւրջի, եւ Վրաստանը՝ Գիւրջիստան. նոցա նման են ասում եւ Ցաճիկներն եւ Պարսիկները։ Ռուսները Վրաստանին ասում են Գրուզիա, որից եւ Վրացու անունը Գրուզին. Գերմանացիք եւ Գաղղիացիք ասում են Գէօրժիէն, Ժէօրժի։ Ուրեմն եթէ ուրիշ ազգերի ասածը մեր լեզուով թարգմանենք, գուրս

ԳԼ. Բ. 9

Հաւանական է, որ հին ժամանակներում քաղաքականապէս կախում ունէին Հայերից կամ գէթ դաշնակից էին։ Այս երեւում է նորանից, որ շատ անգամ Վրաց զօրքը եւ իշխաններն Հայոց հետ միասին են գործում։ Այսպէս՝ Տիգրան Ա.ի զօրքերի մէջ բացի Հայոց եւ Աղուանից զօրքերը կային եւ Վրացւոց գնդերը Աժդահակի դէմ պատերազմելիս։ Տիգրան Բ.ը զրկում է Միհրդատին իշխանութիւնից եւ մինչեւանգամ չի տալիս նորան իւր Վրաստանը։ Արտաւազդ Ա. Միջագետք արշաւելիս հրամայում է վերկացնել կովկասեան լեռնականներին Աղուանների եւ Վրացւոց հետ միասին։ Երուանդ Բ.ի զօրքերի մէջն էլ Վրաց գնդեր կային. Տրդատը չորս զօրավար է նշանակում իւրաքանչիւր սահմանի համար, որոնցից մէկն էր եւ "Միհրան առաջնորդ Վրաց*։,,

Քրիստոնէութեան ժամանակներն էլ Հայոց վիճակակից էին միշտ Վրացիք եւ Աղուանք, այդ երեւում է նորանից, որ Պարսիկներն անդադար ասում էին՝ երբ Հայերը մեր ձեռքը լինին, Վրացիք ու Աղուանները մերն են ու մերը։ Մենք գիտենք, որ Յազկերտ Բ.ն իւր հրովարտակում այս էլ էր ասում Հայերին. "Երբ դուք, ասում է, մեզ նման ճանաչէք այս ճշմարիտ հաւատը, Վրացիք եւ Աղուաններն էլ մեր ու ձեր կամքից դուրս գալ չեն կարողանար։,, Եւ մենք տեսնում ենք յիրաւի որ այդ ազգերը Հայոց հետ

կուգայ՝ որ Վրացուն պէտք է ասենք Կ—րցի, այսինքն Կուրի երկիրներում բնակող։ Իսկ արդի Հայերի գործածած Վրացի կոչումը նոր է եւ անկասկած՝ Վրաստանցի է նշանակում. այսինքն այն Վիրք բառից է ածանցուած, որը նշանակում է Վրաց աշխարհ, Վրաստան, այլ ոչ թէ Վիրք — Վրաց ազգ, քանորում անկարելի է, որ Վրացի բառը նոյնը լինի ինչոր Վիր, Վիրք, ինչպէսոր՝ մի ազգի անուն նշանակելու համար՝ անկարելի է զորօրինակ՝ Հայ+ խօսքից Հայացի, Ռուս խօսքից Ռուսացի, Հռոմ խօսքից Հռոմացի, Պարս+ խօսքից Պարսացի կազմել։ Թերեւս Վրացի կոչումն աղճատումն է նոյն իսկ Իվերիացի (Իվերիա), Վերիացի (Վերիա) խօսքերից։ Խորենացին Գիրք Գ. ԻԹ. ասում է "Արշակայ եկեալ Վրացի գնդաւ....,, որից երեւում է տեղի մասով գործածուած լինելը, այլ ոչ ազգութեան. այդ միակ դէպքն է, ուր Խորենացին գործ է ածում Վրացի խօսքը։

* Տես Խոր. Ա. ԻԹ. Բ. ԺԸ. ԻԲ. ԽԴ. ՁԵ։

միասին կրում են ամենայն հալածանք. նոցա գնդերն էլ Հայոց հետ միասին գնում են Ապար աշխարհ եւ նոցա հետ միասին արգելուում մնում. նոցա նախարարներն էլ Հայոց նախարարների հետ միասին ներկայանում են Յազկերտին եւ միաբան հակառակում նորա հրամաններին, միասին բանտարկուում, միասին ուրանում, միասին վերադառնում. մոգերը իրենց գնդերով Աղուանք ու Վրաստան էլ են մտնում եւ Հայերն իրենց գնդերով անխտիր նոցա օգնութեան են հասնում իբրեւ համախոհ դաշնակիցների*։

Բացի այն՝ եղել է միշտ խնամութիւն եւ ընտանեկան յարաբերութիւն Վրացւոց եւ Հայերի մէջ. զորօրինակ՝ Արտաշէս Ա.ի դուստրն Արտաշամ Վրաց մեծ բդեշխ Միհրդատի կինն էր. (Խոր. Բ. ԺԱ.) Աշուշայ բդեշխի կինն էր Արծրունեաց ցեղից Անուշվռամ տիկինը, որ Հմայեակ Մամիկոնեանի քենին էր (Ղազար եր. 335). այս բդեշխի տունը մնան Հմայեակի որդին Վահան Մամիկոնեանը. այս բդեշխի որդու Վազգէն ուրացողի կինն էր եւ Վարդան Մամիկոնեանի դուստրը Շուշանիկ (տես Սոփերք Հայկ. Թ.)։ Այս ամէնը բացատրուում է նորանով, որ Վրացիք Ե. դարում ունէին հաղորդութիւն Հայոց եկեղեցու հետ եւ ընդունում էին Հայոց կաթուղիկոսի գլխաւորութիւնը. այդ պատճառով եւ ամենայն կրօնական գործերում մասնակից էին Հայերի հետ. բայց Զ. դարում նոքա բաժանուան Հայոց եկեղեցուց։ Վրաց բաժանման մասին տես Ուխտանէս եպիսկոպոսի պատմութիւնը։**

---

* Տես Եղիշէ եր. 18, 19, 33, 87. Ղազար եր. 119, 123, 141, 154 եւ այլն։

** Ինչոր վերաբերում է Վրացւոց հնագոյն պատմութեանը այդ տակաւին շատ անմշակ վիճակի մէջ է։ Իրենք Վրացիք հինգ թագաւորական ցեղ են հաշուում, որոնք երբեմն կառավարել են Վրաստանը։ Առաջինն է Փառնաւազեան կամ Արշակունեաց ցեղը. սորա իշխանութիւնն սկսուում է 247 թուին ք. յա. եւ վերջանում է 265 թ. ք. յա. այս ցեղի Արշակունի թագաւորները մեծ մասով Հայոց Արշակունիներից են եղել կամ նոցա իշխանութեան ներքոյ։ 265—574 թիւը թագաւորում է

Գւ. Բ. 10

**10. *Աղուանք կամ Աղբանիա, կամ աշխարհ Աղուանից:***

***Կասպից ծովի, կովկասեան լեռների, Կուր գետի եւ Վրաստանի մէջ տեղը: Այժմու Բագուայ նահանգի մի մասը:***

Խոսրովեան տունը. այդ միջոցում մտաւ քրիստոնէութիւնը Վրաստան Նունէ կուսի քարոզութեամբ 314 թ., երբ կառավարում էր Միհրան առաջնորդ Վրաց. այդ միջոցում տարածուաւ եւ նոր գրութիւնը Արձիլ թագաւորի օրով 413 թուին: Զարմանալի է միայն այս, որ այդ միջոցում այսինքն 446—499 թիւը յիշւում է Վրաստանում մի այնպիսի թագաւորութեան մասին, որն աւելի առասպելական է քանթէ պատմական: Մենք տեսանք որ Վրացիք վիճակակից էին Հայերին Վարդանանց պատերազմի ժամանակ. մինչեւ անգամ նոցա նախարարները բոլորովին աքսորուած էին հեռու երկիր (տես Եղ. եր. 82.): Այդ իսկ ժամանակ՝ Վրացւոց տեղական պատմիչների վկայութեամբ թագաւորում է Վախտանգ Գուրգ-Ասլան (որ է Վախտանգ գայլ-առիւծ) թագաւորը, որ տիրում է շատ երկիրների, առնում է մինչեւ անգամ Արզրումն Յոյների ձեռքից, հիմնարկում է Տփխիս քաղաքը (455 թ.), հաստատում է առանձին կաթուղիկոսական աթոռ Վրաստանում եւ այլն: Մենք գիտենք, որ Վրացիք մի Վախտանգի առաջնորդութեամբ ապստամբեցան Պարսիկների դէմ, բայց այդ 483 թուից յառաջ չէր. մինչցայն նոքա եւս Պարսից իշխանութեան ներքոյ էին:

574—787 թիւը թագաւորում է Գուարամեան տունը. այդ միջոց արշաւեցին Արաբացիք. այդ տանից յայտնի է Արձիլ Բ. թագաւորը իբրեւ նահատակ Վրաց եկեղեցւոյ (718 թ:)

Վրաց թագաւորութեան փառաւոր ժամանակն է 787—1424 թիւը, երբ իշխում էր այնտեղ Բագրատունեաց ցեղը. այդ ցեղի թագաւորներից նշանաւոր են Դաւիթ Բ. եւ Ասսի-Թամար թագուհին, որոնք մինչեւ անգամ տիրեցին դրացի երկրներին. Թամար թագուհու առաջին զօրավարն էր Զաքարէ սպասալարն Երկայնաբազուկ Արղութեանց տանից, որի յիշատակներն անթիւ են Հայաստանի հիւսիսային գաւառներում: Թամարի որդու Լաշա Գէորգ Դ. թագաւորի օրով արշաւեցին Մողոլները Վրաստան:

Վրաստանի թագաւորութիւնն ի վերջոյ երեք մաս եղաւ 1424 թուին որոնց մէջ Քարթլի թագաւորութիւնն 1762 թ. միացաւ Կախեթի թագաւորութեան հետ. եւ 1800 թ. երբ մեռաւ Գէորգ ԺԳ. վերջին թագաւորը, Կախէթն ու Քարթլին անցան Ռուսաց տիրապետութեան տակ. 1810 թ. էլ երրորդ մասն այսինքն Իմերեթի թագաւորութիւնն անցաւ Ռուսաց ձեռքը: (Վրաստանի պատմութիւնն եւ նկարագրութիւնը տես Klaproth's Reise in den Kaukasus etc.)

Հին ժամանակները Աղուանքը Հայաստանի քաղաքական սահմանների մէջն էր. յետոյ ինքնուրոյն թագաւորութիւն դառաւ։ Քրիստոնէութեան ծաւալման ժամանակ չորրորդ դարում Աղուանից Ուռնայր թագաւորի օրով այստեղ եւս տարածուաւ քրիստոնէութեան լոյսը Ս. Լուսաւորչի օգնութեամբ. Նա ուղարկեց այստեղ իւր Ս. Գրիգորիս անունով թոռին, որն եւ կոչուում է կաթուղիկոս Աղուանից. այնուհետեւ Աղուանից եկեղեցու կաթուղիկոսներն ու եպիսկոպոսները հնազանդում էին Հայոց կաթուղիկոսին եւ նորանից էին առնում ձեռնադրութիւն։ Աղուանից կաթուղիկոսութիւնն այդ կերպով յարատեւում էր մինչեւ վերջին ժամանակներս։ Արցախու Գանձասար վանքն էր նոցա վեհարանը։ Բայց Եփրեմ կաթուղիկոսի օրով (1810—1830) այդ աթոռը բարձուաւ եւ դառաւ մետրոպոլտական աթոռ, որն եւ այժմ Արցախու վիճակաւորի արքեպիսկոպոսական աթոռն է Շուշի քաղաքում։ Աղուանից ազգը առանց հետքի կորել է՝ գուցէ մահմետականութիւն ընդունելով եւ խառնուելով Պարսիկների, Թուրքերի եւ Արաբացւոց հետ։ Աղուանից հին ժամանակների մասին՝ տես "Պատմութիւն Աղուանից Մովսիսի Կաղանկատուացւոյ։"

Դ. Բ. 10

---

11. իբրեւ ետես զամենայն կազմութիւն եւ ըզբազմութիւն գնդին բարբարոսաց։

Յոյները միւս ազգերին, որոնք Յունաստանի քաղաքացի չէին, կոչում էին բարբարոս. Եղիշէն Պարսիկների բերանից խօսելով նոյն մտքով է գործածում բարբարոս խօսքը, ինչպէս Յոյներն էին հասկանում. Պարսիկներն իրենք բարբարոս խօսքի տեղ ասելու էին Անարյ. Հայերը նոցա համար բարբարոս էին կամ Անարի. Թէ ինչո՞ւ, այդ խնդրելի է։ — Կաղմա-Բի-Ն խօսքը նոյնանշան է արդի սարք, կամ "պատրաստութիւն, խօսքերին։ Արմատն է կաղմ, որից կան բարդութիւններ եւ բաղադրութիւններ՝ բարեկաղմ, անկաղմ, կաղմատաձ+ եւ այլն։





Գլ. Բ.
12

12. *Խայլնդուրք։*

Այն թափառիկ ազգերից էին սոքա, որոնք բնակում էին Կովկասեան գօտու հիւսիսային երեսի անապատներում։ Խայլնդուրներն Ե. դարում, ինչպէս երեւում է, բնակում էին այժմու Վլատիկաւկազի սահմաններում, որովհետեւ նոքա իրենց արշաւանքները դէպի հարաւ՝ կատարում էին Ալանաց դռնից այսինքն այժմու Դարեալի կրճից։ Սակայն այս անգամ յիշւում է թէ "դադարեցին ելանել ընդ Պահակն Ճորայ։" Տես հետեւեալ Ծան. 13 եւ 7։

---

13. *Ճորայ պահակ*, (Դերբէնտ քաղաքի մօտերը Կասպից ծովի ափում։)

Աղուանքի հիւսիսային սահմանների վերայ մի քաղաք է եղել հին ժամանակները Չողայ կամ Ճողայ անունով, ուր գտնւում էր մինչեւ Պարտաւ տեղափոխուելն եւ Աղուանքի հայրապետական աթոռը։ Այդ Չողայ քաղաքի մօտ գտնուել է մի պահակ (զօրանոց եւ բերդ) նոյն անունով, որն յետոյ զանազան պատմական անցքերի պատճառով զանազան անուններ գտաւ. ինչպէս օրինակ՝ դուռն կամ պահակ Ճորայ, Ճողայ, Չողայ, կապան Ճորայ, դուռն Աղուանից, Խազրաց, Հոնաց, Կասպից, կամ դուռն երկաթեայ (Դերբէնտ) եւ դրունք-դրանց (Բաբ-էլ-աբուաբ) ըստ Արաբացւոց։ Ինչպէսոր Հայաստանի հարաւային սահմանների պահպանութեան համար նշանաւոր էր Պարսկաստանի կողմից Պահդուաը, այնպէս էլ հիւսիսային սահմանների համար, ոչ միայն Հայաստանի, այլ մանաւանդ Վրաստանի եւ Աղուանքի, մեծ նշանակութիւն ունէր Ճորայ պահակը Կովկասի հիւսիսային երեսն՝ արձակ անապատներում թափառող հրոսակների կողմից։

Ճորայ պահակն յայտնի է Հայոց պատմութեան մէջ դեռ. Վաղարշ թագաւորի ժամանակից, երբ ինչպէս ասում է Խորենացին՝ (Գիրք Բ. գլ. ԿԵ.) "ամ-

բռնութիւնք ի հիւսիսականացն զխազրացն առեմ եւ Գլ. Բ. 13
զԲասլաց արտաքս քան զդուռն Ճորայ ելանել,, սկը-
սեցին, եւ Վաղարշն ինքն էլ "ձիգ զհետ եղեալ (նո-
ցա) անցանէ ընդ կապանն Ճորայ . . եւ մեռանի։,,
Վաղարշից յետոյ նորա որդին Խոսրով մեծ եւ ապա
սորա յաջորդները՝ շատ պիտի մաքառէին անկոչ հրո-
սակների ասպատակութեանց առաջն առնելու. այդ-
պիսով Ճորայ պահակն հետզհետէ մեծ նշանակու-
թեան տէր եղաւ. որովհետեւ եթէ այդ դուռը գոց
լինէր, այն ժամանակ հրոսակներին անկարելի էր
դէպի հարաւ արշաւել, մինչեւոր Ալանաց դուռն
առուած կիրճը (Դարեալ) չհասնէին. իսկ վերջինս
նոցա համար առաւել վտանգաւոր էր իւր ամրութեան
պատճառաւ։ Որովհետեւ Ճորայ պահակի քաղաքա-
կան նշանակութիւնն այդպէս մեծ էր եւ նորանից կա-
խուած էր մասամբ Հայաստանի խաղաղութիւնը,
ուստի Հայոց թշնամիների համար այդ եւս ծառայում
էր իբրեւ մի չարութեան գործիք. այսպէս՝ Տրդատի
մահից յետոյ Պարսից թագաւորները շատ անգամ
հրապուրում էին հիւսիսային ազգերին այդ ճանա-
պարհով Հայաստան մտնելու. եւ Տրդատի որդու
Խոսրովի օրով այդ հիւսիսային ազգերն արդարեւ ան-
արգելք մտան Հայաստան եւ հասան մինչեւ Հայոց
մայրաքաղաքը Վաղարշապատ. եւ եթէ Վահան Ամա-
տունի զօրավարի սուրը յաղթող եւ հալածող դուրս
չգար, նոքա պիտի աւերէին ապականէին ամբողջ եր-
կիրը։ Այսպիսի չարաբաստիկ դէպքերից խրատուած՝
Աղուանից եւ Պարսից թագաւորները (երբ սոքա տէր
դառան Հայաստանին եւ Աղուանքին) մեծ ուշադրու-
թիւն դարձուցին այնուհետեւ Ճորայ պահակի ամ-
րութեան վերայ. մինչեւանգամ յետոյ այդ պահակի
տեղը շինուաւ մի հաստահիմն ամուր պարիսպ, որի
հետքերն այսօր եւս տեսանելի են Դերբէնտի մօտ։
Արաբացիք իրենց աշխարհակալութեան ժամանակ-
ներն աւելի մեծ ուշադրութիւն դարձուցին այն պա-
հակի վերայ, որ նոցա ժամանակ կոչւում էր Բաբ-
էլ-աբուաբ այսինքն Դուռն-դրանց։ Հռովմայեցւոց

Գլ. Բ. 13 եւ Ցոյներին էլ յայտնի է այդ տեղը pylae Albaniae անունով. Բիւզանդացւոց յայտնի էր Ցուր անունով։ Չողայ նշանակում է ձիերի տեղ, ասում է Հօպէն։

---

14. Ատրուշան։

Ատրուշան եւ կրակարան խօսքերը միեւնոյն նշանակութիւն ունին. ատրուշանն Հին Պարսից խօսք է. Զանդիկ լեզուով կրակ խօսքին ասում են ատար, պարսկերէն ատաշ, որից եւ կազմուել է ատարուշան կամ ատրուշան խօսքը։

Հին պարսկական դրամների վերայ երեւում է մի գլանաձեւ սիւնի պատկեր, որի վերեւը բոց է երեւում եւ երկու կողմից կանգնած են մարդիկ ձեռքերին մի մի ձող բռնած. այդ սիւնն է եւ ատրուշանի տեսքը կամ նմանութիւնը. այժմ եւս Ասիայի Պարսից կամ Հայոց վաճառանոցներում կայ մի տեսակ շարժական կրակարան, որ մանղալ է ասւում. շատ մեծ նմանութիւն կայ ատրուշանի եւ մանղալի մէջ. զանազանութիւնը գուցէ այն է, որ մանղալն աւելի ցած է։

Ասիայում գործ է ածւում եւ մի տեսակ վառելիք, որին Հայերն աթար են ասում. հաւանական է, որ այդ խօսքը նոյնչափ հին է, ինչպէս եւ Զանդիկի ատար խօսքը եւ դոքա իրար հետ կապ ունին. աթար վառելիքը գուցէ այն պատճառով է այդպէս կոչւում, որ նա է եղել առաջին հնարը կրակ՝ այսինքն ատար ունենալու։

---

15. Հանեալ ի բաց զտէրութիւն ի նմանէ։

Տէրութիւն այստեղ նշանակում է աւագութիւնը նախարարական ցեղի մէջ։ Տես գլ. Ա. 3։

# ԳԼՈՒԽ Գ.

1. *Ազատութիւն խօսքն այստեղ նշանակում է ազատանի կամ ազատներ, այսինքն վերին դասի մարդիկ։ Տես գլ. Բ. 3. "նախարարեան, զօրագլխեան, բերդեան" եւ այլն։*

*"Ազատութիւն" խօսքի նման գործ է ածուել եւ "աւագ քահանայութիւն" խօսքը, որ նշանակում է աւագ քահանաներ կամ աւագ քահանայի ժողովարան. տես գլ. Ը։*

---

2. *Այս հազարապետը, որի վերայ Դենշապուհը գանգատներ հանել տուեց եւ հրաժարեցուց պաշտօնից, ինչպէս փարպեցու տուած տեղեկութիւններից երեւում է, Վահան Ամատունին էր որը թշնամութիւն ունէր նաեւ Հայոց մարզպան Վասակ Սիւնու հետ։ Վահան Ամատունին Մեսրոպի աշակերտներից էր. (տես Կորիւն։)*

---

3. *Մայրեաց սեռ. հոլ. է. ուղղականն է մայրի. այդ խօսքը մենք թարգմանում ենք "անտառ" խօսքով, ընտրում այժմ եւս ռամկօրէն անտառին մէշէ են ասում, որ նոյնն է ինչոր մայրի, մայրի խօսքը։*

---

4. *Չկարացաք — առաջին դէմքով է դնում Եղիշէն, իբրեւ թէ Պարսիկների տեղն է խօսում։*

---

5. *Հրապարակ. տես գլ. Բ. 3։*

---

6. *Փուշտիպան հին Պարսից խօսք է եւ նշանակում է թիկունքը (փուշտ) պահօղ, թիկնապահ։ Սոքա մոգերի օգնականներն էին։*

---



## ԳԼՈՒԽ Գ.

1. *Արտաշատ քաղաք։*

*“Երթեալ Արտաշէսի (Բ) ի տեղին՝ ուր խառնին Երասխ եւ Մեծամօր, եւ հաճեալ ընդ բլուրն՝ շինէր քաղաք յիւր անուն անուանեալ Արտաշատ„, ասում է Խորենացին այս քաղաքի հիմնարկութեան մասին խօսելիս։*

*Շօպէնը կարծում է որ այդ Արտաշատն այն չէ, որ շինեց Արտաշէս Բ., այլ աւելի հեռու այն տեղումն է, ուր գտնուում է այժմս Խորվիրապու վանքը Արաքսի ափին։ Եւ իւր կարծիքը հաստատում է Պլուտարքի եւ Ստրաբոնի վկայութիւններով։*

*“Երբ Անտիոքոսին յաղթեցին Հռովմայեցիք, ասում է Պլուտարք, Աննիբաղը գնաց Հայոց թագաւոր Արտաշասի մօտ. (սա մեր պատմութեան մէջ յայտնի է իբրեւ կուսակալ Արշակունեաց թագաւորութեան հաստատուելուց յառաջ, այն է Գ. դարում Ք. յ.) եւ քանիոր նորա մօտն էր՝ տուեց նորան միքանի շատ օգտաւէտ խորհուրդներ եւ խրատներ։ Ի թիւս այլոց, ասում են՝ որ, շարունակում է Պլուտարք, այն պտղաւէտ եւ ախորժելի երկրում մի յաջողակ տեղ նըկատելով, որ առանց շահի էր մնացել, մի քաղաքի նախագիծ պատրաստեց եւ տարաւ թագաւորին այնտեղ։ Սա խնդրեց Աննիբաղին՝ իւր վերայ առնել այդ դիտաւորութեան իրագործումը։ Կարճ ժամանակից կանգնեցաւ այստեղ Հայաստանի ընդարձակ եւ հոյակապ մայրաքաղաքը, որ Արտաշասի անունով կոչուաւ Արտաշատ։„*

*Աննիբաղի նկատած այդ տեղի մասին մանրամասնօրէն հաղորդում է մեզ Ստրաբոն. նա ասում է. “Տեղի դիրքը դուր եկաւ թագաւորին, որովհետեւ մի թերակղզի էր երեք կողմից շրջապատուած Արաքս եւ Մեծամօր գետերով. միայն չորրորդ կողմն էր որ կա-*





*րող էր մատչելի լինել, այն էլ ամրացուցին խրամատով եւ թմբերով։„* Գլ. Դ. 1

*Սորանից հետեւում է, որ երկու Արտաշատ է եղել Հայաստանում, մէկը Աննիբաղի խորհրդով հիմնած, միւսն էլ Արտաշէս թագաւորի շինածը։ Բայց երկու քաղաք միեւնոյն տեղում կանգնել չէին կարող, աւելի հաւանական է, որ երկու զանազան ժամանակ ապրող մարդ, որոնց ժամանակների մէջ տեղը գոնէ երեք հարիւր տարի է անցել, միեւնոյն տեղում միեւնոյն անունով մի քաղաք շինած լինէին։*

*Բանն այս է՝ որ դեռ հաստատ չգիտենք՝ կա՞յ եղել արդեօք Մեծամօր անունով գետ եւ ո՞րն է իսկապէս այդ գետը։ Շօպէնը կարծում է, որ այդ գետը այժմու Գառնի չայն է, բայց Շահխաթունեան Յովհաննէս եպիսկոպոսն ուրիշ կերպ է ներկայացնում Մեծամօրի տեղը, որն եւ մեզ աւելի հաւանական է երեւում։ Նա ասում է "Մեծամօրի գետ՝ ջուր մեծի շամբին ժողովեալ ի բազմակն աղբերց հեռի յէջմիածնայ յարեւմուտից նորա միջոցաւ երկուց ժամուց. այս գետ . . . ընթանայ ընդ յարեւելս հարաւոյ Էջմիածնի եւ յինքն ընկալեալ զՔասաղ գետ՝ անկանի յԵրասխ. կամուրջ Մեծամօրի կոչեցեալ ի գիրս՝ գտանի ի վերայ գետոյս յատորեւ քան զխառնուրդն ընդ Քասաղ։ Ցայս շամբ անկանի խոզակերպեալ մեծ արքայն Տրդատ զկնի նահատակելոյն զկուսանսն։„ (Տես Բ. եր. 14։) Շահխաթունեանի այս նկարագրութիւնն հաստատուում է Խորենացու խօսքերով, որ ասում է Վաղարշակի մասին, թէ "հասանէ ի միջոց աշխարհիս վերագոյն քան զակունս Մօրէն Մեծէ յափն Երասխայ մօտ յԱրմաւիրն։„ (Տես Բ. գլ. Դ։) Սորանից երեւում է, որ Մեծամօրը գտնուում էր Արարատեան դաշտի արեւմտեան կիսաբաժնում, այլ ոչ արեւելեան, ուր գտնուում է Գառնին, եւ է նոյն իսկ Սեւջուր* ասուած*

* *Սեւջուր կամ Ջէյվիջուր ասուած գետն արեւելահարաւ ուղղութեամբ հոսելով՝ Երասխի հետ միանում է ոչ հեռու այնտեղից, ուր խառնուում է եւ Զանգի գետը նոյն Երասխի հետ. այդ խառնարանների (Սեւջրի, Զանգու եւ Երասխի) մէջ տեղը ձեւացնում է արդարեւ մի*

Գւ. Դ. 1 գետը, որ գտնուում է Էջմիածնի արեւմտեան հարաւային կողմը։ Իսկ Գառնի չայը հին Ազատ գետն է, որի ափերում տնկեց Խոսրով Բ. անտառներ. Գառնու ափերում են Տրդատայ տախտը, Գեղարդավանքը, Դուինի քաղաքի աւերակներն եւ այլն։ Թաղիաթեանցն իւր Ճանապարհորդութեան մէջ (Ճանապարհ. ի Հայս եր. 148.) ասում է, որ Գառնի գետը Զանգու (Հրազդան) հետ է միանում Երասխի խառնարանից չորս ժամ հեռու. բայց այդ սխալ է, ըստորում Գառնին ուղղակի միանում է Երասխի հետ Հրազդանի խառնարանի արեւելեան կողմից։

Քանիոր մենք անձեռնհաս ենք հաստատ որոշելու Մեծամօրի տեղը, դժուար է ճշդութեամբ իմանալ թէ ուր է գտնուում Արտաշատ քաղաքը։ Պատմութեան ցուցումներին նայելով մենք աւելի հիմք ունինք կարծելու, որ նա գտնուում էր այն տեղերում, ուր է այժմու Խորվիրապ վանքը, որ մինչեւ քրիստոնէութեան ծաւալումը մահապարտների գուբ էր Արտաշատ քաղաքի մօտ։ Իբրեւ մի պատմական սրբութիւն Խորվիրապը երկար դարեր կայ եւ մնացել է. չէ կարելի կասկածել, որ նորա տեղն էլ փոխուած լինի եւ կամ նորա վիճակն էլ նոյնը լինէր, ինչոր ուրիշ շինութիւններինն էր։ Խորվիրապի տեղն, ինչպէս նշանակում է Շահխաթունեանը, Երասխի հիւսիսային ափումն է Երեւանից չորս ժամ հեռու դէպի հարաւ։

Թերակղզի՝ յաջողակ տեղադրութեամբ, ուր եւ գտնուում էր գուցէ առաջին Արտաշատը (Աննիբալի)։ Ագաթանգեղոսը միքանի կամուրջների յիշատակութիւն է անում, որոնք երկրորդ Արտաշատի մէջ կամ նորա մօտերը պէտք է լինէին (տես եր. 10). այդ կամուրջներն են՝ ա) կամուրջ Վաղարշապատի կամ Մեծամօրի, բ) կամուրջ Արտաշատու եւ գ) Տափերական կամուրջք։ Այս կամուրջներն անշուշտ միեւնոյն գետի վերայ չէին, այլ զանազան։ Այս հաստատում է, որ Արտաշատը ջրերով շրջապատուած մի թերակղզու վերայ է եղել եւ Վաղարշապատից այնտեղ հասնելու համար երկու տեսակ ճանապարհ կար. մէկը ցամաքով կամուրջների վերայով եւ միւսը ջրով՝ երեւի լաստերով կամ նաւակներով՝ Երասխի եւ Մեծամօրի վերայով. (տես Ագաթ. եր. 10. եւ խորէն. Բ. ԽԹ. ԾԹ։) Արդի Սեւջուրն այնքան խորն է եւ հանդարտ, որ զարմանալի չէ, եթէ նորա վերայ նաւակներով ման եկած լինին հին ժամանակները։

"Երասխի ափումը կայ մի բարձրաւանդակ, որի արեւելեան զառիվայրի վերայ գտնուում է Վիրապը երկու եկեղեցւով եւ միջանի վարդապետական խցերով, առում է Շոպէն. փոքրիկ եկեղեցում սեղանի եւ դրան աջ կողմը կայ մի նեղ ծակ, որտեղից իջնում են ուխտաւորները քանու[Թ]ն աստիճան փայտէ սանդուղներով ներքեւ դէպի բաւականին խոր (15 գազ պարսկային) եւ բոլորաձեւ գուբը: Հայոց պատմիչները միաբերան նշանակում են Խորվիրապը Արտաշատի բերդում, որ շատ հաւանական է, ըստորում մահապարտների բանտը չէր կարող մի ուրիշ տեղ գտնուել մայրաքաղաքից դուրս: . . . Այս հանգամանքն եւ վճռում է միանգամայն Արտաշատի տեղագրու[Թ]եան հարցը. եւ կասկած չկայ, որ այն ամրոցների, տների եւ կամուրջի աւերակները, որ Խորվիրապի բոլոր շրջակայքում կան գետի ափից սկսած դէպի սարերը ոչ այլ ինչ են՝ եթէ ոչ Արտաշէս Բ.ի շինած Արտաշատի աւերակները: Իսկ Աննիբաղի խորհրդով շինած Արտաշատը գտնուում է այնտեղ, ուրոր մինչեւ հիմայ մնացել է նորա անունը, այսինքն Երեւանից 25 վերստ հեռու դէպի հարաւ Արտաշատ աուած գիւղում:,,
(Ист. пам. 272.)

Փարպեցին պատմելով Մամիկոնեան Վահանի մի ճանապարհորդու[Թ]եան մասին՝ ասում է. "Վահան տեսնելով որ կամուրջը քանդած է՝ ձիով անցաւ Երասխ գետը, եւ եկաւ Արտաշատ գիւղաքաղաքը:,, Արդեօք այս միեւնոյն Արտաշատ քաղաքն է թէ ջոկ գիւղաքաղաք է, այդ մենք չենք կարող հաստատ ասել: Երեւում է որ Երասխի ձախ կողմը երկու Արտաշատ պէտք է լինէին, քաղաք եւ գիւղաքաղաք:

Գլ. Դ. 1

## ԳԼՈՒԽ Ե.

1. *Հրովարտակ.* տես գլ. Բ. 3։

---

2. *Փութային վասն եղբարց եւ այլն*։

Խօսքն այն նախարարների վերայ է, որոնք Պարսից բանակումն էին Քուշանաց դէմ պատերազմ գնալիս եւ այդ միջոց Յազկերտի հալածանաց տակն էին բանտերում, անապատներում եւ վտանգաւոր կռիւներում։

---

3. *Ցիշեցուցանեմք քեզ զժամանակն Շապհոյ*։

Նոյս այն ժամանակն է, երբ Բիւզանդիոյ Արկադ կայսրը եւ Պարսից Շապուհ թագաւորը բաժանեցին իրենց մէջ Հայոց թագաւորութիւնը։ Այդ էր 395 թ. Ք. յառ։

---

4. *Գահ* նշանակում է այստեղ նախարարների բարձը, որի վերայ բազմում էին արքայական սեղանի ժամանակ. այժմու խօսքով որ թարգմանելու լինինք, պէտք է ասենք "ատիճան"։ Տես գլ. Ա. 3։

---

5. *Խուժաստան* (Արդի Խուզիստան)։

Պարսից տէրութեան հարաւային արեւելեան գաւառներից մէկն է՝ Տիգրիս գետի արեւելեան կողմը։ Խուժաստանն հին ժամանակներն յայտնի էր Յոյներին Սուսիանէ կոչմամբ, յառաջ կոչուում էր նաեւ Քիւսսիա։ Այս երկիրը մի ընդարձակ դաշտավայր է Բաբելոնի դաշտերի հետ միացած, բայց շրջապատող գաւառներից բարձր սարերով բաժանուած եւ առանձնացած. նորա սահմաններն էին արեւելքից՝ Պարսք գաւառը, հարաւից Պարսկական ծոցի սկիզբը, արեւմուտքից Միջագետք եւ Ասորեստան (Տիգրիս գետն եւ լեռներ), հիւսիսից Մարաց աշխարհը (Մեդիա)։

Խուժաստանի օդն եւ եղանակը շատ նշանաւոր

տեսակներ ունին. Հարաւային մասերում օդը շատ ջերմ է եւ ճնշող, ըստորում այնտեղ միմիայն հարաւային եւ արեւմտեան ջերմ տօթաբեր հողմերն են փչում. մինչդեռ արեւելեան եւ այլ լեռնային մասերում օդը խիստ ցրտային է եւ սառնաշունչ, միայն հիւսիսային մասի օդն է փոքր ինչ բարեխառն։

Հարաւային ծովեզերեայ մասը բացի այն՝ ճախճին եւ խոնաւ գետին ունի, իսկ երկրի մնացած մասը պտղաւէտ է եւ մշակութեան պիտանի։

Խուժաստանի այդ առանձնացած դիրքին եւ օդի անախորժութեանը նայելով հասկանալի է լինում մեզ թէ ինչո՞ւ մեր պատմիչներն իբրեւ պատուհասի տեղ են ներկայացնում այդ երկիրը, ուր եւ իրօք աքսորում էին Պարսիկներն իրենց քաղաքական յանցաւորներին. այստեղ բանտարկեցին Հայոց Արշակ Բ. թագաւորին Անյուշ կամ Անյիշելի բերդում. այստեղ պէտք է աքսորուէին Հայոց նախարարներն եւ նոցա կանայք, եթէ չկատարէին Յազկերտի կամքը։ Այս մի անուն է, որը մինչեւ հիմայ էլ դեռ կարող է գործ դրուիլ նոյն սարսափով, ինչպէս Սիբիր կամ մի այլ աքսորանաց երկիր։

Խուժաստանի բնակիչները կոչւում էին Յունաց խօսքով "Սուսիանք,, (οἱ Σουσιανοί) իսկ մեր լեզուով երեւի նոյնիսկ "Խուժ,, է խուժաստանցու անունը, որ նոյնպէս գործ է ածւում իբրեւ պարսաւական, երբ ասում ենք (Գրոց լեզուով) "Խուժ դուժ, ծառայ, աղատ,,։ Լեռնաբնակ Խուժաստանցին պարապում էր մեծ մասով աւազակութեամբ եւ աւարառութեամբ. մինչեւ անգամ Պարսից թագաւորներին էլ ստիպում էին աւազակ Խուժաստանցիք, որ կանոնաւոր հարկ տան նոցա, եթէ ուզում են ճանապարհորդութեան ժամանակ անվնաս անցկենալ նոցա լեռներից։ Խուժաստանի գլխաւոր քաղաքն է Սուսա կամ Շուշան, որն այդ անունով կոչւում էր այն պատճառով, որ նորա շրջակայքը լիքն էր շուշաններով։ Շուշանում տօնեցին Աղէքսանդր Մակեդոնացին եւ իւր զօրավարներն իրենց հարսանեաց տօնը Պարսիկ օրիորդների հետ ամուսնանալիս։

## ԳԼՈՒԽ Զ.

1. *Լեզու նշանակում է ազգ։ Հայոց լեզուով կարելի է ազգութիւնը լեզու– խօսքով յայտնել. "Ծայրք կամ սահմանք հայերէն խօսից,, (տես Խոր.) նշանակում է Հայոց ազգի բնակութեան սահմանները։ "Հայերէն խօսք,, եւ "Հայոց լեզու,, այսպիսով նշանակում է Հայոց ազգ։ Մոգերը ոչ միայն Հայաստան էին գնալու այլ եւ Վրաստան եւ Աղուանք. այդ պատճառով վիճակ ձգեցին թէ ո՞ր ազգը որ խմբին է հանելու։*

---

2. *Պատրուճակ նշանակում է մորթելու անասուն. մոգական օրէնքով մինչեւ անասունը չյագէին այսինքն չխոստանային աստուածներին իբրեւ մատաղացու, իրաւունք չունէին մորթելու։ Յագելու համար անշուշտ կատարուում էին կրօնական ծէսեր։ Այժմ Հայերի մէջ սովորութիւն է մատաղի համար աղն օրհնել տալ. կատարուում է նաեւ մատաղօրհնէքի կարգը։ Շատ հաւանական է, որ այդ մատաղօրհնէքը Հայոց ամենահին սովորութիւններից մէկի մնացորդը լինի։*

---

3. *Հայաք նշանակում է խմոր, իսկապէս ալիւրն եւ ջուրն իրար խառնած՝ բայց դեռ չփաղաղած։ Ե. դարում խմոր շաղախելն էլ մի կրօնական ծէս էր, որի համար էլ յատուկ հրամաններ են գրում։ Իրար խառնած ալիւրն ու ջուրը իրաւունք չունէին հասարակ կերպով շաղախելու, այլ պէտք է շորեղէնի մէջ լինէր այդ. "Հայաք առանց փանդամի մի զանգցին,, այսպէս էր Պարսից հրամանը։ Փանդամ նշանակում է շորի կտոր, լաթ. տես Հայկազն. Բռ. Վենէտիկ։*

---

4. *Գումէզ, գոմիզ նշանակում է եզի կամ կովի*





*մէջը, առանց որի ձեռք լուանալ անկարելի էր ըստ Դւ. Զ.[4] մոգական օրինաց։*

---

5. *Մինչեւ ի գլուխ տարւոյ։*

*Նախարարներն Յազկերտի մօտ եկան զատիկ շաբաթին. Նշանակում է ոչ վաղ քան զմարտի վերջերը։ Եթէ համարելու լինինք, որ Նաւասարդ ամսի մէկն է (օգոստ. 11ին) այդ նշանակած տարեգլուխն, այն ժամանակ մի ամբողջ տարում պիտի գլուխ գար թագաւորի հրամանը, այսինքն "ի Նաւասարդէ ի Նաւասարդ,, ինչպէս ասում է Եղիշէն։ Նախարարների առերեսս ուրանալու ժամանակն Յազկերտի թագաւորութեան երկոտասաներորդ տարու (449 թ. ք. յտ.) վերջերն էր, այսինքն ամառնային ամիսներում օգոստոսից յառաջ։*

---

## ԳԼՈՒԽ Ե.

1. *Ժողովք եպիսկոպոսաց:*

Եկեղեցական գործերի ատեանն Ե. դարում կոչւում էր «Ժողով»։ Եպիսկոպոսների ժողովներին իմաց տուին ամենից յառաջ՝ նախարարների ուրացութեան մասին. այժմ այդ տեսակ ժողովներին (տեղերին)՝ ասում ենք առաջնորդարան կամ եպիսկոպոսարան։ Տես գլ. Բ. 3։

---

2. *Յամնեանն չորրորդի:*

Յառաջ Ապար աշխարհից, ուր Պարսից բանակն էր, այսինքն այժմու Խորասանի կողմերից մինչեւ Հայաստան երեք ամսուայ ճանապարհ է եղել ամառնային ժամանակ։ Միակ յարմարին ճանապարհը Պահդռնոյն էր անցնում։ Տես գլ. Բ. 7։

---

3. *Անգղ,* տես Ծաղկոտն գաւառ, 9։

---

4. *Արամանայ,* տես Բագրեւանդ գաւառ, 5։

---

5. *Բագրեւանդ գաւառ:*

Այս գաւառն Ե. դարում Այրարատեան գաւառներից մէկն էր Երասխ գետի աջ կողմում՝ Ջրաբաշխ կամ Սուկաւէտ եւ Բարդող լեռների հարաւային ստորոտներում՝ Եփրատի (Արածանու) սկիզբներում։ Սահմանակից էին՝ հիւսիսից՝ Արշարունիքը, արեւելքից Ծաղկոտն, հարաւից Տուրուբերանը եւ արեւմուտքից Բասեն։ Այդ գաւառում էն հին Նպատ լեառը, Բագաւանը, Եփրատի ակունքը։ Այժմ այդ գաւառը կոչւում է Ալաշկերտ։





կռապաշտութեան դարերում Բագրեւանդը աստուածների գաւառ էր համարուում եւ Բագ խօսքը, որ շատ ստէպ պատահում է Հայոց հին անունների բարդութեանց մէջ եւ նշանակում է աստուած, ցոյց է տալիս, որ այդտեղ կեդրոնացած պէտք է լինէին Հայոց կռապաշտական սրբութիւնքը: Գլ. Է. 5

Խորենացին Տիգրան Գ.ի մասին պատմելիս ասում է. “Վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի ի Բագնացն աւանի, որ ի Բագրեւանդ գաւառի, բագին ի վերայ գերեզմանին շինեալ, զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն եւ ընդունիցին հիւրք երեկօթիւք: Ցորում եւ զնի Վաղարշ տօն աշխարհախումբ կարգեաց ի սկզբան ամի նորոյ ի մուտս նաւասարդի: (Բ. ԿԶ:)„ Այստեղ էր Վանատուր [illegible] աստծու մեհեանը. այստեղ էին գտնում պատսպարան օտարական անցորդները մեհեանի զոհերից կերակրուելով. այստեղ էին կատարում Վաղարշ թագաւորի սահմանած տօնը Ամանորաբեր աստծու պատուին՝ օգոստոս ամսի 11ին (Նաւասարդի մէկին)՝ երբ արդէն հասնում էր Հայաստանի պտուղներից մեծ մասը. եւ այս տօնի յիշատակն է, որ մնացել է մինչեւ այսօր մեր սուրբ եկեղեցու ազգային միքանի արարողութեանց մէջ. ինչպէս օրինակ խաղող օրհնելը նոյն իսկ օգոստոս ամսի մէջ Ս. Աստուածածնի վերափոխման տօնին. կամ միքանի տեղեր նոյն տօնի օրը եղջերու վազեցնելը, կամ առհասարակ ժողովրդի մէջ ձիարշաւ կազմելը նոյն Ամանորաբերի տօներին կատարուող սովորութիւններից մնացած յիշատակներ են:

Արածանի գետի վերայ Նպատ սարի հիւսիսային ստորոտում կայ այժմ մի մեծ եկեղեցի Իւչքիլիսէ անունով, որ շինուած է Է. դարում. այդ եկեղեցին կամ մենաստանն այն տեղն է, ուր եղել է հին ժամանակներում Մաժան քրմապետի գերեզմանը եւ Վանատրի մեհեանը. այդ տեղը կոչւում էր Բագաւան կամ Դիցաւան, որտեղ Գրիգոր Լուսաւորիչ

Գլ. Ե. 5 կռատուններն ու բագիններր կործանելուց յետոյ՝ մատուռ շինեց եւ Յովհաննէս Մկրտչի մասունքն ամփոփեց. այս պատճառով Իւչքիլիսէն կոչւում է եւ Բագրեւանդու սուրբ Յովհաննէս եւ մինչեւ հիմայ էլ մեծ ուխտատեղի է. այստեղ եւ մկրտուան Տրդատն եւ բոլոր Հայերն Եփրատայ ջրերի մէջ Ս. Լուսաւորչի ձեռքով: Այստեղի մօտերն էր հին Չիրաւ դաշտը, ուր յաղթուաւ Մեհրուժան ուրացողն եւ յաղթանակեց Հայոց զօրքը: Այս Բագաւանն Ե. դարում յիշւում է իբրեւ մի գիւղ Նպատի ստորոտում: Բագրեւանդի մէջն են եւ Ղազարի յիշած գիւղերը "Արամանայ, Արծակ, Բերդկունս, Եղեգեակ, Զարեհաւան.", որոնց տեղերը մենք դժուարանում ենք որոշել չունենալով ճիշդ տեղագրական հիմքեր:

Փարպեցին ասում է Արամանայ գիւղի մասին, թէ "հասանէին ի գիւղ մի որոյ անուն էր Արամանայ ի նահանգին Բագրեւանդայ մերձակայ սահմանակից Բասենոյ եւ Տուարածատափոյ." (եր. 165:) Այս նշանակում է, որ Արամանայ գիւղի տեղը պէտք է փնտրել Ալաշկերտու արեւմտեան-հարաւային կողմերը:

Զարեհաւանի մասին Շոպէնն ասում եթէ "կարելի է այժմու Տիատինն է. նա գտնւում էր Ծաղկոտնի եւ Բագրեւանդի մէջտեղը: (Ист. пам. եր. 49.) Կիպերտն այդ գիւղը դնում է Նպատ սարի հիւսիսային ստորոտում Արածանի գետի ձախ կողմը: Այժմ Ալաշկերտում մի գիւղ կայ Արածանու աջ կողմը Բարդողի հարաւային ստորոտում Զիրօ անունով. թերեւս այդ Զիրօ գիւղն է եւ հին Զարեհաւանը:

---

6. Բասեան գաւառ:

Արարատեան աշխարհի արեւմտեան գաւառներից մէկն է. ինչպէսոր Բագրեւանդը գտնւում է Արածանու ակզբներում, այնպէս էլ Բասենը գտնւում է Երասխի ակզբներում Բիւրակնեան լեռների հիւսիսային երեսը՝ տարածուելով մինչեւ Կարնոյ սարերը դէպի արեւմուտք, մինչեւ Տայոց սարերը դէպի հիւսիս

եւ մինչեւ Վանանդայ սարերը դէպի արեւելք։ Բասենն այժմ եւս նոյն անունով կոչւում է եւ բաժանւում է երկու մասն. արեւմտեան հարաւայինը՝ վերին եւ արեւելեան-հիւսիսայինը՝ ստորին Բասեն։ Վերին Բասեննումն է Հասանխալայ անունով բերդը Ծիրանեաց սարի մէկ ոտի վերայ շինած։ Գ. Ե. 6

Ե. դարում Բասենին սահմանակից էին հիւսիսից Տայքը, արեւելքից Վանանդ եւ Երասխաձոր, հարաւից Բագրեւանդ Տուրուբերան, իսկ արեւմուտքից բարձր Հայքի կարնոյ գաւառը։ Բասենի մէջն են հին Մուրց գետը, Վաղարշաւան քաղաքը եւ շատ բերդերի աւերակներ։

Փարպեցին իւր պատմութեան մէջ մի քանի գիւղերի անունն է տալիս, որոնք Բասենու մէջ կան մինչեւ հիմայ. դոցանից մէկն է Դու գիւղը։ "Եւ էր բանակ . . . զօրուն Արեաց ի գեօղն որ անուանի Դու՝ ի սահմանակցութեան Պարսից եւ Հոռոմոց . . . եւ Վահան մերձ ի նա իբրեւ երկուք հրասախօք ի գեօղ մի որ կոչի Մկնառինճ. եւ տեղին, ուր Վահան էր, յիշխանութեան Պարսից թագաւորին էր,,. (414 եր։) . . . Եւ ինքն լուեալ (Հազարաւուխտ) յԱքաղայ իջանէր ի գաւառն Բասեան եւ բանակէր մօտ ի գեօղն Դու, ի դաշտին Աղբերականաց՝ զոր Արծաթաղբերան կոչեն։,, (եր. 446։) Դու գիւղն ընկնում է Հասանխալայի արեւմտեան կողմը կարնոյ լեռների արեւելեան ստորոտում։ Մկնառինճն ինչպէս երեւում է սորանից աւելի հեռու էր ընկնում՝ երկու հրասախ հեռաւորութեամբ դէպի արեւմուտք կամ մի այլ կողմ։ Աղբերականաց դաշտը կարնոյ հիւսիսային կողմն է, ուր գտնւում է այժմ Արծըթի ասուած գիւղը, որ մեր կարծիքով նոյն իսկ Փարպեցու յիշած Արծաթաղբիւրը պէտք է լինի։ Այդ տեղումն են եւ կարնոյ շրջակայքում հռչակուած ջերմուկները։ Փարպեցին բացի այն յիշում է եւ մի Ալվար անունով գիւղ Բասեն գաւառում. այդ գիւղն այժմ եւս կայ եւ ընկնում է Հասանխալայից հարաւ Երասխի աջ կողմը։ Ալաշկերտից Բասեն մտնելու համար միայն մի անցք կայ, այն է Ջրաբաշխ լեռների

Գլ. Ե. արեւմտեան ստորոտների կողմից. այդ անցքն այժմ
6 կոչւում է Ղարա Դէրբէնդ (Սեւ դուռն.) այդտեղից անցնող ճանապարհը ծռւում է ուղիղ Կարնոյ կողմը դէպի արեւմուտք եւ Հասանխալայի արեւելեան կողմից Երասխի վերայից անցնում է Չօպան-Քէօպրուի կամրջով։ Երեւի նոյն իսկ ճանապարհն եւս եղել է Ե. դարում, որ կարողացել են առանց Արարատեան գաւառը մտնելու Բագրեւանդից անցնել Բասեն եւ հասնել Դու գիւղը կամ Կարնոյ շրջակայքը։ Եթէ այդ ճանապարհն էր Պարսիկների սովորական ճանապարհը, այն ժամանակ պէտք է կարծել, որ նոքա Հեր եւ Զարեւանդ գաւառից բարձրանում էին Արտազ գաւառով դէպի Ծաղկոտն գաւառի սահմանները, Ղազի գեօլ ասուած անցքից մտնելով Ալա դաղի (Ծաղկէ կամ Ծաղկաց լեառն) հիւսիսային երեսը՝ այժմու Բայազդի կողմերը. եւ այնտեղից Եփրատի ափերովն անցնելով Ալաշկերտու դաշտերը՝ հասնում էին յիշեալ Սեւ դուռն ասուած անցքին։ Այս ամէնը հաստատւում է նորանով, որ Վարդանանց եւ Վահանեանց պատերազմների ժամանակ մեծ մասով յիշւում են Հեր, Զարեւանդ, Արտազ, Ծաղկոտն, Բագրեւանդ եւ Բասեան գաւառների անունները իբրեւ զինուորական կամ պատերազմական իրողութեանց տեղեր։

Դու գեղի տեղագրութիւնը որոշելուց յետոյ մենք կարող ենք հաստատ ասել, որ Ե. դարում Պարսից եւ Յունաց տէրութեան սահմաններն արեւմուտքից որոշւում էին Կարնոյ լեռներով — կամ թէ Երասխի ակունքն էին վերջին սահման Պարսից կողմից եւ Եփրատի (հիւսիսի) ակունքն Յունաց կողմից։

---

7. Ցուարածատափ, Ցուրուբերանի գաւառներից մէկն է։

---

8. Որդւոցն Վասակայ եւ այլն։

Յազկերտ Բ.ը նախարարներին արձակելու ժամանակ՝ իբրեւ երաշխաւորութիւն, որ Հայերն եւ





Վրացիք կ՚ընդունէին կրակապաշտութիւն՝ պատանդ տուաւ իւր մօտ Հայոց մարզպան Վասակի երկու որդւոցը՝ Բաբիկին եւ Ատրներսէհին եւ Վրաց բդեշխ Աշուշային: Հայերի համար շատ անսովոր բան չէր պատանդ տալը. ինչպէս գիտենք Արշակունի թագաւորների որդւոց մէկը գրեթէ ամէն անգամ, երբ մի որեւիցէ քաղաքական կասկած էր ծագում Բիւզանդացւոց մէջ, պատանդ էր լինում Բիւզանդիայում. նոյնմանապէս մարզպանութեան ժամանակ այդ երեւոյթն անպակաս էր Պարսից Դրան առաջ. Վահան Մամիկոնեանի եղբայր Վարդ Մամիկոնեանն էլ պատանդ էր Պարսից Դրանն իբրեւ գրաւական Մամիկոնեանների հաւատարմութեան եւ այլն:

Ղազար Փարպեցին ասում է մի տեղում թէ Աշուշայ բդեշխը Վարդան Մամիկոնեանի քենեկալն էր. բայց այդ կասկածելի է. որովհետեւ Վարդանի եւ Աշուշայի մէջ այլ տեսակ մերձաւորութիւն կար, եւ մինչեւ անգամ այնպիսի՝ Աշուշան ոչ թէ Վարդանի քենեկալն էր, այլ նորա եղբօր Համայեակի. նոյն իսկ Փարպեցու վկայութիւնները կարող են ապացոյց լինել սորան. նա ասում է, որ Վահանի մայրը, որ է Համայեակ Մամիկոնեանի կինը, Զուիկ՝ Աշուշայի կնոջ Անուշվռամի քոյրն էր: Ուրեմն Աշուշան Վարդանի քենեկալը լինել չէր կարող. սակայն նոքա խնամութիւն ունէին մէկ ուրիշ կերպով. Փարպեցու տուած տեղեկութիւնների վերայ հիմնուելով մենք բերում ենք հետեւեալ ճիւղագրութիւնը Ե. դարու Մամիկոնեան եւ Արծրունեաց ցեղերի մէջ եղած մերձաւորութեան պատկերը ցոյց տալու եւ դորանից սպասելի կարեւոր եզրակացութիւններն հեշտացնելու:

Գլ. Է.
8

1. Ս. Սահակ Պարթեւ († 439 Թ.) Լուսաւորչի թոռան թոռն որդին. սորա միակ դուստրը Սահականոյշ:
2. Համազասպ Մամիկոնեան՝ Սահականոյշի մարդը. սոցա ամուսնութիւնից ծնան՝ Վարդան, Հմայեակ եւ Համազասպեան:

| | | |
|---|---|---|
| 3. | Վարդան Մամիկոն. († 451 Թ.) Դստրիկ տիկին. սոցանից ծնան՝ | 3. Հմայեակ Մամիկ. († 453 Թ.) Ձուիկ տիկին. սոցանից ծնան՝ |
| 4. | ա) Շուշանիկ կամ Վարդենի. Վազգէն՝ Աշուշայի որդին.<br>բ) անուանն անծանօթ. Արշաւիր Կամսարական. սոցանից ծնան՝ | 4. ա) Վահան Մամիկոնեան.<br>բ) Վարդ Մամիկոնեան.<br>գ) Վասակ Մամիկոնեան.<br>դ) Արտաշէս Մամիկոնեան. սորա որդին՝ |
| 5. | ա) Ներսէհ Կամսարական.<br>բ) Հրահատ Կամսարական.<br>գ) Սահակ Կամսարական. | 5. Գրիգոր Մամիկոնեան: |

Թէ Ձուիկ տիկինն Աշուշայի քենին է, այս երեւում է հետեւեալից.

1. Վասակ իշխան Արծրունի. սորա զաւակներն են՝

| | Դուստրք | | Որդիք |
|---|---|---|---|
| 2. | ա) Անուշվռամ. Աշուշայ բդեշխ. | բ) Ձուիկ. Հմայ. Մամիկ. | ա) Աղան Արծրունի (տես գլ. Թ. 2.)<br>բ) Մեհրուժան Արծր.<br>գ) Ցաճատ Արծրունի.<br>դ) Գոտորզ Արծրունի. |
| 3. | ա) Վազգէն. Շուշանիկ.<br>բ) Ջոջիկ. | 3. Վահան Մամիկ. եւ եղբարք: | |

Այս ամենից երեւում է, որ Աշուշան երկու կերպ մերձաւորութիւն ունէր Մամիկոնեան տան հետ:

---

9. Փաղկոտն գաւառ:

Այրարատեան աշխարհի գաւառներից մէկն էր, որ սահմանակից էր հիւսիսից Ճակատքին, արեւելքից Արտազին, հարաւից Վասպուրականի Աղիովտին եւ արեւմուտքից Բագրեւանդին:

Բարդող լեռներից հարաւ Արածանու (Եփրատի) Գ. Ե. 8
ակունքը զննելիս՝ մենք կը տեսնենք մի լեռան իւր գօտ-
ւովը Մասիսի հետ միացած. այդ լեռան է հին Ծաղ-
կոց լեռն ասուած՝ արդի Ալա անունով սարը եւ
Ալադաղ գօտին։ Այդ եւ Մասեաց գօտու մէջտեղը
կայ մի հովտաձեւ բարձրաւանդակ ըստ մեծի մասին
լեռնոտ եւ լիքն անթիւ առուակներով. այդ բար-
ձրաւանդակն իւր լեռներով եւ էր հին Ծաղկոտն
գաւառը։ Այժմ դա Ալաշկերտին սահմանակից է.
դորա մէջն է Բայազիդ քաղաքը, սորա հարաւային-
արեւելեան կողմից Ալադաղ գօտու միջից անցնում է
Դաղի գեօլ ասուած կիրճը. այս կիրճը միակ անցքն
է Արտազից Ալաշկերտ գնալու եւ ապա Սեւ դուռն
ասուած կիրճով Զրաբաշխ լեռներիցն անցնելու եւ
Բասեն մտնելու։ Այս կիրճի նշանակութիւնն այսպէս
մեծ լինելուց՝ պէտք է կարծել որ սորա մօտերը պէտք
է անպատճառ մի պահակ կամ բերդ լինէր։ Փարպե-
ցին մի բերդի մասին յիշում է, բայց մեզ յայտնի չէ
թէ ո՞ւր էր գտնուում այն բերդը. Նա ասում է.
"Գային հասանէին ի գաւառն, որ կոչի Ծաղկուտն,
Մերձ ի բերդն ամուր, զոր Անգղն* անուանեն.,, (ե-
րես 174, Ղազար։) "Իսկ գունդն Հայոց եկին հասին
յաշխարհն Հայոց ի գիւղաքաղաք մի մեծ որում անուն
էր Անգղ.,, (եր. 47, Եղիշէ)։

Անգղ բերդն ու Անգղ գիւղաքաղաքը տարբե՞ր
են իրարուց թէ միեւնոյնը՝ այդ մեզ յայտնի չէ։

Պարսկաստանից եկող մոգերի եւ հայ նախարար-
ների գունդը դադար առաւ Անգղ գիւղաքաղաքում.
պէտք է կարծել որ այդ Անգղը Հայաստանի արեւե-
լեան-հարաւային կողմերումն էր։ Իսկ Ծաղկուտն
գաւառում գտնուող Անգղ բերդը պէտք է որոնել
այժմու հին Բայազիդ քաղաքի մօտերում։

* Այն Անգղ բերդը որն այժմ Էգիլ է կոչուում հին
ժամանակներն Յոյներին յայտնի էր Ինգիլա անունով եւ
գտնուում էր Չորրորդ Հայքի Ծոփաց աշխարհում
Տիգրիս գետի վերայ։ Այդ Անգղը չի կարող Եղիշէի կամ
Ղազարի յիշածը լինել, ըստորում ոչ ճանապարհի վե-
րայ է եւ ոչ էլ Պարսից իշխանութեան մէջն էր Ե. դա-
րում։ Այդ Անգղը հին Անգեղտան կեդրոնն է։

Գլ. Է. 8

Այժմ կայ մի Անգղ գիւղ Վանայ ծովակի արեւելեան կողմը Խօշապ գետի վերայ հին Տոսպայ գաւառում, ուր գտնւում է մի վանք Անգղոյ Աստուածածին անունով՝ մօտն էլ մի գիւղ միեւնոյն անունով. արդեօք Եղիշէն այդ Անգղն ունէր աչքի առաջ թէ Բայազիդի կողմերինը, դժուար է որոշել. սակայն, որովհետեւ Վասպուրականի երէցներն էլ շատ փնտռեցին մոգերին՝ Ռշտունեաց եպիսկոպոսն, Արծրունեաց դրան երէցն եւ այլք, ուստի պէտք է կարծել որ Վանայ կողմերի Անգղն էլ մի նշանակութիւն ունեցել է այն ժամանակ։ — Շոպէնն ասում է Անգղ բերդը Դուինից 120 ասպարէզ՝ այսինքն մօտ 36 վերստ հեռու է. եւ ենթադրում է, որ Անգղ եւ Անկլօն* միեւնոյն է։ Ծաղկունեաց գաւառում էր եւ Վարշակ ասուած Ջերմուկը, որի տեղագրութիւնն անձեռնհաս ենք որոշելու։

* Թէ ի՞նչ հիման վերայ է յայտնում Շոպէնն այս կարծիքը, չգիտենք եւ թէ ի՞նչ է Անկլօն կամ ո՞ւր է, այդ էլ մեզ յայտնի չէ եւ դժուարանում ենք բացատրել։



## ԳԼՈՒԽ Ը.

1. *Արքունիք*, տես գլ. Բ. 3։

2. *Յաւուրս Շապհոյ։*

Այս այն Շապուհն է, որն յայտնի հալածանք յարոյց քրիստոնէութեան վերայ եւ Մեհրուժան Արծրունի ուրացող նախարարի միջնորդութեամբ Հայաստանի մէջ շատ քրիստոնեաների արիւն թափեց։ Այդ ժամանակուայ հալածանքների մասին է մոգպետի խօսածը Վասակ մարզպանի հետ։ Տես Ծան. գլ. Բ. 2. եւ Խոր. Գիրք Գ. գլ. ԼԶ։

---

3. *Ռոճիկ* Պարսից ռոզ (օր) խօսքից է եւ նշանակում է օրական հասոյթ կամ պաշար։ "Ռոճիկ տաճարին" այստեղ նշանակում է կրակատների օրական պաշարը փայտի եւ այլ պիտոյքների։

---

4. *Սպարապետն զօրաց։*

Այս սպարապետը Վարդան Մամիկոնեանն է։ Մամիկոնեան նախարարութիւնը հաստատուաւ Հայաստանում Տրդատ թագաւորի օրով, երբ Տարօն գաւառի տէր Սլուկ Սլկունին ապստամբելով թագաւորի դէմ՝ ամրացել էր իւր Ողկան բերդում եւ Տրդատը ժամանակ չունէր նորա ապստամբութիւնն անձամբ պատժելու. հրաման արաւ թէ ո՛վ որ Սլուկին սպանէ, նորան կուտամ Սլուկի բոլոր իրաւունքներն եւ կալուածքը։ Մի գաղթական Մամգուն անունով, որն՝ ինչպէս Խորենացին ասում է, Ճենաց աշխարհից էր եկած, կարողացաւ կատարել թագաւորի հրամանը եւ ստացաւ Տարօն գաւառն ու նախարարական պատիւ։

Մամգունից յառաջացաւ եւ Մամիկոնեան ցեղը. սակայն երկար ժամանակ այդ ցեղը համարուում էր

Գլ. Ը. 4 կրտսեր նախարարութիւնների կարգից. Ե. դարում այդ նախարարութիւնն հասաւ մինչեւ 5րդ գահը, բոտորում Սահակ Պարթեւ հայրապետն արական ցեղից ժառանգ չունենալով՝ աշխատեցաւ իւր տոհմական ժառանգութիւնն հաստատել իւր դստեր Սահականոյշի վերայ, որն ամուսնացած էր Համազասպ Մամիկոնեանի հետ. ուստի անձամբ Տիզբոն գնալով* Պարսից Արտաշիր թագաւորից հրաման առաւ, որ դիւանական մատենում Համազասպ Մամիկոնեանն եւ նորա սերունդը 5րդ բարձի վերայ գրուի եւ սպարապետութեան պաշտօնն էլ նորան յանձնուի։ Համազասպ Մամիկոնեանից սկսած Մամիկոնեանները մեծ անուն ստացան եւ մեծամեծ ծառայութիւններ արին Հայոց երկրին։ Այդ Համազասպն երեք որդի ունեցաւ՝ Վարդան, Հմայեակ եւ Համազասպեան, որոնցից առաջինը, երեւի աւագութեան** իրաւունքով, կոչւում է տէր Մամիկոնէից եւ իւր հօր մահից յետոյ վարում է սպարապետական պաշտօնը։ Երեք եղբայրն էլ այն մեծ պատերազմի գործերում մասն ունէին, որը սովորաբար նոյն իսկ Վարդանի անունով կոչւում է Վարդանանց պատերազմ։

---

* Տես գլ. Ա. 3. Նախարարք։

** Բացի այն ինչոր գլ. Ա. 4, 6 եւ գլ. Է. 8 յիշուած է Վարդանի մասին, հարկ է աւելացնել եւ այս, որ նա, ինչպէս երեւում է, ոչ միայն իւր ցեղի մէջն էր աւագ, այլեւ միւս նախարարների մէջ եւս։ Այս երեւում է հետեւեալ ենթադրութիւնից. ինչպէս գիտենք Վարդանը 404—406 թուականներին Ս. Սահակ Պարթեւի կողմից Բիւզանդիոյ կայսեր մօտ դեսպան գնաց Ս. Մեսրոպի հետ միասին. եթէ այդ միջոցին նա գոնէ 20—25 տարի հասակ ունեցած լինէր, ուրեմն 451 թուին (այսինքն նորա մահուան տարին) պէտք է լինէր մօտ եօթանասուն տարեկան մարդ։ Ցայտնի է թէ այս հասակի մարդիկ արեւելքում որքան պատկառելի են եւ նահապետական աշխարհում որքան նուիրական։ Աւագ նախարարների մէջ Վարդանին հասակակից մարդիկ չկային. եւ եթէ լինէին էլ նոցանից ոմանք աննշան էին թերեւս եւ ոմանք էլ հաւատարմութեան անարժան, ինչպէս օրինակ Վասակ Սիւնին, որ 450 թուականներին նոյնպէս մօտ 70 տարի հասակ պէտք է ունենար։

5. Կնքաւոր մարդկան։

Կնքաւոր խօսքը նշանակում է կնքուած, մկըրտուած. այժմ եւս այդ խօսքը գործ է ածուում "կընքահայր„ խօսքի տեղ. եւ գուցէ աւելի ուղիղ է "կնքահայր„ խօսքի տեղը նէ+ա—ր ասել, ըստորում "անկնունք„ մարդին "կնքաւոր„ մարդը կարող է երաշխաւոր կանգնել մկրտութեան ժամանակ։ Մըկըրտութեան հանդէսին մեր ժողովուրդն ասում է "կնունք„, որից եւ յառաջացել է նէա—նէ+ա—ր կամ նէ+ա—ր խօսքը։ Այսպատճառով սխալ կըլինի կարծել, որ "կնքաւոր կամ կնքահայր„ խօսքը "կնիք„ այսինքն դրոշմ խօսքից կազմուած լինի։ Բայց թէ ի՞նչ է նշանակում իրօք այդ "կնունք„ խօսքը, չգիտենք. երեւում է, որ դա շատ հին խօսքերից է, որ ժողովրդի բերանումը պէսպէս ձեւեր եւս ստացել է. շատ կարելի է որ նէա—նէ+ եւ նէէ+ խօսքերի արմատները միատեսակ լինին, բայց այդ միայն ենթադրութեան բան է, քանի որ մենք այդ խօսքերից ոչ մէկի պատմութիւնն էլ չգիտենք. այսքանս մեզ այժմ յայտնի է, որ "կընքաւոր„ խօսքը այսօր մեր աչքի առաջ +ա—ր է դառել (այնպէսոր ամբողջ նէա—նէ+ խօսքից միմիայն մի ք դիրն է մնացել այդ "քաւոր„ խօսքի արմատում). արդեօք ի՞նչ կերպարանափոխութիւն պիտի կրած լինի նոյն ինքն "կնունք„ խօսքը անյիշատակ դարերից հետէ։

Հայոց լեզուով ժողովրդի գործածութեան մէջ —ր մասնիկը խօսքի վերջում (երբեմն յառաջընթաց ձայնաւոր գրով (ա, է) տալիս է խօսքին "մի բանում մասն ընդունողի նշանակութիւն„. այսպէս օրինակ՝— Պսակ = ամուսնութեան կարգի հանդէսն է. իսկ պ+ա—ր այդ հանդէսին մասնակցող մարդիկն են կոչուում. Հարսնիք, հարսնէ—ր = հարսնիքում գըտնուող. Քօղք = հարսի քօղն է. +օղ+ը—ր = քօղքն հարսի տունը տանող հանդիսականների խումբն է. Ճէհէզ (տաճկի խօսք է), որ նշանակում է օժիտ. ճէհէզ—ր = օժիտը հարսին տանող հանդիսականներն

Գլ. Ռ. են. Բաղնիս, Բաղնետոր = բաղնիսում լողացողները.
5 Ուխտ, ուխտատոր, Ժամ, ժամատոր, Տուն, տնատոր եւ այլն: Այսպէս՝ "կնունքի" հանդէսին մասնակցողներին էլ ասում են կնատոր կամ կնքատոր. չմկրտուածին ասում են անկնատ. կնունք խօսքի սեռական հոլովը լինում է՝ կնունքի կամ կնընքի. զորօրինակ երկու տեսակն էլ ասում են "կնունքի հաց" կամ "կնընքի հաց:"

6. Հաւատաւոր կանանց:

"Հաւատաւոր" խօսքն այստեղ՝ հաւատացեալ այսինքն քրիստոնեայ է նշանակում. այդ մտքով գործածուում է շատ հազիւ: Առհասարակ "հաւատ" խօսքից երկու գործածելի խօսք կայ "հաւատարիմ" եւ "անհաւատ." ուրիշ տեսակ բարդութիւնք կամ բաղադրութիւնք շատ հազիւ են պատահում:

Առ ձեռն բառարանում "հաւատաւոր" խօսքի ստուգաբանութիւնը այսպէս է գրած՝ "հաւատաւոր = հաւատաւոր, կուսան, մարտպետ." Թէ ինչո՞ւ է այդպէս ստուգաբանուած, մեզ անհասկանալի է. Եղիշէի խօսքերից այդ չի երեւում: Գուցէ այն պատճառով, որ կանանց մասի՞ն է խօսում Եղիշէն:

---

7. Վանք այստեղ նշանակում է ժամանակաւոր կեցարան կամ իջեւան, այլ ոչ թէ այն՝ ինչ մտքով որ այժմ ենք գործածում: Վանք՝ մենաստանի նշանակութեամբ անշուշտ փոխաբերական է եւ միեւնոյն վանք՝ իջեւան խօսքն է: Աշխարհից հրաժարուող կուսակրօնների համար վանքը մի իջեւան է, որտեղ ապրում են՝ ըստ աշխարհի իբրեւ մի անցորդ եւ ըստ կրօնականի իբրեւ մի ուղեւոր դէպի իւրեանց բուն նպատակը — դէպի երկնային աշխարհը:

Հայոց լեզուի մէջ կան խօսքեր՝ օթեւան, իջեւան, որոնք ըստ մեր կարծեաց = բարդ խօսքեր են եւ կազմուած են օթել եւ իջ-անել բայերի արմատներից եւ վան խօսքից. այսպէս՝ օթ-ե-վան նշանակում է օ-

թելու, գիշեր անց կացնելու տեղ. իջ-և-վան, ցած գալու, հանգստանալու տեղ։ Այս երկու բառն էլ կարճ ժամանակ դադարելու տեղեր են նշանակում ընդհանրապէս։ Եւ այս հաստատում է այն միտքը, որ վանք կամ վան խօսքը մի ժամանակաւոր կեցարան, կամ դադարելու տեղ է նշանակում։

---

8. Արծակ գիւղ } տես գլ. Է. 5. Բագրեւանդ գաւառ։
9. Բերդկունս գիւղ }

---

10. Բանակ։

Ուխտապահներն իրենց զօրքը երեք մաս բաժանեցին եւ յարձակեցան այն բանակի վերայ, որը Վասակ մարզպանի ձեռքն էր. այդ բանակումն էին եւ մոգերն ու մոգպետը։

---

11. Զարեհաւան գիւղ, տես գլ. Է. 5։

---

12. Արտաշատ, տես գլ. Դ։

---

13. Գառնի։

Երեւան քաղաքից արեւմտեան հարաւ Ազատ գետի (Գառնի չայ) ձորերում կայ մի փոքրիկ գիւղ այդ անունով։ Այդ տեղումն էր հին Գառնի քաղաքը եւ նորա բերդը։ Այստեղի ամրոցի մասին Խորենացին գրում է գիրք Բ. գլ. Ղ. "կատարէ, ասում է, Տրդատ զշինուած ամրոցին Գառնոյ, զոր որձաքար եւ կոփածոյ վիմօք, երկաթագամ եւ կապարով մածուցեալ. յորում շինեալ եւ տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի դրօշուածովք, բարձր քանդակաւ, ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ. եւ գրեալ ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով։" Այս ամրոցի եւ սորա մէջ յիշուած հովանոցի հոյակապ աւերակները մինչեւ





ԴՆ: Ը. հիմայ կան Գառնի գիւղի մօտ. տեղացիք "Տրդատայ
13 Թախտ,, են ասում հովանոցի աւերակներին։

---

14. Անի։

Երթեալ բանակէին մօտ ի պարիսպ բերդին ...
Անի (եր. 366, Ղազար)։ Եւ առնուին զանմատոյց ամուրսն՝ զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս եւ
այլն (եր. 56, Եղիշէ)։

Երկու Անի կայ եւ երկուսն էլ հինգերորդ դարում բերդեր էին։ Մէկը գտնուում է Հայաստանի
Բարձր Հայք նահանգի Դարանաղեաց գաւառում՝
այժմու Երզնկայ քաղաքից ոչ հեռու Եփրատի վերայ
եւ այժմ կոչուում է Կամախ կամ Կամախք. այս բերդը
հին ժամանակները կռապաշտութեան կեդրոններից
մէկն էր, ուր գտնուում էին Արամազդի պատկերը եւ
Յունաստանից բերած ուրիշ շատ կուռքեր։ Այս Անի
ամրոցում կամ Կմախքում պահուաւ Օտայ Ամատունին Խոսրովիդուխտի հետ միասին մինչեւ Տրդատի
թագաւորելը։

Միւս Անի բերդը գտնուում է Այրարատ նահանգի Շիրակ գաւառում Ախուրեան գետի վերայ։
Հինգերորդ դարում այդ բերդը պատկանում էր Կամսարական նախարարներին. բայց յետոյ անցաւ Բագրատունի նախարարների ձեռքը. Աշոտ Բագրատունին
783 թուին վերանորոգեց եւ ամրացուց այս բերդը.
961 թուին Աշոտ Գ. Ողորմածը փոխադրեց այստեղ
իւր թագաւորական աթոռը եւ այն օրից Անի բերդը
իբրեւ մայրաքաղաք Բագրատունեաց հարստութեան
սկսեց ծաղկիլ եւ յառաջանալ. ասում են որ այդ
քաղաքն ունեցել է մինչեւ 100 հազար բնակիչ եւ
1001 եկեղեցի. այդ քաղաքի ճոխութեանն ու ամրութեանը վկայ են մինչ ցարդ կեցող հոյակապ եկեղեցիների եւ պալատների աւերակները։ 1045 թուին
Անին մատնուաւ Յունաց ձեռքը եւ վերջացաւ Բագրատունեաց թագաւորութիւնը. այնուհետեւ Յունաց,
Արաբացւոց, Սելջուքների, Թաթարների եւ Վրացւոց

Դ. Ը. 14

*արշաւանքների տակ Անին կորուց բոլոր իւր չքեղու-թիւնն եւ հարստութիւնքը. 1349 թուին երկրաշար-ժը միանգամայն քայքայեց տակնուվերայ արաւ Ա-նու շինութիւնները եւ նոցա բնակիչներն ստիպուան ապաստան գտնել հեռաւոր երկրներում՝ Ղրիմում, Լեհաստանում եւ Փոքր Ասիայի գաւառներում։ Այժ-միս Անի քաղաքի տեղում կայ նոյն անունով մի փոքրիկ գիւղ մահմետականների. եւ նորա լայնատա-րած անբնակ դաշտերի վերայ արձակ շրջում են Քուրդ հովիւների հօտերը։ Անի քաղաքի աւերակները նկա-րագրել են շատ ճանապարհորդներ թէ օտար եւ թէ մերազնեայ, բայց տեղում հետազօտութիւն անօղ չէ գտնուել. հազիւ թէ մի ուրիշ հին հռչակաւոր շէնի աւերակներն այսպէս ամբողջ մնացած լինին, ինչպէս Անի քաղաքինը. այս պատճառով հնախօսները կարող են շատ հետաքրքիր նիւթ գտնել պատմութեան հա-մար այդ հողումոխրի մէջ թաղուած հոյակապ աւե-րակներում։ Անի քաղաքի վերայ կան եւ շատ առաս-պելներ։*

*Անի քաղաքի անունն յայտնի է օտարներին հե-տեւեալ ձեւերով. Մահմետականք ասում են Անի, Ասորիք՝ Անօ, Յոյներն՝ Անիօն։ Շօպէնն ասում է թէ Անի խօսքը Եբրայական ծագումն ունի եւ նշանակում է — Եա Ինօ։ (*)*

*Եղիշէի եւ Ղազար Փարպեցու յիշած Անին, ինչ-պէս երեւում է պատմութեան մոքից, Շիրակ գաւա-ռումն է։*

— —

15. *Արտագերս։*

*Հայաստանի ամենահին բերդերից մէկն էր, որ գտնուում էր Արշարունեաց գաւառում ոչ հեռու հին Երուանդաշատից։ Չորրորդ դարում այս բերդը Արշարունեաց տէր Կամսարական նախարարներին էր պատկանում, որոնցից խլեց բռնութեամբ Արշակ Բ. թագաւորը. այնտեղ ամրացաւ յետոյ նորա փառան-ձեմ թագուհին արքունի գանձերով միասին։ Հին-գերորդ դարում Արտագերսը դարձեալ պատկանում*

Գւ. Ը. 15 էր կամսարականներին եւ այն բերդերի թուումն էր, որ աւերեց Վասակ Սիւնին միւս Այրարատեան բերդերի ու ձմեռոցների հետ միասին։ Եօթներորդ դարում Արտագերսն անցաւ Մամիկոնեան նախարարների ձեռքը, իսկ տասներորդ դարում Բագրատունեաց թագաւորութեան ամուր բերդերից մէկն էր։ Ոմանք Արտագերսն եւ Կապոյտ բերդը միեւնոյն են համարում, բայց Եղիշէն թուելով այն բերդերը, որոնք աւերեցին ուխտապահներն Ե. դարում*, Արտագերսի եւ Կապոյտի անուններն առանձին առանձին է յիշում միւսների կարգում (տես եր. 56)։ Արտագերս բերդը, Շօպէնի կարծիքով, գտնուում էր արդի Սուրմալուայ գաւառակում։

* Այս բերդերն են՝ Արտաշատ, Արտագերս, Անի, Արհնի, Արփանեալ, Բողբերբերդ, Գառնի, Գոհեալ Երեւանաբերդ, Խորանիստ, Ծախանիստ, Կապոյտ, անկասկածելի Ողական, Որոտն, Վան աւան, Վաղարշապատ։ Սոցանից մի քանիսը հաւանական է, որ Սիւնեաց գաւառում լինէին՝ Վասակ մարզպանի տէրութեան մէջ։ Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեաց իւր պատմութեան մէջ գլ. ՀԳ. թուում է Սիւնեաց երկրի գիւղերի անունները, որոնց մէջ պատահում են եւ հետեւեալները. Երկայնարտ կամ Երկայն արտ եւ Կապոյտք՝ Վայոց ձորում. Վանաւան՝ Գեղարքունի գաւառում. մի քանի գաւառներում յիշում է նաեւ՝ Վասակակերտ, Վասակաշէն անունները։



## ԳԼՈՒԽ Թ.

1. *Բդեաշխն Աղձնեաց, իշխանն Անգեղտան եւն։*

Այս իշխանները՝ Յունաց բաժնի Հայաստանում էին գտնւում. նմանապէս Ծոփք, Հաշտեանք, Եկեղեաց գաւառները Յունաց բաժնի մէջն էին. եւ այդ բոլորին վերակացու էր “մեծ սպարապետն Անտիոքայ կամ Արեւելից Անատոլ,, որը շինեց Կարին քաղաքը Եփրատայ ակունքներում եւ անուանեց Թէոդոսուպօլիս։

---

2. *Աղան Արծրունի։*

Վասակ Արծրունու որդին, յառաջ զինուորական, յետոյ Սահակ պարթեւի օրհնութեամբ եղաւ կրօնաւոր եւ գնաց Յունաց աշխարհն ուսում առնելու. աւագ թարգմանիչներից մէկն էլ, ինչպէս երեւում է, Աղան Արծրունին էր. սորա մէկ քոյրը Զուիկ անունով՝ Համայեակ Մամիկոնեանի այսինքն Վարդանի եղբօր կինն էր եւ Վահան Մամիկոնեանի մայրը, միւս քոյրն էլ Անուշվռամ անունով՝ Վրաց Աշուշա բդեշխի կինն էր, որի տանը մեծացան Վահան Մամիկոնեան եւ իւր եղբայրքը, որոնց հետն էր եւ մեր պատմիչը Ղազար Փարպեցին՝ Աղան Արծրունու աշակերտը։ Տես գլ. Է. 8։

---

3. *Առաքեցին յերկիրն արեւմտից խնդրել օգնութիւն եւ եթէ նա կամեսցի, նմա մտանել ի ծառայութիւն։*

Այս նախադասութիւնները գործին անծանօթ մարդու համար կարող են շատ անհասկանալի լինել. “առաքեցին, ասում է, յերկիրն արեւմտից . . . եւ եթէ նա կամեսցի,, (ո՞վ, երկի՞րը)։ Պէտք է ասել “առաքեցին յերկիրն արեւմտից (առ կայսրն Յունաց Թէոդոս) խնդրել օգնութիւն եւ եթէ նա կամեսցի՝ նմա մտանել ի ծառայութիւն։,, Սորանից երեւում

Գլ. Թ. 3

է, որ Հայերն ուզում էին Յոյների օգնութեամբ կռուել Պարսիկների հետ եւ ի փոխարէն այդ օգնութեան առաջարկում էին նոցա իրենց հպատակութիւնը։

Այն թուղթը որ Հայերն ուղարկեցին Թէոդոսին գրուած էր բոլոր նախարարների եւ Վասակ մարզպանի բերանից։ Եղիշէն ասում է, որ այդ թուղթն ուղարկեցին Ատոմ Գնունի անունով մեծ նախարարի ձեռքով. իսկ Ղազարն ընդհակառակն Ատոմի անունը բնաւ չի յիշում այլ ասում է, որ ուղարկեցին Վահան Ամատունուն, Հմայեակ Մամիկոնեանին եւ Մեհրուժան Արծրունուն (տես գլ. Գ. 2 եւ գլ. Է. 8)։ Հաւանական է որ Ատոմ Գնունին էլ այս նախարարներին ուղեկից եղած լինի։

Այս դեսպանութեան նպատակը գլուխ չեկաւ, որովհետեւ Անատոլ սպարապետը (տես գլ. Թ. 1.) եւ թագաւորի դրան աւագն Եղփարիոս (ըստ Ղազարու՝ Փլորէնտ) ասորին — "երկրքեան անարգի եւ վատթար արանց, միանգամայն եւ անաստուածք„ — Թէոդոս կայսեր վերահաս մահից յետոյ (450 թ.) կարողացան համոզել Մարկիանոս կայսերը, որ հրաժարուի Հայերին օգնելուց*։ Սոցա լսելով անօրէն Մարկիանոսը նոյն իսկ Եղփարիոսին դեսպան ուղարկեց Պարսից թագաւորի մօտ եւ վերահաստատեց իւր նախնեաց բարեկամութիւնը՝ յայտնելով միեւնոյն ժամանակ, որ Հայերին օգնելու չէ բնաւ։

---

4. *Խաղխաղ։*

Եղիշէն ասում է, որ Խաղխաղը քաղաք է, իսկ Ղազարը թէ գիւղ է։ Ագաթանգեղոսը Խոսրով Ա. ի

* Թերեւս Անատոլին եւ Եղփարիոսին ձայնակից էր եւ Յունաց բաժնում բնակող Մամիկոնեաններից մէկը՝ Վասակ, որն այն ժամանակ Բիւզանդիոյ իշխանութեան տակ "Սոորին Հայոց„ սպարապետ էր եւ "արտաքոյ էր օրինացն Աստուծոյ գործովք իւրովք։„ Այս Վասակն ունէր հաղորդակցութիւն ուրացեալ Վասակ Սիւնու. հետ եւ ծածկաբար շատ վնասել է ուխտապահներին. տես Եղիշէ, եր. 162։

*մասին պատմելիս ասում է. (եր. 9.) "Եկեալ՝ յամ. Դւ. Թ. գիման եղեւ (Անակ) արքային Խոսրովու՝ յՕտի գաւառի ի Խաղխաղ քաղաքի ի ձմերոցս արքայութեան Հայոց։" Սորանից երեւում է, որ Խաղխաղն Ուտի գաւառումն է եւ Խոսրովի ժամանակ (Գ. դար Ք. յտ.) Հայոց թագաւորների ձմերոցն է եղել։ Բայց Ե. դարում Խաղխաղն արդէն Աղուանից քաղաք է համարուում. ըստորում Եղիշէն ասում է "պատահէր (Սեբուխտ) մերձ ի սահմանս Վրաց հանդէպ Խաղխաղ քաղաքի, որ ձմերոց էր թագաւորաց Աղուանից։"*

*Միեւնոյնը կրկնում է եւ Մովսէս Կաղանկատուացին. եւ երկուսն էլ ասում են, որ պատերազմից յետոյ յաղթուող եւ փախչող զօրքը ցիրուցան եղաւ Լուբնաս գետի ձորերի մէջ. ուրեմն Խաղխաղները (Ագաթանգեղոսի, Եղիշէի եւ Կաղանկատուացու) զանազան չեն։ — Ինչպէս երեւում է Լուբնաս գետը նոյն Ջեղամ գետն է, որ Սեւանի հիւսիսային լեռներից թափուելով իջնում է Կուր գետի ծոցը աջ կողմից ոչ հեռու արդի Ելիզաւէտապօլ (Գանձակ) քաղաքից։ Եւ այդ գետի վերայ յիշուում է այժմս մի գիւղ Խիլխանալու անունով. թերեւս այդ գիւղի տեղն եւ եղել է յառաջ՝ երբեմն Հայոց եւ ապա Աղուանից թագաւորական ձմերոցը Խաղխաղ (Խալխալ)։*

---

*5. Ցեսանէր, զի ածէին առաջի իւրեանց զբազմութիւն զօրաց Պարսից։*

*Ածել բայը գրոց լեզուով նշանակում է բերել կամ տանել. այստեղ ընդհակառակը նա գործ է ածուել այն նշանակութեամբ՝ ինչոր աշխարհաբարում մենք սովոր ենք ասել այժմ Նախելու մաքով. "ածէին առաջի իւրեանց" նշանակում է "թափում էին իրենց առաջը, վէր էին ածում իրենց առաջին" այլ ոչ թէ բերում էին իրենց առաջը։ — Ածել խօսքը թէրեւմի նշանակութեամբ գործ ենք ածում արդի լեզուով միմիայն հաւերի վերաբերութեամբ, երբ ասում ենք "ձու ածել։" Ընդհակառակն ուրիշ նշանակութիւն-*

Գլ. Թ. 5 ·ներ էլ ունի այդ խօսքն արդի գործածութեան մէջ, որ հներին անծանօթ էր կամ շատ հազիւ էին գործածում։ Այսպէս՝ ‘‘ածել,, խօսքի նշանակութիւններն են՝ 1) բերել. (ձու ածել, ման ածել, եւայլն). 2) լցնել, թափել. (ջուր ածել, աղ ածել, կերակուր ածել), եւ 3) չալել (ջութակ ածել, թառ ածել եւայլն)։

---

6. Լուրնաս, տես վերեւը Խաղխաղ, 4։

---

7. Լերինք Կապիկու կամ ուրիշների գործածած ‘‘կապկոհ,, ոչ այլ ինչ է, եթէ ոչ ‘‘Կովկասեան լերինք,, որին Տփխիսու կողմերում այժմու Հայերն ասում են ‘‘կաւկաւ։,,

---

8. Պահակ հոնաց, տես ‘‘Պահակ ձորայ,, գլուխ բ. 13։

---



## ԳԼՈՒԽ Ժ.

1. Բնրդեան նշանակում է "բերդի մարդիկը." տես Նախարարեան, զօրագլխեան եւայլն գլ. Բ. 3։

---

2. Ձմերոցք արքունի։

**Արուճ։** — Արուճը այժմ մի գիւղ է եւ կոչւում է Թալիշ. սա ընկնում է Արագածի հարաւային աբեւմտեան ստորոտում Սարդարապատից հիւսիս։ Հինգերորդ դարում այդ աւանն եւս արքունի զօրաց ձմերոցների կարգումն էր, որ առաւ Վասակ եւ աւերեց։ 659 թւ. Ք. յտ. երբ Գրիգոր Մամիկոնեանն Հայաստանի կառավարիչ դառաւ իւր հօր Համազասպ Մամիկոնեանի փոխարէն, նա իւր արքունիքը այստեղ հաստատեց եւ 671 թուին մի հոյակապ եկեղեցի եւս շինեց. թէ՛ պալատի եւ թէ՛ եկեղեցու աւերակները տակաւին կան նոյն Թալիշ գիւղում։

**Կուաշ աւան.** (ձմերոց։) — Այս աւանն այժմ էլ կայ եւ կոչւում է Կօշ։ Արագածի հարաւային ստորոտումն է մի բարձրանիստ ոստի վերայ, որի հարաւային կողմից բղխում են Մեծամօր գետի ակները։ Արշակ Բ.ի հայրը Տիրան Բ. երբ Շապուհի խորամանկութեամբ միանգամից զրկուաւ իւր աչքերից եւ թագաւորութիւնից, իւր կեանքի մնացեալ օրերն այստեղ անցկացրեց. մինչեւոր իւր որդին Արշակ Բ. թագաւորը նորան անգթութեամբ խեղդել տուեց ընտանեկան խռովութիւնների պատճառով։ — Կօշայ սուրբ Գէորգն այժմ նշանաւոր ուխտատեղի է, ուր սեպտեմբեր եւ հոկտեմբեր ամիսներին գնում են երկրպագութեան Էջմիածնի ու Մողնու սուրբ Գէորգի ուխտաւորները զանազան հեռաւոր տեղերից։

**Օշական.** — Էջմիածնից երկու ժամու չափ հեռու դէպի հիւսիս Քասաղ գետի վերայ կայ այժմ մի գիւղ այդ անունով, որ պատկանում է Էջմիածնին։ Այս այն գիւղն է, որի մօտերը Վահան Ամատունին

Գւ. Ժ. 2 արաւ իւր մեծ յաղթութիւնը կոտորելով եւ հալածելով հիւսիսական բարբարոսներին, որոնց զանազան հրապոյրներով ուղարկել էր Հայաստանի վերայ Պարսից Շապուհ թագաւորը (Դ. դարում)։ Խոսրով Բ. Տրդատի որդին, որն այն ժամանակ թագաւորում էր, այդ փառաւոր յաղթութեան համար պարգեւեց Վահան Ամատունուն յիշեալ Օշական գիւղը։

Այստեղ է այժմ եւ "Թարգմանչաց գերեզմանը.„ բայց իրօք միայն Ս. Մեսրոպի գերեզմանը պիտի լինի այստեղ. Խորենացին պատմում է թէ երբ Սուրբ Մեսրոպ վախճանեցաւ, նախարարները երկար վիճում էին իրար մէջ, թէ ո՞ւր թաղեն նորան, ըստորում ամէնմէկն ուզում էր իւր կալուածքում ունենալ այդ անգին գանձը. վերջապէս Վահան Ամատունին (յիշեալ Վահան Ամատունու ցեղից) իւր խօսքը թագաւորեցուց. եւ երբ հուշակաւոր Վարդապետի դագաղը Վաղարշապատից Օշական էին տանում, լուսեղէն խաչը, ինչպէս երբեմն աստղը արեւելքի մոգերին, առաջնորդ եղաւ յուղարկաւորներին եւ կանգ առաւ այն տեղում ուր պիտի ամփոփուէին Ս. Թարգմանչի նշխարները։ Այժմ նորա գերեզմանն ուխտատեղի է։

Աշնակ. — Արագածի արեւմտեան հարաւային ստորոտում Թալին գիւղի արեւելեան կողմը կայ մի մահմետականաց գիւղ Աշնակ անունով։ Այդ գիւղն է եւ հին Աշնակ աւանը, որն աւերեց Վասակ միւս ձմերոցների հետ։

Արմաւիր բերդ. — Հինգերորդ դարում արքունի ձմերոցների կարգումն էր եւ Արմաւիրը, որ յառաջ դեռ շատ հին ժամանակներից սկսած երկար միջոց Հայոց թագաւորութեան մայրաքաղաքն էր։ Բայց նորա նշանակութիւնն հետզհետէ կորաւ հետեւեալ պատճառով։ Որովհետեւ Երասխ գետը, որ Արմաւիրի մօտիցն էր վազում, փոխեց իւր ճանապարհը եւ հեռացաւ այդ քաղաքից, որով ջրի կարօտութիւնը նեղացնում էր ժողովրդին, ուստի (Ա. դարում Ք. յտ.) Երուանդ Բ. Երասխաձորում մի նոր քաղաք շինեց այն տեղումն ուր Ախուրեանն եւ Երասխ խառնուում են իրար. եւ

այնտեղ փոխադրեց թագաւորական աթոռը: Այդ քաղաքն էր Երուանդաշատը, որի աւերակներն այժմս կարելի է տեսնել Հաճի Բայրամլու ասուած գիւղի մօտ (Երեւանու Նահանգի Սարդարապատ գաւառի Սահաթլէ ասուած գաւառակում): 1819 թուին Երեւանու Հիւսէյին-Ղուլի-խան սարդարն Արագած սարի հարաւային ստորոտներում՝ դաշտի վերայ մի բերդ շինեց եւ անուանեց Սարդարապատ, որն եւ 1827 թուին ընկաւ Ռուսների ձեռքը եւ կայ մինչեւ ցայսօր: Այդ Սարդարապատի շրջակայքումն են հին Արմաւրի աւերակները. "Տեղին Արմաւիրայ ըստ լինելոյն առ եզերբ Երասխայ ի հիւսիսոյ կողմանէ, ասում է Շահխաթունեան, երեւի լինել այն տղարածոփ Բլուր, որ ունի յարեւելից զակունս շամբին Սեւ Ջրոյ այսինքն Մեծամօր գետոյ հեռաւորութեամբ երկուց ժամուց, յարեւմտեան հիւսիս զամրոցն Սարդարապատ միով ժամաւ, ընդ հարաւ զԵրասխ գետ հեռացեալ յիւրմէ իբրեւ ժամ մի, իսկ յարեւմտից զդաստակերտն Երուանդայ Բ. իբրեւ երեք ժամ, որ այժմ ի բնակչաց անուանի (Ղարաղալայ) Սեաւ բերդ. որոյ եւ սփոփոլբեանն տղացոյց՝ փոշոն, որ կայ ի հիւսիսոյ բլրոյն ձգեալ դէպ յարեւմուտս ցքարափ ձորոյն Երասխայ եւ Ախուրեան գետոյ, հոլէ ցուրփ է Ծերդֆոնից (Արմաւոր գիւղ) Դաշտ Արմաւիրայ*:,, (Տես Ստոր. 2. եր. 32:)

Գլ. Ժ. 2

---

3. Քաղոց ամիս:

Հայոց ամիսների անունները, ինչպէս յայտնի է, այժմու գործածականից տարբեր են. Քաղոց ամիսը համապատասխան է այժմու հաշուով դեկտեմբեր ամսին, ամսագլուխն հաշուելով օգոստոսի 11ին. ըստ-

* Բացի այս ձմերոցները որ մենք նկարագրեցինք, կային եւ մի քանի այլ ձմերոցներ, որոնց տեղադրութիւնը ճշդիւ որոշելու անձեռնհաս էինք. այդ ձմերոցներն են Արդեանքն, Դուհանակերտ (Դրասխանակե՞րտ), Երամոնս (Արամօնս), Զողակերտ (Ցոլակե՞րտ), Վարդանաշատ, եւ Փառախոտ. ձմերոցների թւումն էր եւ Գառնին, որը միեւնոյն ժամանակ եւ բերդ էր. տես գլ. Ը. 13:

Գւ. Ժ. որում Հայոց առաջին ամսի այսինքն Նաւասարդի մէկը
3
այժմու օգոստոսի 11ին է եւ իւրաքանչիւր ամիս ունի 30 օր, բացի Աւելեաց ամիսը, որ միայն հինգ օր ունի։ — Ուրեմն Վարդանի վերադառնալն Աղուանքից եւ եպիսկոպոսների մի ամսական պաս նշանակելը, որ սարսափելի աւերուածների, ցրտերի եւ պաշարեղէնի պակասութեան երեսից պէտք է յառաջանար, ձմեռուայ մէջն է եղել 451 թուին Ք. յտ. (այժմ եւս Քաղոց ամսում երկու անգամ շաբաթական պահք կայ. մէկ՝ Ցիմնակաց, մէկ էլ Ծննդեան). իսկ պատերազմը պատահեցաւ գարնան ամիսներում նոյն 451 թուին Պենտէկոստէի տօնին (երեւի Մարերի այսինքն մայիս ամսի կէսերում)։ — Այժմ Վարդանանց նահատակութեան յիշատակութիւնը կատարում են բարեկենդանի հինգշաբթի օրը, իցէ՛ թէ՝ այն պատճառով, որ Զատկից յետոյ մինչեւ Հոգեգալուստ Եկեղեցին չունի ազատ օր, ըստորում այդ միջոցը Զատկի եւ Ցինանց օրերն են բռնում. Հոգեգալստից յետոյ էլ գալիս են Հայոց հին նահատակների՝ այն է Հռիփսիմեանց, Գայիանեանց եւ Ս. Լուսաւորչի տօներն եւ այլն։ Գուցէ բարեկենդանին առնել խորհրդաւոր է Վարդանեանց տօնը։

---

4. Հայոց բռնի ւ խաբեաց (Վասակ) զթագաւորն. այսինքն առանց Հայերի գիտութեանը խոստացաւ թագաւորին մոգութիւնն ընդունել տալու Հայոց երկրում։

---

5. Հայեցոյց ի կարծիս սնոտիս իբրթէ անկ իցէ նմա հասանել մինչ ի թագաւորական վիճակն։

Սորանից եւ Ղազարի վկայութիւնից, որն ընթերցօղն յետոյ պիտի կարդայ, նաեւ նորանից, որ Եղիշէն ասում է Վասակի համար՝ թէ "այն որ կամէրն Թագաւոր լինել մեղօք՝ Հայոց աշխարհին եւ այլն.", երեւում է, որ Վասակի ուրացութեան կամ ուխտանենդութեան գլխաւոր պատճառներից մէկն էլ այն է





Գլ. Ժ. 5

եղել, որ Պարսիկներն յոյս են տուել նորան (դուցէ արդարեւ խոստացած են եղել) տալ նորան Հայոց թագաւորութիւնը, որն ինչպէս գիտենք, արդէն մօտ քսան տարի կար որ, բոլորովին բարձուած էր։ Եթէ թագաւորութիւնը վերականգնելու հրապոյրքից էր, որ Վասակի հետ միացած էին եւ շատ նշանաւոր նախարարներ, այն ժամանակ զարմանալի չէ, որ Վասակն այնպիսի համառութեամբ աշխատում էր ընկճել ուխտապահներին։ Նա կարծում էր, որ եթէ միանգամ ուրացութեան անունն իւր վերայ առած՝ պիտի կամ իւր որդիքն, երկիրն ու մարզպանական իշխանութիւնն եւ բոլոր փառքն ու պատիւք կորցնէր, որ ուխտին հաւատարիմ մնար, կամ թէ ոչ՝ նոյն ուրացութեան անունով դեռ պէտք է քաշ տար գործն այնքան, որ Պարսիկներին խաբել կարողանար եւ նորանով հասնէր իւր փառասէր նպատակներին։ Բայց նա սխալւում էր։ Հայոց ուխտապահներն այն աստիճանի լաւ էին հասկացել Պարսից քաղաքականութեան խարդախութիւնը, որ ոչ թէ այդպիսի հրապոյրքներով չէին ուզում խաբուել, ինչպէս Վասակ, այլ մինչեւ անգամ աշխատում էին բոլորովին խզել իրենց յարաբերութեան կապը Պարսիկների հետ։ Այդ մենք տեսնում ենք եւ նորանից, որ ուխտապահ Հայերը ցանկացան Բիւզանդիոյ կայսերութեանը հպատակելու եւ յարաբերութիւն սկսելու Յունաց բաժնի Հայ իշխանների հետ։

---

6. Արիք, տես գլ. Բ. 6։

---

7. Կեանք, տես գլ. Բ. 3։

---

8. Զօրագլխեան, տես գլ. Բ. 3։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

1. *Հեր եւ Զարեւանդ գաւառ։*

Խորենացին ջոկ ջոկ է դնում այս երկու անունը իբրեւ Պարսկահայքի առանձին մասեր։ Մեր միւս երկու պատմիչներից՝ Եղիշէն երկու տեղ յիշում է այսպէս՝ "Զգունդն առաջին հեռացուցի ի կողմանս Հերայ եւ Զարաւանդայ։ — Զօրագլուխն Պարսից . . . եկեալ հասանէր յաշխարհն Հայոց ի Հեր եւ ի Զարաւանդ գաւառ.„ (62, 89։) Իսկ Ղազար, որ նոյնպէս մեծ մասով Հեր եւ Զարեւանդ անունները միասին է յիշում, մի երկու տեղում ջոկ է յիշում Հերի անունն ասելով. "դադարեալ ի գաւառին, որ կոչէր Հեր, ի գեօղն որում անուն էր Նուարսակ եւ այլն.„ (եր. 48։ եւ 495։) Սորանից երեւում է որ այդ երկուսը ջոկ ջոկ գաւառներ են, բայց իրարու հետ կից եւ երկուսն էլ ճանապարհի վերայ։ Եւ այդպէս էլ է. ըստորում Հեր գաւառը այժմու Խոյ քաղաքի շրջակայքն է, Ուրմիոյ ծովակի արեւմտեան հիւսիսային ափերից մինչեւ Կոտոր գետը Խոյ քաղաքով միասին, իսկ Զարաւանդ կամ Զարեւանդ գաւառը Հերի հիւսիսային արեւմուտքը՝ այնտեղ ուր այժմ գտնուում է Զարաւայ աւանը, Ակ չայ (Տղմուտ) գետի ակիզբներում Արտազ գաւառի հարաւային արեւմտեան կողմից։

Նուարսակ գիւղը Խոյի մօտերը պէտք է լինէր, բայց թէ ո՞րտեղ, այդ մենք չենք կարող ասել։

---

2. *Արտաշատ.* տես գլ. Դ. 1։

---

3. *Արտազ գաւառ։*

Վասպուրականի գաւառներից մէկն էր Ե. դարում։ Այս գաւառին սահմանակից էին հիւսիսից հին Մասեացոտն՝ արդի Սումալուայ գաւառակը, արեւելքից Երասխը Շարուրայ դաշտով, հարաւից արդի եւ

Հին Մարանդ ու Հեր գաւառները, իսկ արեւմուից Հին Ծաղկոտ գաւառն՝ արդի Բայազիդու Վիլայէթը։ Արդի Մակուայ խանութիւնը Հին Արտազի մի մասն է Մակու գետի վերայ։ Արտազ գաւառն ի հնումն կոչւում էր Շաւարշան եւ այդ նոր անունը գտաւ այն ժամանակ երբ Արտաշէս Բ.ի հրամանով Սմբատ Բագրատունին բնակեցուց Շաւարշան դաշտի վերայ Մասիսի "արեւելեան հարաւային կողմից,, նոր գաղթականներին, որ եկած էին Ալանաց երկրից։

Գլ· ԺԱ· 3

Արտազ գաւառը յայտնի է շատ հնութիւններով, որոյ մէջն է Թադէոս առաքելոյ վանքը, որ մինչեւ հիմայ էլ կայ Մակու գետի ձախ ափի վերայ Փոքր Մասիսի հարաւային ստորոտում. այնտեղ են ասում Թադէոս առաքելոյ եւ Սանդուխտ կուսի նահատակութիւնը եւ Գրիգոր Լուսաւորչի յղութիւնը. այնտեղ են եւ շատ հին վանքեր թէ չէն եւ թէ աւերակ դրութեան մէջ, որոնք միմեւիցէ կերպով ծառայութիւն են արած Հայոց ազգին եւ եկեղեցուն։ Բայց այդ ամենից աւելի յիշատակաց արժանի է Արտազն իւր Աւարայրի դաշտովն եւ Տղմուտ գետովը, որոնք Վարդանանց պատերազմին տեղն են նշանակում։

Մեր պատմիչները միաբերան վկայում են, որ Վարդանանց պատերազմն եղել է Արտազ գաւառում։ Իսկ թէ ի՞նչ տեղ էր իսկապէս պատերազմի դաշտը, դորա մասին ժամանակակից պատմիչները՝ Եղիշէն եւ Ղազար շատ քիչ են խօսում եւ իրարու համաձայն չեն երեւում։ Եղիշէն ասում է. "կարգէր եւ կազմէր (Վարդան) զճակատն . . . ընդ ամենայն երեսս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին՝ առ ափն Տղմտոյ գետոյն,, (եր. 100)։ Իսկ Ղազարն ասում է. "Հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ հուպ ի գեօղն, որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմտոյ դաշտին, զոր ընտրեաց (զօրավարն Պարսից) յաղագս երկիւղի զօրացն Հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատշաճ եւ ի միջի նորա (Տղմուտ դաշտին) ղակիշ ածեալ բանակէին.,, (եր. 203։)

Մէկի ասածով Տղմուտը գետ է. միւսի ասածով

Գլ. ԺԱ. 3 դաշտ է. Եղիշէն մի ուրիշ տեղում Աւարայրի անունը տալիս դաշտ է ասում նորան. (եր. 163։)

Աչքի առաջ ունենալով՝ որ Հայոց բանակը 66 հազար զօրքով էր տեղաւորուած այդ տեղ, Պարսիցն էլ գուցէ դորա կրկնապատիկն էր, պէտք է կարծել, որ պատերազմի դաշտը բաւականին լայն եւ ընդարձակ պէտք է լինէր։ Այս պատճառով այդ դաշտը կարող էր ընկնել արդի Կոտոր անունով գետի եւ Մակու գետի մէջ տեղը՝ Արտազ գաւառի արեւելեան հարաւային բաժնում, Հեր գաւառի արեւելեան հիւսիսային սահմանի վերայ եւ մինչեւ անգամ արդէ Ակ-Չայ (Սպիտակ Ջո՞ւր) անուամբ գետի ափերում։ Եթէ ուշադրութեամբ կարդանք ականատես ճանապարհորդների նկարագրութիւնը եւ հետեւինք աշխարհագրութեան քարտէզով նոցա խօսքերին, մենք կտեսնինք, որ Արտազ գաւառում ուրիշ ընդարձակ, չքնաղ, փարթամ դաշտ չկայ այդ տեղից զատ։ Սպիտակ-Ջուրը միանալով Կոտոր գետի հետ թափւում են Երասխ՝ Կարմիր գետ անունով։ Այդ երկու գետի խառնարանումն է Մաւական աւանը՝ Վասպուրականի թագաւորների ձմերոցը. այդ տեղը մի շատ նեղ եւ ամուր կիրճ է, որ պահպանում է անցքը հարաւից հիւսիս։ Սպիտակ-Ջուրն այդ կիրճին չհասած երեք առաջ է բաժանւում, ինչպէս նկարագրում է Պր. Գ. Շիրմազանեանց. (տես Արարատ ամս. 1872 ամի Դեկտեմբեր)։

"Էս առուների մինը, ասում է նոյն ականատես պարոնը, գնում է արեւմտեան կողմէն Զօրսի (գիւղաքաղաք) մօտովը՝ լերանց կողքովը անց կենում ոռոգելով էն կողմի հանդերը՝ հասնում Մաւականի կիրճըն։ Երկրորդ առուն, որի սաստիկ ցեխոտ լինելոյ համար կարաւանի անց կենալու կողմի թումբերը ըղգուշութեան մասին շատ բարձրացած է (.՛.՛) առուի մէջի ցեխովն ու քարերով՝ գնում է մինչեւ Մաւականի կիրճն։ Երրորդ յառաջն կամ լաւ եւս ասած իսկական գետն կամ վտակն, որ դաշտը (Զօրսի) կէս է անում մէջ տեղովը՝ գնում է եւս մինչեւ Մաւա-





կանի կիրճն ու ընդունում իւրեան մէջն արեւմտեան ու արեւելեան կողմերի առուները՝ ամառն աւելորդ եւ ձմեռն բոլոր ջրերն եւ մտնում կիրճն գնում Մառականի միջովը խառնուում Կարմիր գետին: . . . Զօրսի դաշտի երկարութիւնը պէտք է երկու մղոնէն (վե՞րստ) աւելի լինի եւ լայնութիւնը մին ու կէս մղոն. տասնէն աւելի գեղեր կան էս դաշտի եւ լեռների լանջերի վերայ: Երեք յառաջի վտակների վերայ հարիւրէն աւելի նեղ ու լէն փայտէ կամուրջներ կան շինած. ամէն առուները տղմուտ լինելոյ համար հետեւակ մարդն անգամ չի կարող անց կենալ, որքան եւ ջուրը ծանծաղ լինի. անջուր ժամանակն էլ տղմերին նայելիս մարդ սարսափում է: . . . Էն երկու մեծ առուները չեն բնական, այլ երեւում է, որ յետոյ են վեր առուած իսկական գետէն:,, Յիշեալ պարոնի նկարագրութիւնից երեւում է, որ Սպիտակ-Ջրի երկու կողմն ընկած դաշտերը շրջափակ եւ տղմուտ են եւ նոցա հողը սեւ կաւից բաղկացած:

Գլ. ԺԱ. 3

Համեմատելով այդ տեղերի այժմու նկարագրութիւնը Փարպեցու եւ Եղիշէի հաղորդած սուղ տեղեկութիւնների հետ՝ պէտք է կարծել, որ Աչ-Զայընոյն խոչ Տղմուտն է, կամ Զօրսի դաշտը իւր շրջակայ ցեխոտ սահմաններովը Տղմուտ դաշտն է, որի վերայ եւ գըտնուել է Աւարայր գիւղը:

Մեր ենթադրութիւնը թէ Սեւպոչ-Ջուրն է հէն Տղմուտը եւ թէ այդ տեղերումն է եղել Վարդանանց պատերազմը, հաւանական է երեւում այն պատճառով եւս, որ այդ կողմերում ժողովրդի մէջ կան շատ աւանդութիւններ Վարդանանց յիշատակի վերայ, որն ուրիշ տեղերում չի պատահում: Ջորօրինակ՝ վերոյիշեալ Պր. Շիրմազանեանցը (որ անձամբ պատահել է այն տեղերում) ի թիւս այլոց հաղորդում է, որ Մառականի շրջակայքում կայ մի տեսակ այծեամ, որի պորտից հանում են մուշկ ասուած քարացեալ արիւնը եւ դեղի համար շատ թանգ են ծախում Ասիայում: "Այդ մուշկի վերայ շատ առասպելներ կան հնարած, ասում է նա, շատիցը մինը ասենք. ըստ-





Գլ. ԺԱ. 3

որում Վարդանանց պատերազմից յետոյ է յայտնուած, ասում են, էս քարացած արիւնը այծեմների պորտի վերայ, վանորդ եւ ի շնորհս էն սուրբերին է էս յառաջ եկած. այսինքն՝ ինչ այծեամն երեք օր (ըստ այլոց 7 օր) արածել է էն տեղ, ուր նահատակուել են Վարդանանք, նրանց արիւնի շնորհքովն է բաղկանում այծեմի պորտի վերայ էն արիւնը ու լինում բժշկութիւն ախտաժետաց եւայլն:,, Թադէոս առաքելոյ վանքի վարդապետների մէջ սովորութիւն կայ եղել հին աւանդութեամբ, ինչպէս վկայում է նոյն ականատեսը, այդ տեղերում կարաչիադինի մօտերից անցնելիս Վարդանանց նահատակութեան շարականն երգել. 70 տարեկան ծերունի Սիմէոն վարդապետը, որ Պր. Շիրմազանեանցի ուղեկիցն է եղել Թադէի վանքից, այդ սովորութեանն հետեւելով կարաչիադինի մօտ երգել է Վարդանանց շարականը եւ Հոգւոց ասել: Մակու եւ Բայազիդ քաղաքների մէջ կան Հայոց եկեղեցիներ Ս. Վարդանի անունով. եւ այն կողմերի բնակիչ Հայերը սովորութիւն ունին տարին մի շաբաթ կամաւոր պաս պահել սուրբ Վարդանի անունով Հոկտեմբեր ամսի վերջերը: "Էս պասն, ասում է Շիրմազանեանց, պահում են մինչեւ ցայսօր էն տեղրանքից գաղթուած Ռուսաստուն Հայերը:,,

Այս փաստերը մեր կարծիքով բաւական զօրեղ ապացոյց են թէ Վարդանանց պատերազմն եղել է այդ իսկ տեղերում:

Տղմուտ դաշտի եւ գետի վերայ այսքանովս բաւականացած՝ մեզ մնում է որոշել Աւարայր գիւղի տեղը: Բայց մենք անձեռնհաս ենք այդ հարցը լուծելու՝ չունենալով կարեւոր տեղեկութիւնքը, մանաւանդ լիակատար աշխարհագրական քարտէզ Պարսից տէրութեան Հայոց գաւառների: Թերեւս նոյն իսկ Պր. Շիրմազանեանցի յիշած կարաչիադինը կամ Զօրսն է Աւարայր գիւղը. այս դէպքում հարկաւոր է դեռ որոշել իսկութեամբ նոցա դիրքը եւ նոցա պատմութիւնն իմանալ թէ որքան հին են սոքա եւ որպիսի հնութիւններ ունին: Նմանապէս դեռ պարզուած չէ

միանգամայն թէ ինչ է նշանակում Աւարայր. խօսքը Գւ. եւ ունի՝ արդեօք մի համանշան անուն արդի գիւղերի մէջ Սղմփակ-Չըբէ ափերում։ Եթէ այդ խօսքը հայերէն է, պէտք է կարծել որ նշանակում է աւարի այր = Աւար-այր, ինչպէսոր կան ուրիշ անուններ զորօրինակ Բագնայր, Հոռոմայր, Քոբայր, Այրիվանք եւայլն։ Եւ թէպ մեր այս ենթադրութիւնը հիմք ունենայ, այն ժամանակ պէտք է կարծել, որ Աւարայր գիւղի տեղը լեռների կողմն էր, ուր գտնւում էին այրեր (մաղարա)․ այս աւելի հաւանական է երեւում այն-պատճառով, որ զօրքի համար աւելի ապահովութիւն կըլինէր գիւղը, սարերն եւ այրերը իրենց յետեւից ունենալ, որպէսզի յամենայն դէպս ապաստանելու տեղ ունենային։

Փարպեցին Վահանի պատմութեան մէջ երկու ուրիշ գիւղի անուն եւս տալիս է, որոնք Արտազ-գաւառումն էին․ այդ գիւղերն են Ներսէհապատ եւ Եղինդ։ Թէ ի՞նչ տեղ էին այդ գիւղերից իւրաքան-չիւրը, մենք չենք կարող ասել։



## ԳԼՈՒԽ ԺԲ.

1. *Խաղտիք։*

Խաղտիք, որ ուրիշ կերպ կոչւում էր եւ Ճանիւս կամ Ճանէթ, մի երկիր է այժմու Տրապիզոնի հարաւային կողմը. նորա միջովն անցնում են Պարխարի արեւմտեան Թեւերը եւ երկրի մակերեւոյթը շատ լեռնոտ է եւ դժուարագնաց. այժմ այնտեղ բնակւում են Լազերը։ Խաղտիքը հին Եգերաց աշխարհի կամ Կողքիսի գաւառներից մէկն էր. նորա սահմաններն էին հարաւից Բարձր Հայք, արեւելքից Տայք, հիւսիսից Սեւ ծովի եզերքը եւ արեւմուտքից Պոնտոս։ Յոյներին յայտնի է այս գաւառը Խալդէյ անունով։

---

2. *Տմորիք։*

Կորճայքի մէջ Մոկքի սահմանի վերայ կայ եղել մի ամուր բերդ Տմորիք անունով. այդ բերդն ինչպէս երեւում է Կորդուաց լեռների մէջն էր գտնւում եւ նորա նշանակութիւնն այնքան մեծ էր, որ ժամանակով Կորճայքի բոլոր սահմանագլուխ մասն էլ Տմորիք էր կոչւում, որ յետոյ Կորդրիք ասուաւ։ Տմորիքի տեղագրութիւնը չկարողանալով աւելի ճիշդ որոշել, այնու ամենայնիւ Խորենացու եւ այլոց վկայութիւններից գիտենք, որ նա մօտ էր Վասպուրականի Ռշտունեաց գաւառին եւ Մոկքին. ուրեմն ընկնում էր Հայաստանի հարաւային կողմը եւ Կորճայք գաւառի արեւմտեան հիւսիսային։

Տմորիքի անունը տալիս մարդ ակամայ մտաբերում է Սմբատ Բագրատունու վիճակը, որ չնայելով թէ ինչպէս ազատեց Սանատրուկի որդուն՝ Արտաշէս Բ.ին Երուանդի դահիճների ձեռքից, տարաւ Պարթեւաց աշխարհն եւ մեծացուց եւ ապա բերեց թագաւորեցուց Հայաստանի վերայ. թէ ինչպէս նա զանազան պատերազմներում Հայոց թշնամիների դէմ





դուրս գալով հալածեց նոցա եւ թագաւորին ու հայրենիքին անգին ծառայութիւններ արաւ, այնուամենայնիւ իւր ծերութեան օրերում հալածանք կրեց Արտաշէսի ագահ որդւոց երեսից եւ ստիպուած էր առանձնանալ այս Տմորիք աւուած բերդում։ Գլ. ԺԲ. 2

Տմորիքումն առանձնացաւ Ուշտունեաց Զօրայ նահապետը, որ Տիրանի հրամանով պիտի ուղեկցէր գնդով Չար-Յուլիանոսին. բայց Տիրանն իր չարութեամբ եւ Յուլիանոսն իր հեթանոսութեամբ այնքան ատելի էին Զօրայի աչքին, որ նա ասում է իւր զօրքին, “մի՛ վարեսցուք հրամանաւ այնորիկ, որ (Տիրան) դայթակղութիւն արկանէ յերկրպագութիւն Քրիստոսի եւ սպանանէ զսուրբս նորա. եւ մի՛ ճանապարհակցեսցուք այսմ ամբարիշտ թագաւորի։,, Եւ եկան ամրացան Տմորիքում։

Դիոկղետիանոսի հալածանքներից խոյս տուող Հռիփսիմեանք Հայաստանի ամուր տեղերը թափառելիս այստեղ էլ եկան օթեւանեցան “ի վտակս գետոյ մօտ ի կամուրջն ի կողմն Տմորեաց ի ծառաւէտ ընկուզուտ տեղիս։,,

---

3. *Արձախ։*

Արձախ կամ Արցախ Հին Հայաստանի տասնեւհինգ գաւառներից մէկն էր։ Նա սահմանակից էր Սիւնիք եւ Ուտիք գաւառներին եւ երեւի ընկնում էր այն լեռների մէջ, որոնք գտնւում են Երասխ, Կուր Թարթառ եւ Ագար (Ակրա) գետերի մէջ տեղը։ Քարտէզի վերայ նայօղը կըտեսնի այդ քառակուսի տարածութեան մէջ արեւմտեան հիւսիսային բաժինը լեռնոտ, իսկ արեւելեան հարաւայինը տափարակ։ Առաջինը Արցախն է ըստ մեր կարծեաց եւ երկրորդը Ուտեաց աշխարհի եւ Փայտակարանի մասերը — Կուր գետի ափումն անմիջապէս դասաւորուած։

“Լեռնային է տեղին, թաւաթուփ եւ մացառապատ. ուրանօր են բազմաթիւ խորաձորք, անմատչելի խոխոմք, դժուարագնալի՝ սորսորք եւ դարեւանդք եւ բարեբեր դաշտաձեւ հովիտք. յորս գտանին դեռեւս

ԳԼ. ԺԲ. 3

կիսակործան եւ մամռապատեալ ամայի վանորայք եւ բերդորայք տօնելի իշխանաց . . . եւ ի կողմանէ ամրութեան ոչ վրիպի ոք կոչել զսա երկրորդ Կովկաս. ծաղկածին են լերինք, յորդաջուր եւ անտառաշատ.„ ասում է Ջալալեան Ս. արքեպիսկոպոսն իւր Ճանապարհորդութեան մէջ. եւ այս նկարագրութիւնը միանգամայն համապատասխանում է ուրիշ օտար եւ մերազնեայ ճանապարհորդների վկայութեանը:

Հասկանալի է ուրեմն թէ որքան յարմար պէտք է լինէին "ամուրքն Արցախոյ„ յուսահատութեամբ փախչող Հայերի համար եւ թէ որքան դժուար պէտք է լինէր Պարսից զօրավարին մաքառել փախստականների հետ, եթէ Վասակի նման հաւատարիմ առաջնորդ չունենար: Արցախն իր լեռնոտութեան պատճառով երկար ժամանակ պահեց եւ իւր քաղաքական անկախութիւնը:

Արցախ գաւառի արեւմտեան սահմանակիցն է Սիւնեաց աշխարհը, որ նոյնպէս անմատչելի է օտարների համար. Աքար գետը ինչպէս երեւում է սահմանագիծ է եղել այդ երկու մեծ գաւառների մէջտեղը: Արցախու հիւսիսային սահմանակիցն էր Գարդման գաւառն Ուտեաց աշխարհի եւ գուցէ սահմանագլուխն էլ Թարթառ գետի ակներն էին կամ Մռաւսարը. ոմանք մինչեւ Շամխօրու ջուրն են նշանակում Արցախի հիւսիսային սահմանը, որ կընշանակէ թէ Թարթառ գետը գրեթէ Արցախի մէջ տեղովն էր հոսում. Գանձակ քաղաքը՝ արդի Էլիսաւէտապօլ (Գէնջէ) նոյնպէս այդ գաւառի մէջն են նշանակում ոմանք:

Արցախն յայտնի է մեր պատմութեան մէջ նաեւ իւր միքանի հռչակաւոր վանքերով: Այնտեղ է Ամարաս գիւղը, ուր ամփոփուած են Գրիգորիս Աղուանից կաթողիկոսի (Լուսաւորչի թոռան) նշխարները, այնտեղ է Գանձասարու վանքը ուր նստում էին մինչեւ վերջին ժամանակներս Աղուանից կաթողիկոսները. Եփրեմ կաթողիկոսի օրով 1810—1830 Աղուանից կաթողիկոսութիւնը որ բարձուաւ, Գանձասարու վանքն էլ հետզհետէ նուաստացաւ:





Արցախն այժմ կոչւում է Ղարաբաղ, որի գըլ- Գ.Լ.Ժ.Բ.
խաւոր քաղաքն է Շուշի։

4. Կապոյտ լեառն։

Էրզրումից հիւսիսային արեւմուտք գտնուող գօտին, որ Պարխարի մի մասն է, կոչւում էր հին ժամանակները Կապոյտ կամ Կապօտէս*։ Եթէ Պարսից զօրքը ապստամբներին հալածելով կարող էր մտնել Հայաստանի Ցունաց բաժինը, ուր գտնւում էր Կապոյտ սարը, այն ժամանակ պէտք է ենթադրել, որ այդ սարի վերայ կային բերդեր, որոնց մէջ ամրացած էին փախստականները։ Բայց մեզ անկարելի է երեւում այդ ենթադրութիւնը. աւելի հաւանական է կարծել, որ ‘‘ամուրք Կապոյտ լերին„ ասածը — կամ Պարխար լեռների մէջ գտնուող Գէօք-դաղն (կապոյտ սարն) է եւ կամ նոյն իսկ Կապոյտ բերդն էր, որ իբրեւ անառիկ տեղ յայտնի է մեր պատմութեան մէջ եւ գտնւում էր Արշարունիքում ոչ հեռու այն տեղերից, ուր խառնւում է Ախուրեանն Երասխի հետ Բարդողի հիւսիսային թեւերում։ Տես գլ. Ը. 15։

---

* Տես Ինճիճ. Ա. 99։



## ԳԼՈՒԽ ԺԳ.

1. Պարխար լեառն։

Այն գօտին, որ անցնում է Արզրումի հիւսիսային կողմով՝ արեւելքից արեւմուտք եւ բաժանում է Ճորոխ գետի հովիտը Երասխի եւ Եփրատի հովիտներից, կոչւում էր Պարխար լեառն առհասարակ։ Ե. դարում այդ լեռնագօտին՝ ինչպէս երբեւի՝ սահմանագիծ էր Յունաց եւ Պարսից տէրութեան մէջ, ըստորում նորանից հիւսիս Յոյներին էր պատկանում։

Պարխարն իւր ձորերով եւ հովիտներով այնպիսի մի ապաստանարան դարձաւ յուսահատութեան մէջ ընկած Հայերի համար Վարդանանց պատերազմից յետոյ, ինչպէս եւ Արձախն ու Տմորիքը։ Այդ լեռնագօտու մէջն է կապոյտ ասուած լեառն իւր ամրոցներով, որն այժմ կոչւում է Գէօք դաղ = կապոյտ լեառն։ Այդ ամրոցների դէմ էին զինուորուած Վասակի ու Ատրորմիզդի զօրքերը։

Պարխարի արեւմտեան հարաւային մասը կոչւում էր Սեպուհ լեառն, արեւմտեան մասը՝ Պարխ կամ Պախր կամ Գայլազուտ, հարաւայինը՝ Առիւծ եւ հիւսիսայինը՝ Կարնոյ լերինք։ Հին ժամանակները Պարխարն եւ իւր թեւերը կոչւում էին նաեւ Խաղտեաց լերինք*։ Այժմ Թուրքերն այդ լեռներին ասում են Չլդըր-դաղլարի։ Տես "Կապոյտ լեառն.„ գլ. ԺԲ. 4։

---

2. Ցերեքտասաներորդում ամի եւայլն։

Յազկերտի թագաւորութեան 13րդ տարին 450

* Այժմ Ճորոխ գետի ձախ կողմից՝ Արդուին քաղաքի կողմերում կայ մի լեառն, որ մասն է Պոնտոսեան գօտու. այդ լեառը կոչւում է Բուլխար-դաղ, իսկ նորա արեւելատորատում կայ մի աւան Բուլխար անունով. անշուշտ այս Բուլխար անունը նոյն իսկ Պարխարն է, որ տակաւին անհետացած չէ հին սահմաններից։ Կայ մի Բուլխար գիւղ եւս Կուր գետի ակիզբներում։ Արդեօք այս անուններն այսպէս են արտասանում, ինչպէսոր յիշուած են քարտէզներում։ Տես Կիպերտի Աշխ. Քարտէզը։





Թուականն է Ք. յառ։ Այդ տարին Հայոց մեծ պատե- Գլ. ԺԳ.
րազմը դեռ սկսուած չէր, այլ՝ այդ այն տարին էր, երբ
Վարդան Մամիկոնեանն իւր զօրքով գնաց Աղուանքին
օգնութեան, իսկ Վասակ Սիւնին էլ զօրքի մի մասովը
մնաց Հայաստանը պահելու, որից յետոյ եւ դրժեց
նա իւր ուխտը։ Ուրեմն այդ տարին այսինքն 450 թուին
Վասակը չէր կարող գնալ Տիզբոն։ Փարպեցու եւ
Եղիշէի նկարագրութիւններից մենք գիտենք, որ մեծ
պատերազմից յետոյ, որ պատահեցաւ Յազկերտ Բ.ի
թագաւորութեան 14րդ տարին, այսինքն 451 թուի
վերջերը, Վասակ Սիւնին Մուշկան Նիւսալաւուրտի հետ
միասին դեռ բաւական ժամանակ մաքառեցաւ Հայոց
բերդերի եւ փախստականների դէմ. սորանից երեւում
է, որ նա 451 թուից յետոյ միայն կարող էր գնալ
Տիզբոն։

Եղիշէն իւր պատմութեան Ը.րդ եղանակի սկըզ-
բումն ասում է, որ Յազկերտ Բ. իւր թագաւորու-
թեան 16րդ տարին երկրորդ անգամ գնաց Քուշանաց
դէմ. այդ պատերազմի անյաջողութիւնից ստիպուած
հրամայեց նահատակել Հրոտից ամսում Հայոց քա-
հանաներին, որոնց կապանքով պահում էին Նիւշա-
պուհի բերդում. Հրոտից ամիսը այժմու յուլիս—
օգոստոս ամիսներն են. ուրեմն հաշուելով, որ տար-
ւայ սկիզբը նաւասարդ ամիսն է, այսինքն օգոստոս
11ից մինչեւ սեպտեմբերի 10ը, դուրս է գալիս, որ
Յազկերտի թագաւորութեան 16րդ տարու այսինքն
453 թուի վերջերը նահատակուան Ղեւոնդեանք։
Այս բանն հաստատում է եւ Փարպեցու վկայութիւնը,
որ պարզ ասում է թէ 16րդ տարին Հրոտից 25ին
նահատակուան Ղեւոնդեանք*։ — Միեւնոյն ժամա-
նակ Փարպեցին ասում է, որ Հայոց նախարարները,
որոնք Պերոզի թագաւորութեան 6րդ տարին այսինքն
463 թուին միայն արձակուան կապանքից, 9 տարի եւ
6 ամիս կապանքի տակ էին. սորանից երեւում է, որ
Հայոց նախարարներին բռնել եւ կապանքի տակ դնելը
պատահած է 453 թուին, այսինքն Յազկերտ Բ.ի
թագաւորութեան 16րդ տարին։

* Տես եր. 305։

ԳԼ. ԺԳ. 2

Եթէ Ղեւոնդեանց նահատակութիւնն եւ նախարարների կալանաւորութիւնը երկու ժամանակակից պատմիչների ցուցումներին նայելով Յազկերտ Բ.ի թագաւորութեան 16րդ տարին, այսինքն 453 թուին են պատահել, Վասակը, որ նոցա հետ միասին էր դատուում Տիզբոնում, չէր կարող աւելի յառաջ պատժուել քանթէ նոքա։ Մեր պատմիչներն ասում են, որ Վասակն աւելի յառաջ գնաց Տիզբոն. այդ կարող էր լինել, որ նա միքանի ամսով յառաջ գնացած լինէր Տիզբոն. բայց խօսք չկայ, որ զանազանութիւնը ոչ թէ տարւայ, այլ ամիսների մէջն է. այսքանս հաստատ է, որ նորա գնալը եւ քահանաների Տիզբոն հանելը ձմեռ ժամանակն է պատահել եւ այդ կարող էր 453 թուի ձմեռը լինել, որից յետոյ գարնան սկզբին Յազկերտը գնաց Քուշանաց դէմ։ — Ուրեմն Վասակն էլ, ինչպէս միւսները, Յազկերտի թագաւորութեան 16րդ տարին է գնացել Տիզբոն, այլ ոչ 13րդ, ինչպէս կարդում ենք Փարպեցու պատմութեան մէջ։ Ասողիկը Ղեւոնդեանց նահատակութեան համար ասում է, որ այդ պատահեցաւ Յազկերտի թագաւորութեան 15րդ տարին այսինքն 452 թուի վերջերը. բայց մենք աւելի հաւանական ենք համարում ժամանակակից Եղիշէի ցուցումը, որ Փարպեցու ցուցումներին էլ բնաւ չէ հակառակում։

Իսկ թէ ինչո՞ւ Փարպեցու պատմութեան մէջ ասուած է թէ Վասակն Յազկերտի թագաւորութեան 13րդ տարին այսինքն 450 թուին գնաց Տիզբոն (որ ակներեւ սխալ է), այդ մենք վերագրում ենք գրչագրի կամ օրինակողների պակասութեանը. յայտնի է, որ շատ հեշտ կարելի է շփոթել գրչագրի մէջ այս երեք թիւը՝ ժզ, ժդ եւ ժգ. շատ հաւանական է, որ օրինակողը ժզ.ի (16) տեղ կարող էր ժգ (13) կամ ժդ (14) գրել եւ դորանով սխալանքի մէջ ձգել ուրիշներին։

---





Գւ. ԺԳ. 3

3. Ապա ընդ իս Ցեառն Աստուծոյ չէ խօսեցեալ:

Այս մի երդման ձեւ է եղել հների մէջ, ինչպէս որ մենք այժմ ասում ենք “Աստուած պատիժս տայ„ եւ այլն. Թէ բառացի թարգմանելու լինէինք, պէտք է ասէինք “Աստուած ինձ հետ խօսած չէ:„

Հայերը սովորութիւն ունին այժմ եւս Աստուծոյ անունով երդուելու ամէն քայլում. եւ “Աստուած վկայ„ ասելն այնքան սովորական է դառել, որ մինչեւ անգամ մէկին հաւատացնելու համար այդ մի երդումը բաւական չէ. մէկին մի բան հաւատացնելու ժամանակ մարդ լսում է աւելի ծայրագոյն երդումներ եւս. եւ ի՞նչ են այդ ծայրագոյն երդումները: Դոքա աւելի մօտիկ կամ շօշափելի բաների անունով են լինում սովորաբար. աւելի հեշտ է հաւատացնել մէկին “արեւ„ “գերեզման„ “որդի„ “հաց„ “ժամ„ խօսքերը գործածելով քանթէ “Աստուած:„ “Որդու արեւը„ “հօր գերեզմանը„ “աղու հացը„ եւայլն այնպիսի զօրեղ երդումներ են, որ ամէն երդումներից յետոյ են բերան գալիս:

Մեզ երեւում է, որ այս կենսական կամ արտաքին առարկաների անունով երդուելու, նաեւ անիծելու սովորութիւնը աւելի հին եւ ազգային պիտի լինի՝ խորին հնութեան միջից մեր օրերին հասած: Քրիստոնէական կեանքի ժամանակներից կան հայ ժողովրդի մէջ նոյնպէս շատ առարկաներ կամ անուններ երդուելու համար. “խաչ, Աստուածածին, աւազան, ս‌կիհ (սըկին), նշխարք„ եւայլն. յատկապէս եկեղեցական խօսքերից զատ՝ ամէն գաւառ իւր տեղական կամ իւր երկրից հեռու մի սրբի կամ սրբավայրի անունն է ամէնից շատ գործածում. այսպէս՝ ամէնից ժողովրդական անուններն են երդման համար “սուրբ Կարապետ կամ Օխտն անուն„ միքանի տեղերում “Էջմիածին, Լուսաւորիչ, սուրբ Գէորգ եւայլն„: — Հայոց լեզուի եւ պատմութեան հնագոյն նշխարները մնում են մինչեւ հիմայ նաեւ Հայոց պառաւների անէծքների կամ բանադրական խօսքերի մէջ. “գրող ու մահ„

Գլ. ԺԳ. 3 «դրօղս բկիդ», «դրօղի խեղդած», «լուսդ քօռանայ», «սեւ անյատակն երթաս», «սեւ ծովն երթաս», կրակ թափի ջանիդ», եւայլն սովորական անէծքներ են, որ երբեմն մինչեւ անգամ իբրեւ անուշ խօսք էլ գործ են դնում արդի Շիրակայ կանայք. Թողնինք այն, որ «գետի՛նը մտնիս», «հողս գլխիդ», «չորնաս», «վերնաս», անէծքները ամէն հայ կնոջ բերանում սովորական է։ Մենք ինհարկէ միտք չունինք բոլորը մէջ բերելու եւ քննելու, այլ միայն հարկաւոր համարեցինք մասնաւորապէս դրաւել ընթերցողների ուշադրութիւնը մեր լեզուի այդ կողմի վերայ. մենք կարծում ենք, որ դոքա կեանքի պայմաններից դուրս եկած ասացուածներ են եւ ունին իրենց նշանաւոր հնութիւնը։ — Աստուծոյ անունով սովորական են միքանի ասացուածներ իբրեւ անէծք, զորօրինակ «Աստուած անիծէ՛, Աստուած պատիժ տայ, Աստուած գլխուդ խռով կենայ, Աստուծոյ կրակը ջանի՛դ», եւայլն։

---

4. Զմրոցն արքունի, տես գլ. Բ. 5։

---

5. Մ՚եծ պատերազմից յետոյ (453) Տիզբոն գնացող նախարարներն են՝

1. Սիւնիք. — 1. Բաբգէն, 2. Բակուր.
2. Արծրունիք. — 1. Ներշապուհ, 2. Շաւասպ, 3. Ընդին, 4. Մեհրուժան, 5. Պարգեւ, 6. Տաճատ, 7. Ապրսամ.
3. Մամիկոնեանք. — 1. Համազասպեան, 2. Համազասպ, 3. Արտաւազդ, 4. Մուշեղ.
4. Կամսարականք. — 1. Արշաւիր, 2. Թաթուլ, 3. Վարձ, 4. Ներսէհ, 5. Աշոտ.
5. Ամատունիք. — 1. Վահան, 2. Առանձար, 3. Առնակ.
6. Դիմաքսեան. — 1. Թաթուլ, 2. Սատոյ (եւ այլ եւս երկուք.)

7. Անձեւացիք. 1. Շմաւոն, 2. Ջուարէն, 3. Ա–[illegible]ռաւան.
8. Առաւեղեանք. 1. Փապակ, 2. Վարազդէն, 3. Դադ.
9. Մանդակունիք. 1. Սահակ, 2. Փարսման.
10. Տաշրացիք. 1. Վրէն.
11. Ռափսոնեան. 1. Բաբիկ, 2. Ցուխնան.

Ընդ ամէնն 36 մարդ. իսկ Աւարայրի ճակատում (451) ընկնող նահատակներն են՝

1. Մամիկոնեանք — քաջն Վարդան 133 արամբք.
2. Խորխոռունիք — կորովին Խորէն 19 արամբք.
3. Պալունիք — արին Արտակ 57 արամբք.
4. Գնթունիք — զարմանալին Տաճատ 19 արամբք.
5. Դիմաքսեան — իմաստունն Հմայեակ 22 արամբք.
6. Քաջբերունիք — հրաշկերտն Ներսէհ 7 արամբք.
7. Գնունիք — մանուկն Վահան 3 արամբք.
8. Ընծայինք — արդարն Արսէն 7 արամբք.
9. Սրուանձտեան — յառաջադէմն Գարեգին 2 հարազատօքն եւ 18 արամբք։

Այս նահատակների հետ ընկան այն ճակատում, ինչպէս յայտնի է, 740 մարդ եւս, որով գումարը լինում է 1036 մարդ. սոցա բոլորի յիշատակին սահմանուած է Հայոց եկեղեցում մի տօն բարեկենդանի հինգշաբթի օրը եւ զօրավարի անունով կոչւում է Վարդանանց տօն։ (Տես գլ. Ժ. 3։)

## ԳԼՈՒԽ Ժ Ե․

### 1. Սիւնեաց իշխանի հագուստը:

Մ՝եր պատմիչները թէպէտեւ սուղ տեղեկութիւններ են տալիս մեր նախարարների զգեստի մասին, այնուամենայնիւ եղածները կարելի է տեսնել, որ նոցա զգեստը մանաւանդ հանդիսաւոր դէպքերում շատ ճոխ է եղել եւ փառաւոր։ Սիւնեաց իշխանի հագուստից կարելի է մասամբ գաղափար կազմել, գէթ աւագ նախարարների զգեստի եւ պատուանշանների մասին։

Վասակը ներկայանում է մեզ իբրեւ մի թագաւոր՝ նայելով նորա հագուստին։ Նա կապում է պատուաւոր (չալմա) եւ դնում է նորա վերայ ոսկի խոյր (թագ)․ մէջքը կապում է ոսկի, մարգարտայեա եւ ականակուռ կամար (քեամար), վիզը ձգում է ոսկի գումարտակ (բօղմաղ), ականջները դնում է ոսկի գինդ (օղեր), ուսերին ձգում է սամոյր մուշտակ։ Այս բոլորը զարդեր են, ափսոս, չէ յիշած թէ իսկական հագուստը ի՞նչ է եղել իրօք։

Ստեփաննոս եպիսկոպոսը իւր պատմութեան մէջ յիշում է (գլ․Գ․) Սիւնեաց հին իշխանների այդ զարդերի եւ պատուանշանների մասին, որոնք երեւի մասամբ կային եւ Վասակի ժամանակ։ Նա ասում է թէ Սիւնեաց իշխաններն "այնքան անուանիք եղեն, մինչ հրամայեցաւ նոցա գահոյս (տախտ) ունել արծաթի եւ վարսակալ (գլխի զարդ) ածել մարգարտեայ եւ մատանի ունել վարազագիր․ նաեւ կօշիկ կարմիր եւ մական ոսկի (գաւազան)՝ ունելով ի վերայ գրեալ զանունն եւ զպատիւ ցեղին*։„

* Խորենացին էլ գիրք Բ․ գլ․ Խէ․ յիշում է Արգամ Մարաց տէր նախարարի եւ Սմբատ Բագրատունու պատուանշանների մասին․ Արգամը, որ թագաւորական երկրորդն էր, ընդունեց Արտաշէս Բ․ թագաւորից (Ա․ դար Ք․ յառ․) հետեւեալ պարգեւները՝ ա) [illegible] (վարսակալ), բ) [illegible] (օղ) երկու ականջի համար, գ) [illegible] (կօշիկ) մէկ ոտի համար, դ) [illegible] (գօտի) եւ [illegible] (չանկեալ) եւ ե) [illegible]





Գլ. ԺԵ.

Նոյն պատմութեան մէջ (գլ. Թ.) գտնում ենք մի այլ տեղեկութիւն Սիւնեաց իշխանների զինուորական զգեստի մասին։ Այն ժամանակ, երբ Արշակ Բ. գերի ընկաւ Պարսից ձեռքը եւ մեռաւ Անյուշ բերդում, Հայոց նախարարներն էլ կորուցին իրենց յառաջուայ պատիւը՝ անօրէն Պարսիկների ճանկն ընկնելով, Շապուհ Պարսից թագաւորը մինչեւ անգամ չէր ուզում ճանաչել նոցա ժառանգական իրաւունքները եւ պահանջեց, որ նոքա ապացուցանեն թէ ո՛վ ի՞նչ կարգի նախարար է։ Նոքա էլ ցոյց տուին նորան Ագաթանգեղոսի գիրքը, որի մէջ յիշուած էր 17 բարձ նախարարութիւն։ Շապուհը հաւատաց Ագաթանգեղոսի վկայութեանը, որովհետեւ տեսաւ, որ այդ պատմութեան նախապատճառը եւ մեծ հերոսն սկզբում իւր նախահայրն է այսինքն Արտաշիր Սասանեանը։ Այդ ժամանակ որոշեց Հայոց նախարարների տեղերը արքունի սեղանի շուրջը եւ չորեքտասաներորդ տեղն ընկաւ Անդոկին, որն ընդհակառակը գլխաւոր նախարարներից մէկն էր ըստորում սորա դուստրն էր Փառանձեմ թագուհին Հայոց։ Այդ պատճառով Անդոկը վիրաւորուաւ եւ ոչ միայն ոչինչ չճաշակեց արքունի

պել Նոտաքօտ (բաժակօք)։ Բացի երկու օղն եւ կարմիր կօշիկը — Սմբատ Բագրատունի սպարապետն էլ ընդունեց բոլոր միւս պարգեւները։ Միայն Խորենացին որոշ չի յիշում, թէ վարսակա՞լն էլ նոյնն էր, ինչոր Արգամինը։ Ինչպէս տեսանք Արգամի վարսակալը յակնթակապ (եաղութ քարերից շինած) էր, մինչդեռ յայտնի է, որ Բագրատունի նախարարների պատուանշաններից մէկն էր ‘‘առանց ոսկւոյ եւ ականց գկրասեր մոչետրէտն Երեւթաչեն վորոտեալ ածել.,, (Խոր. Բ. 7։)

Արտաշէս Բ.ի ժամանակ Մարաց տէրը (Մուրացան տէր) եւ ասպետը (այսինքն Բագրատունիք) նախապատիւ էին բոլոր նախարարների մէջ. բայց յետոյ առաջինները կորուցին իրենց նշանակութիւնը, այնպէս որ Սահակ Պարթեւի ժամանակ Մարացեան տէրը 69րդ բարձն էր, մինչդեռ Բագրատունիք Ներսէս Մեծի ժամանակ 4րդ, իսկ Սահակ Պարթեւի ժամանակ 2րդ բարձն էին. (տես գլ. Ա. 3. աղիւսակ)։ Սիւնեաց իշխանները Ս. Պարթեւի ժամանակ առաջին բարձն էին. հաւանական է, որ Ստեփան եպիսկոպոսն այդ ժամանակուայ իշխաններին ունի աչքի առաջ։

Հայոց իշխանների զգեստի մասին տես նաեւ Ինճիճեան, Հնախօսութիւն Հայաստանի, Բ. եր. 284—287։

Գլ. ԺԵ. 1

սեղանի ժամանակ, այլ եւ յետոյ գնաց իւր գնդով պատեհ ժամանակ գտաւ մտաւ Տփղիս քաղաքը եւ յափշտակեց թագաւորական գանձերն ու շատ անթիւ աւար առաւ եւ անցաւ իւր գաւառը։

Յետոյ փախաւ Յունաց կողմը եւ այնտեղից շատ անհանգիստ էր անում Պարսիկներին։ Նորա որդին Բաբիկ, որ Յունաց կայսեր դուռն էր, իւր հայրենական ժառանգութեան կարօտը քաշելով եւ յիշելով որ "չիք ումեք քաղցրագոյն քան զծնօղս եւ ոչ քան զգաւառ իւր„ վերադարձաւ Պարսից կողմը եւ աշխատում էր նորից տիրել իւր հայրենի գաւառին եւ ժառանգութեանը։ Այն ժամանակ երբ Բաբիկ Պարսից թագաւորի դուռն էր, արշաւում են Պարսից տէրութեան սահմանների վերայ Հոնաց հրոսակները եւ աւերում են շատ գաւառներ. եւ նոցա Հոնանդուր անունով զօրավարը — մի հսկայ յաղթանդամ մարդ — մենամարտութեան է կանչում Պարսիկների կողմից մէկին։ Նորա դէմը գալիս է Բաբիկ Սիւնին եւ յաղթում է, այդ դէպքով եւ գտնում է պատիւ թագաւորից ու ստանում է իւր ժառանգական երկիրը։ Բաբիկ Սիւնին դուրս է գալիս Հոնանդուրի դէմ, ինչպէս նկարագրում է Ստեփաննոս եպիսկոպոսը, "առեալ զիւրոյ զօրութեան զզէնսն յօրինէր յինքեան՝ ճաճանչաւոր եւ մարգարտափայլն զրահիւն ոսկեղինական զվայելուչ հասակն եւ վերակազմեալ սաղաւարտաւն՝ զգեղեցիկն գլուխն եւ զսուսերն պողովատիկ զմէջն միջով, երկուսանն ոսկիակուռ եւ ականակուռ յահեակ յուսն ընկեցեալ եւ զփեղարդն քաջամուխ ի յաջ բազուկն հաստատեալ աշտանակեր է ի սեաւ թաղջ երիվարն եւայլն։„

Եթէ այն՝ ինչոր Բաբեկի սպառազինութեան մասին գրում է Սիւնեցին՝ նորա ցեղի սովորական զգեստն էր, այլ ոչ Պարսից թագաւորի շնորհածը, այն ժամանակ երեւում է, որ Սիւնեաց իշխանների պատերազմական սպառազինութեան պարագաներն էին՝

ա) Զրահ — ճաճանչի ձեւով եւ մարգարտայեռ։

բ) Սաղաւարտ — վագրի (ղափլան, տիգր) կերպարանքով եւ նմանութեամբ շինուած։





գ) Սուր (Թուր) — պողպատից շինած։ Գլ․ ԺԵ․ 1

դ) Վահան (ղալխան) ոսկի ականակուռ շրջապատով, Թերթեւս եւ ամբողջը ոսկի․ եւ

ե) Գեղարդ (մզրախ)։

Ափսոս որ յայտնի չէ թէ ատներն եւ թեւերը ի՞նչպէս էին պահպանում ձիու վերայ նստած ժամանակ։

Սիւնեաց իշխանների ընտանի հանդիսաւոր հագուստը եւ պարագաներն են՝

ա) Գահոյք (տախտ) — արծաթից շինած։

բ) Վարսակալ (մազերը կապող զարդ) — մարգարտից գործած։ Սորանից երեւում է, որ Սիւնեաց նախարարները փոքրիշատէ երկար մազ պէտք է պահէին, ուրեմն գլուխ գերծելու սովորութիւնը չէ եղել նոցա մէջ։

գ) Խոյր (թագ կամ իշխաններին յատկացած մի գլդակ) ոսկուց շինած, որը դնում էին

դ) Պատուավուրի (չալմայի) վերայ։ — Պատուավուրը եւ խոյրը նոցա գլխարկն է։

ե) Գինդ — (օղեր) — ոսկեայ, ականջերը դնելու։

զ) Գումարտակ — (բօղմաղ կամ գեարդանլըխ) ոսկեայ, վիզը ձգելու համար։

է) Կամար — ոսկեայ, ականակուռ եւ մարգարտայեռ, մէջքը կապելու համար։

ը) Մուշտակ — (քիւրք) — սամոյրի մորթուց, ուսերովը ձգելու համար։

թ) Կօշիկ — կարմիր գունով։

ժ) Մատանի — վարազագիր այսինքն վարազի կամ վայրի խոզի պատկերը վրէն փորած։ Սորանից եւ սաղաւարտի պատկերից երեւում է, որ Սիւնեաց իշխանների նշանադրօշը (գերբ) վարազի եւ վագրի պատկերն է եղել։ Մատանին ոչ միայն մատը դնելու համար էր, այլեւ իշխանների կնիքն էր, որով վաւերացնում էին երդումներն եւ այլ ուխտադրութիւնքը։ Այդ պատճառով մատանի խօսքի ածականներից մէկն էլ "վաւերական",

Գ.ԺԵ. 1

*խօսքն է. երբ ասում են “Վաւերականի մատանի„ այդ նշանակում է կնիք։*

*ժա) Մոխան կամ Թամաղան, ոսկուց շինած եւ նորա վերայ իշխանի անունը եւ նորա ցեղի պատուանունը գրած։ Արդեօք այս գաւազանը ամենայն տեղ էրին տանում հեռաները թէ միմիայն տան մէջ հանդիսաւոր ընդունելութեանց, կամ ատեանների եւ դատաստանների ժամանակ։*

---

2. *Գումարտակ։*

*Նայստեղ նշանակում է զօրք, գունդ (տես գլ. Բ. 3.) այլ ոչ վզի զարդ, ինչպէս տեսանք Սիւնեաց իշխանի հագուստը նկարագրելիս։ Այսպիսի նոյնաձայն խօսքեր շատ կան Հայոց լեզուի մէջ. զորօրինակ կամար — ա) մէջք կապելու գօտին եւ բ) շինուածքի բոլորաձեւ ծածքը. գունդ — ա) թօփ, ռումբ եւ բ) զօրք, խումբ։ Մարդուս բոլոր անդամների անունները փոխաբերաբար գործ են ածուում եւ ուրիշ բաների համար. զորօրինակ. աչք — ա) մարդուս տեսանելիքն է, բ) տան կամ արկղի եւայլն մի մասը, ինչպէս օրինակ “մի աչք տուն„ “չորսաչքանի սնտուկ եւայլն. ոտք, աղբիւրի ոտք, աթոռի ոտք, սարի ոտք եւայլն, այսպէս են՝ գլուխ, գագաթն, թիկունք, կուրծք, լանջք, թեւ, ձեռք եւայլն. գրոց լեզուում նա մանաւանդ այս փոխաբերական գործածութիւնն աւելի պատկերացնում է միտքը. ակունք Եփրատայ, լանջք Արագածու, թիկունք Մասեաց եւայլն։ Տես ակն, ափն, եղջիւր, մատանի, մայր, կոյս, գայլ, նըշխար, որոնք ամենն էլ նոյնաձայն բառեր են։ Այս տեսակ խօսքերն աչքի առաջ ունենալով՝ պէտք է եզրակացնել, որ, ինչպէս առհասարակ՝ Հայոց լեզուի մէջն էլ, խօսքերն աւելի պակաս են թուով քանթէ գաղափարները։*

---



## ԳԼՈՒԽ ԺԶ.

1. Վրկան այն գաւառն է, որ գտնուում էր Կասպից ծովի արեւելեան հարաւային ափերում Խորասանի արեւմուտք։ Միեւնոյն Վրկան անունով կոչուում էր այդ գաւառի գլխաւոր քաղաքը՝ Վրկան կամ Գուրգան գետի վերայ. այդ քաղաքն էր եւ Պարսից զօրքերի կեդրոնն ու արքունի ամարանոցը։ Վրկանից հարաւային արեւմուտք գտնուում էր Ապար աշխարհը, որի մայրաքաղաքն էր Նիւշապուհ. տես գլ. Բ. 6. Բ։

Հալածուած քրիստոնեաները միայն Վրկանում եւ Ապար աշխարհում չէին բնակուում, այլ Պարսկաստանի աւելի խորին գաւառներումն եւս. այսպէս Եղիշէն յիշում է, որ Ասորեստան, Խուժաստան, Շահուղն կամ Շաբուլ, Քաշկար եւ Մեշոմն գաւառներն էլ այցելուում էին աքսորեալ քահանաները (տես եր. 333)։ Սակայն ամենահեռաւոր կամ սարսափելի աքսորանոցն էր Կուրան, Մակուրանը, ուր քշեցին քրիստոնեայ դարձող դենպետ-մոգպետին։

Թէ ո՞ւր են այս գաւառներն, այդ մենք անձեռնհաս ենք ճշդութեամբ որոշելու, որովհետեւ այդ անուններն առհասարակ սակաւ են պատահում Հայոց պատմութեան մէջ։ Շահուղն կամ Շաբուլ գաւառը գուցէ ծովեզերեայ լինէր՝ Խուժաստանից հարաւ. Քաշկար եւ Մեշոմն գաւառները Պարսկաստանի միջերկրեայ գաւառներից են, իսկ Կուրան Մակուրանը միանգամայն առասպելական կոչումն ունի. թերեւս հարաւային Պարսկաստանի ծովեզերեայ Մէկրան գաւառը նոյն Մակուրանը լինի. այսպէս է կարծում Պրոֆ. Բ. Պատկանեան (տես Մողոլաց պատմութեան Ա. մասն, ծանօթ. 1. ռուսերէն)։ Խուժաստանի մասին տես Ցաւելուածքիս գլ. Ե. 5։

Անծանօթ է նաեւ Վորդքէս գաւառի տեղը (տես Եղ. եր. 317). պատմութեան մօքից երեւում





Գւ.Ժ.Զ.[1] է, որ այս դաւառը Վրկան աշխարհի մասերից մէկն էր*։

---

2. Շահաստան նշանակում է քաղաք։ Արդեօք ղահ փոխնալու տեղ լինելու համար է քաղաք խօսքի նոյնանշան բառն այդպէս կազմուած — ղահ-աստան (շահմունքի տեղ), ղահ-ար, թէ այն պատճառով, որ թագաւորներն (ղահերը) էին այնտեղ նստում։ Շահաստան խօսքի գործածութիւնից երեւում է առհասարակ, որ վաճառաշահ քաղաքներն են այդպէս կոչւում։ "Քաղաք, ոստան, շահաստան,, նոյնանշան խօսքեր են։ Մասնաւորապէս ասելով՝ «ողջ» առհասարակ այդ տեսակ բնակութեան տեղերն էին կոչւում, ոստան՝ մայրաքաղաքն է, շահաստան՝ վաճառաշահ քաղաքը։

---

* Ուշադրութեան արժանի են հետեւեալ աշխարհագրական անունները, որոնք պատահում են Եղիշէի Պատմութեան մէջ եւ որոնցից շատերը միանգամայն անծանօթ են։ 1) Լփնաց, (Leponos?) 2) Ճղբաց (Ճի՞ղբք), 3) Ծոդէից, Ծաւդէից, (Ծոդէ՞ք.) 4) Վատն, 5) Գաւ, 6) Գղուար, 7) Գատաց (Գի՞տք, Գո՞ւտք), 8) Խրսան, 9) Խիբիվան, 10) Խայլնդուրք, 11) Խոնաստան, 12) Փասխ, 13) Փոսխ, 14) Փիւքօնան, 15) Հեճմատակ, 16) Թաւասպարան, Թաւասպար, 17) Դասան, 18) Ցաճկաստան, 19) Կատաշաց (Կատի՞շք), 20) Գեղաց (Գե՞ղ). այս անուններից Ճղբաց եւ Հեճմատակ անունները պատահում են Հայոց նախարարութեան շարքում (տես գլ. Ա. 3. աղիւսակ). անկասկած դոքա այն ազգերի ներկայացուցիչներն, որոնք Հայոց թագաւորից կախումն են ունեցել. բայց թէ ո՞վ են կամ ի՞նչ, այդ դժուար է ասել։ Ցաճկաստան անունը նոյն է ինչոր Արաբիա. Կատաշաց եւ Գեղաց անունները պատահում են Եղ. եր. 203 իբրեւ զօրագնդի անուն այլ երկու գնդերի հետ՝ Ապարհայքի եւ Հոնաց։ Հաւանական է, որ Գեղաց կամ Գեղ կոչումը այժմու Գիլանի հին անունը լինէր, իսկ Կատիշ եւ Ապարհայիկ մնում են անմեկնելի։ Խայլնդուրքի մասին տես գլ. Բ. 12։



## ԳԼՈՒԽ ԺԲ․

1. Դենպետ։

Պուէն կամ պէն նշանակում է "հաւատ", այսպատճառով պէնպետ նշանակում է "կրօնագլուխ"։ է ի՞նչ պաշտօն էր այդ եւ ի՞նչ իրաւունքներ ունէր դարու Պարսից մէջ, այդ մասին չունինք մանրաման տեղեկութիւններ։

---

2. Մ'ոպպետն, տես գլ. Թ. 1. "Օրէնք մոգուց"։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

1. *Խումիկ։*

*Նշանակում է խուժադադան աշխարհի մարդ. տես գլ. Ե. 5։*

---

2. *Ռեւան գիւղ, տես գլ. Բ. 6։*

---

3. *Արշարունիք։*

*Երասխ գետի վերայ նորա ձորերի եւ հովիտների մէջ Բասենու լեռներից սկսած մինչեւ Ախուրեանի խառնարանը գտնուում էր հին ժամանակները մի գաւառ Երասխաձոր անունով։*

*Երասխաձորի անունն Արշարունիք դառաւ հետեւեալ պատճառով։ "Եւ ազգային նոցա (այսինքն Գրիգոր Լուսաւորչի եւ Տրդատայ), ասում է Խորենացին, մկրտի իւրայովքն . . . ի ձեռն մեծին Գրիգորի . . . այլ ոչ աւելի բաւեալ քան զեօթն աւուրս յետ մկրտութեանն՝ վախճանի. բայց . . . Տրդատայ միխթարեալ զգլուխ որդւոցն Կամսարայ զԱրշաւիր . . . կարգէ ի թիւ նախարարութեանց. յաւելու եւ այլ պարգեւս՝ զքաղաքն Երուանդայ եւ զնորին գաւառն մինչեւ ցկատար ձորոյն մեծի...իսկ Արշաւիր առաւել սիրեալ զգաւառն՝ յիւր անունն անուանէր Արշարունիս։"*

*Այս Արշաւրի սերունդից յառաջացաւ Կամսարական ցեղը, որ յետոյ տէր եղաւ նաեւ Շիրակ գաւառին. այդ ցեղիցն է եւ Վարդան Մամիկոնեանի փեսան՝ Արշաւիր Կամսարականը, որի մասին յիշուում է այս պատմութեան մէջ։*

*Արշարունիքի մէջն էին հին Երուանդաշատ եւ Բագարան քաղաքները Վարդիկ Հայր վանքը եւ այժմու կաղզուանը։ Ստրաբոնն անուանում է այդ գաւառը „*Ἀραξηνόν πεδίον*, Araxenii campi„։

## ԳԼՈՒԽ Ի.

1. *Պատուհաս կրեսցեն խեղութեամբ:*

*Երբ մէկին պատժում են՝ նորա ձեռքը, ականջը, քիթը եւայլն կտրելով, այդտեսակ պատժելը կոչւում է "խեղութեամբ պատժել,, որից եւ այն մարդը, որ խեղութեամբ պատժուած է, լինում է խեղ մարդ: Մենք թարգմանեցինք "խեղութեամբ պատժէ՛,, դարձուածքով, թէպէտ եւ այդպէս գործածելը դժուար է, բայց ուրիշ յարմար դարձուած չգտանք. պէտք էր ասել "թող խեղութիւնը լինի նոցա պատիժը,, բայց մենք նախադասեցինք առաջինը:*

---

2. *Հրամայեաց զմահու գան հարկանել:*

*Մի կարգի պատիժ կար հին ժամանակներում, որ մարդուն այնքան էին ծեծում, որ մահի մօտ էր լինում. վերջին ժամանակներս էլ երեւի այդպիսի մի պատիժ կայ եղել, ըստորում մեր ժողովրդի մէջ մի դարձուած կայ "մահման ղամչի,, (մահուան մտրակ.) որ այդ սովորութեան վերայ է մատնացոյց լինում: Ինչպէս ընթերցողը կըյիշէ (գլ. Բ. 1.) Զրադաշտի օրէնքներով գանահարութիւնը մեծ պատիժներից էր եւ հրամայած էր՝ յանցանքին նայելով մինչեւ հազար հարուած տալ յանցաւորին. հազար հարուածի տակ մարդ կայ, որ հեշտութեամբ կը մեռնի, ուրեմն արդարեւ մահուան մտրակ է այդպիսի պատիժը: — Վերը բերած նախադասութիւնը մենք թարգմանեցինք "հրամայեց մահուան ծեծ ուտեցնել,,, թերեւս աւելի լաւ կըլինէր թարգմանել "հրամայեց այնքան ծեծել նոցա, որ մահուան դուռն հասնին:,,*

---

3. *Աբրահամ խոստովանող:*

*Ինչպէս ընթերցողը տեսնելու է Ցաւելուածքիս*

Գլ. Ի. 3 վերջում բերած Թովմայ Արծրունու Պատմութեան հատուածից, Աբրահամ Խոստովանողը գրած է իւր ժամանակի պատմութիւնը. ապաբախտաբար այդ գործը տակաւին անյայտութեան մէջ է. եթէ ուր եւ իցէ գտնուում էլ է նորա ձեռագիրը, այնուամենայնիւ բանասէրներին անծանօթ է մինչ ցայժմ եւ լոյս ընծայուած չէ։ — Աբրահամ Խոստովանողի վանքի (անապատի) մասին, որ գտնուում է հին Վասպուրական աշխարհի Հայոց Ձոր գաւառում Վան լճի արեւելեան կողմը Վարագայ լեռների արեւելեան հիւսիսային ծայրում, այսպէս է գրում Հ. Սարգսեանն իւր Ճանապարհորդութեան մէջ եր. 280. "Ի հիւսիսակողմն ձորոյն է անապատն Աբրահամու Խոստովանողի. ամայի է մենաստանն, աննշան եւ անքնակ. գերեզմանն երանելւոյն առ ընթեր եկեղեցւոյն, արտաքոյ միեւնոյն անշուք, այլ յիշատակաւն ցանկալի յոյժ անապատն եւ շրջակայ վայրքն ամենայն։„



## ԳԼՈՒԽ ԻԱ.

1. *Բառնալ զսուգ պատուհասին:*

*Նշանակում է ազատել նախարարներին բանտի հագուստներից եւ կապանքից. այդ պատճառով եւ տալին նոցա նախարարական զգեստ:*

---

2. *Իբրեւ տեսին թէ ոչ կարացաք ածել ի հաւանութիւն:*

*Գրուած է առաջին դէմքով, որպէս թէ Եղիշէն Պարսիկների կողմից է խօսում. տես գլ. Գ. 4: Այդպիսի գործածութիւնը նկարագրութեան դէպքերում ոճին կենդանութիւն է տալիս եւ աւելի ժողովրդական է, քանթէ քերականական:*

---

3. *Դրունք Ալանաց, տես գլ. Բ. 7 եւ 12:*

---

4. *Հրեւ, տես գլ. Բ. 6:*

---



## ԳԼՈՒԽ ԺԳ.

1. Վանանդ գաւառ։

Ախուրեան (Արփաչայ) գետի երկու կողմը Վանանդու (Սողանլը) լեռների արեւելեան հիւսիսային դաշտի վերայ էր հին Վանանդ գաւառը, ուր գտնւում է մինչեւ ցայսօր Կարս քաղաքը։ Այդ գաւառը Արարատեան աշխարհի արեւմտեան գաւառներից մէկն էր սահմանակից հիւսիսում՝ Գուգարաց, արեւելքում Շիրակ, հարաւում Արշարունիք եւ Բասեան, արեւմուտքում Տայոց գաւառներին։ Հին ժամանակներն այդ գաւառը կոչւում էր Անփայտ Բասեն, բայց "յետոյ վասն հատուածին Վղնդուր Բուղկարայ (Բուլղար) Վնդայ բնակելոյ ի նոյն տեղւոջ յանուն նորա անուանեցաւ Վանանդ,,, ասում է Խորենացին Բ. գիրք Ձ գլ., "եւ անուանց շինիցն յանուն եղբարց եւ զարմից նորա կոչեն մինչեւ յայժմ։,, Խորենացու այս տեղեկութիւններից ուսումնականներն եզրափակում են թէ դեռ Քրիստոսից 2 դար յառաջ կայ եղել մի Սլաւոնական ազգ Բուլղար կոչուած (տես Էմին ռուս. թարգ. Մովս. Խոր. ծան. 150)։

961 թուից մինչեւ 1064 թիւը Ք. յտ. Վանանդն անկախ թագաւորութիւն էր Բագրատունի թագաւորներով, բայց իբրեւ մի փոքրիկ վիճակ. բառորում Հայոց իսկական թագաւորները նստում էին Անի եւ Վանանդու կամ Կարսի թագաւորներին համարում էին հակաթոռ։

Վանանդ գաւառում յիշուած Ողմնու եւ Իջաւանից գիւղերի տեղերը չկարողացանք գտնել ճշդութեամբ։

Ողմնու գիւղը նշանաւոր անձինք է տուել մեր հին պատմութեան մէջ, ինչպէս են Գիւտ, Յոհան Մանդակունի եւ Բաբգէն կաթուղիկոսները։

---



# ԳԼՈՒԽ ԺԳ.

1. *Ոսկէհատ։*

*"Հատանել զոսկի", նշանակում է ոսկի կտրել, այսինքն փող շինել. հաւանական է, որ Վահան Մամիկոնեանը արքունի դրամանոցի վերակացուն էր, բայց որովհետեւ Վրիւ Ասորին բողոքում է թէ "Վահան ի գործ ոսկեհատին չետ ինձ մօտ երթալ եւ իւր ժողովեալ զամենայն ոսկի աշխարհին խորհի երթալ առ կայսր եւայլն", որից երեւում է թէ ոսկեհատը ոչ այլ ինչ է, եթէ ոչ երկրի հարկերն հաւաքել, ուստի պէտք է կարծել, որ Վահանը հարկահանի պաշտօնն էր կատարում։ Այնուամենայնիւ ոսկեհատ խօսքը չի կարող մատնացոյց լինել ոսկի հանքերի վերայ. ըստորում ոսկէ խօսքը այդ բարդութեան մէջ, ինչպէսոր բոլոր նախադասութեան միտքն է հասկացնում, ոչ այլ ինչ է, եթէ ոչ փող. անմիջակ ոսկի լինել չի կարող ուրեմն։*

---

## ԳԼՈՒԽ ԻԵ.

1. *Բճնի, Բջնի։*

*Երեւան քաղաքից հիւսիս Հրազդան գետի ձորում մի փոքրիկ գիւղ է այժմ, որ Ե. դարում հռչակաւոր բերդերից մէկն էր, իսկ յետագայ ժամանակներում այստեղ էր Բջնու արքեպիսկոպոսական աթոռը։*

*ԺԲ. դարում Գրիգոր Պահլաւունու կաթուղիկոսութեան ժամանակ մի հոգեւոր ժողով եղաւ, ուր կանոն սահմանեցին, որ առանց չորս մեծ արքեպիսկոպոսների կաթուղիկոս չընտրուի եւ չօծուի։ Այս չորսից մէկը պէտք է լինէր Բջնու արքեպիսկոպոսը։*

*Բջնու տեղագրութիւնն այսպէս է նկարագրում Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանց. "ի վեր անդր ընդ ձորն Հրազդան գետոյ յարեւմտեան եզեր — հնագոյն ամրոց նորա (Բճնւոյ) եւ բերդն է ոստ ինչ բնական դրութեամբ ի հարաւոյ եւ յարեւելից ուղղաբերձ քարակտուր անմատչելի. յարեւմտից եւ ի հիւսիսոյ փոքր ինչ ստորոտովք եւ հնարաւոր ընթացից մարդոյ, այլ այնք եւս ամրացեալ բարձրաբերձ պարսպօք եւ աշտարակօք յորձաքար վիմաց եւ ի կրոյ եւ մուտ ելից նորա յարեւմտից. ինչինչ տեղիք այս պարսպաց քայքայեալ են յաղագս հին աւուրց գոլոյ շինութեանն։ . . . Քաղաք ըստ հնոյ կամ գիւղն ըստ արդեանս անմիջապէս յարեւմտից ամրոցին եւ ի հիւսիսոյ գետոյն՝ է բաւականաչափ տարածութիւն ի խորաձորի անդ երկայնեալ ընդ գետն եւ ծոցաւորեալ յստորոտի անդ լերինն։ . . .* (Բ. եր. 180։)

---

2. *Անի բերդ, տես գլ.* Ը. 14։

---

3. *Դուին։*

*Խորենացին խօսելով Խոսրով Բ.ի մասին ասում է. "Սորա զքաջութենէ եւ զբարի յիշատակաց անփոյթ*

տարաբեալ, զբօսութեանց եւ հաւորսութեանց պարապեալ. նորին աղագաւ անտառս առ Ազատ գետովն տնկէ։ . . . Նաեւ զարքունիսն փոխէ վերայ անտառին յոստ մի . . . որ ըստ պարսկական լեզուին Դուին կոչի, որ թարգմանի բլուր։ . . .„ Այս պատահեցաւ, Շօպէնի կարծիքով, 350 թուին, Ք. յ.։ Այդ ժամանակից սկսած Դուինը եղաւ մայրաքաղաք Հայոց՝ թէ թագաւորների եւ թէ մարզպանների ու ոստիկանների օրով։ Մինչեւ 924 թիւը այնտեղ էր եւ Հայոց հայրապետական աթոռը, որ յետոյ մինչեւ 1441 թիւը թափառական էր մեծ մասով, մինչեւոր նորից հաստատուաւ իր բուն տեղումն Էջմիածնում։

Գլ. ԽԵ. 3

Դուինը կոչուում է ուրիշ կերպով եւ Ոստան Դուին. արդեօք ա՞յն պատճառով, որ նա ոստի վերայ էր շինած՝ թէ այն պատճառով, որ նա մայրաքաղաք էր եւ արքունիքի կեդրոնը։ Դուին ունէր եւ իւր առանձին գաւառը, որ ձգուում էր մինչեւ Երասխ, մինչեւ Շարուրայ դաշտը եւ մինչեւ Ազատ գետը։

Դուինի իսկական տեղը դեռ յայտնի չէ, որովհետեւ ուսումնական հետազօտութիւններ, ինչպէս առհասարակ, նորա վերայ եւս կատարուած չեն։ "Դուինի վերաբերութեամբ էլ, ասում է Շօպէն, կասկածում է մարդ, ինչպէս եւ Արտաշատի վերաբերութեամբ, թէ արդեօք իսկ այնտե՞ղն էր գտնուում քաղաքը, ուր յիշուում է այժմ նորա անունը։ Նախ որ՝ այժմու տեղի դիրքը հարթ է, այլ ոչ բլրաձեւ. երկրորդ որ՝ աւելի մօտիկ գետը Մեծամօրն է(՞) այժմ, այլ ոչ Ազատը, ինչպէս որ ցոյց է տալիս Խորենացին, եւ վերջապէս՝ եթէ այստեղ երբ եւ իցէ Դուինի նման մի քաղաք գտնուած լինէր, չէր կարող այն աստիճանի կորչել նորա հետքը, որ ոչ մի շինութեան նշան չերեւար։ Թէ որ Խորվիրապը վերջին Արտաշատն է, այն ժամանակ Դուինի տեղն աւելի հաւանական է կարծել Դաւալի գիւղը — իսկ բլուրի վերայ՝ Արտաշատից հիւսիս Վեդի գետի վերայ. այս գետը այդ արաբական անունը գտնելուց յառաջ գուցէ կոչուում էր Ազատ։ ..."

Գւ. Իե. 3

‘‘Մեր ենթադրութիւնն աւելի հաւանական է այն պատճառով, շարունակում է Շօպէն, որ Դաւայի խօսքը Դուին խօսքի թարգմանութիւնն է երեւում։ . . . Սէն Մարտէնը աշխատելով Դուին խօսքի ստուգաբանութեան վերայ, չի գտնում մի համապատասխան բառ Պարսից լեզուի մէջ, որ նշանակէր բլուր։ Շատ կարելի է, որ Դուին խօսքը Դեմա (ուղտ) խօսքից է յառաջացել, որովհետեւ այն բլուրը, որի վերայ քաղաքը շինուած է, նման է ուղտի մէջքին։,, (*)

Փաւստոսի խօսքերից երեւում է, որ Դուին խօսքը բլուրի անունն է։ Օտարները այդ խօսքը արտասանում են զանազան կերպ՝ Բիւզանդացիք Դուպիոս = Δούβιος են ասում, Ասորիք՝ Ադուին, Արաբները Դուբին կամ Դեբիլ։

Դուինն այժմ մի չնչին գիւղ է Երեւանի նահանգում, Երեւան քաղաքից դէպի հարաւային արեւելք։

---

4. *Սիսական պետութիւն*, որ է Սիւնեաց իշխանութիւնը կամ նախարարութիւնը. իսկ այն մարդիկ որոնց վերայ ցաւում է Սիւնեաց Ստեփաննոս եպիսկոպոսն իւր Պատմութեան մէջ, հետեւեալներն են՝ Վասակ Սիւնեաց, Վարազվաղան եւ Գդիհոն, որոնց մասին կարեւոր տեղեկութիւնքը տես այս պատմութեան մէջ։

---

5. *Ուրծայ իշխան*։

‘‘Եւ սեպուհ մի Ուրծացի, որում անուն էր Վարազներսեհ, որդի Կողթեկայ իշխանին Ուրծայ, որ էր յերդմանն ընդ նախարարսն Հայոց ննջեալ ուխտին սրբոյ երթեալ աւերէր զշահաստանն Բոռնակիժի եւ առեալ զամենայն կարասի շահաստանին դիմեալ ամրանայր ի բերդն, որ անուանեալ կոչի Սոկրայ բերդ, որ էր բերդ ամուր իշխանութեանն իւրեանց։,, Ղազար, եր. 367։ Եղիշէն էլ Վասակի օգնականների շարքում յիշում է Ուրծայ իշխանի անունը (Ներսեհ)։

Ուրծ, Թռնավիժի, Սագր. ահա երեք անուն, որոնց ինչ լինելը գիտենք, բայց ուր լինելը անձեռնհաս ենք իմանալու. մեր նախնիք, որքանոր մեզ յայտնի է, չեն թողել ոչ մի տեղեկութիւն այդ տեղերի մասին: Պէտք է սպասենք, որ Հայաստանի տեղագրութիւնը ճոխանայ նոր աւելի մանրամասն տեղեկութիւններով, որպէսզի լեզուագէտները կարողանան մի հիմք ունենալ բառերի նշանակութիւնը գտնելով հաստատուն լինելու այդ տեղերի որոշմանը: Գւ. Իե. 5

Արդեօք ի՞նչ երկիր կամ տեղ է նշանակում Ուրծը, որի մէջ եղել է մի բերդ Սագր անունով: Եւ վերջապէս ի՞նչ տեղ էր Թռնավիժի քաղաքը, որն Ուրծայ իշխանն աւերեց: Ստ. Օրբէլեան Սիւնեաց եպիսկոպոսն յիշում է մի Ուրծ անունով գիւղ Սիւնեաց աշխարհում:

---



## ԳԼՈՒԽ ԺԶ.

1. *Երկիր պագանէին եւ կաթուղիկոսին Յոհանայ։*

Սա է Յովհան Մանդակունին սուրբ Թարգմանչաց աշակերտներից մէկը եւ Գիւտ կաթուղիկոսի եղբօրորդին։ Գիւտի մահից յետոյ՝ իւր ծերութեան վերջին տարիները կաթուղիկոս եղաւ Մանդակունին, որին յաջորդեց իւր աշակերտը Բաբգէն։ — Այսպէս՝ եթէ աչքի առնենք Հայոց առաջին կաթուղիկոսների պատմութիւնը, մենք կըտեսնենք, որ սկզբում նոքա ընտրւում էին յաջորդաբար միեւնոյն աշակերտութիւնից. Լուսաւորչին յաջորդեցին իւր որդիքն ու թոռները մինչեւ Մեծն Սահակ Պարթեւ. իսկ եթէ Լուսաւորչի ցեղից չէին պատահում կաթողիկոսութեան արժանաւոր անձինք, այդպիսիներն ընտրւում էին Լուսաւորչի աշակերտների եւ աշակերտաց աշակերտների կամ ցեղի միջից։ Սահակ Պարթեւից յետոյ կառավարում են կաթուղիկոսական աթոռը (Սուրմակներից ու Շմուէլներից զատ) նորա աշակերտները. այսպէս՝ Սահակին յաջորդեց Մեսրոպ, Մեսրոպին Յովսէփ սոցա աշակերտը, Յովսէփին էլ յաջորդեցին իւր դասակիցները (ուսումնակիցները) Գիւտ եւ Յովհան. Յովհանին էլ իւր աշակերտը Բաբգէն եւ այլն։ Այսպիսի մի անփոփոխ եւ միաշաւիղ ուղղութիւնից էր, որ Հայոց եկեղեցու մէջ թագաւորում էր ոչ միայն պարզ նախնական ոգի, այլ եւ մի որոշ գործունէութեան արդիւնաւորութիւն, յարատեւութիւն եւ կանոնաւորութիւն*։

* Մեր ասածը հաստատւում է եւ ապագայ ժամանակների իրողութիւններով. յայտնի է, որ ԺԲ. դարում Հայոց կաթուղիկոսութիւնը նոյնպէս մի փառաւոր շըրջան ունեցաւ, երբ կառավարում էին Գրիգոր Գ. Պահլաւունի, Ներսէս Դ. Շնորհալի եւ Գրիգոր Դ. Տղայ։ Նոյնը կրկնուաւ նաեւ Հայոց պատմութեան ամենաթշուառ ժամանակ, այն է՝ Շահաբաս մեծի բռնութիւններից յետոյ ԺԷ. դարում, երբ Էջմիածնի կաթուղիկոսութիւնն անցաւ Սրապիոն, Մովսէս, Փիլիպպոս եւ Յակոբ կաթուղիկոսների ձեռքը, որոնք միեւնոյն աշակերտութիւնից էին եւ Հայոց վերանորոգութեանն առաջնորդ եղան։

2. Ակոռի գիւղ։

“Իսկ եկեալ... բանակեցան՝ ի գեօղն Մասեաց... Ակոռի„ (եր. 376 Ղազար)։ Այս գիւղը չէր մինչեւ 1840 թուականի մեծ շարժը եւ գտնւում է Մեծ Մասիսի հիւսիսային ստորոտում։ Ինչպէս երեւում է՝ պատերազմը կատարուեցաւ Երասխ գետի եւ Մասիս սարի մէջտեղը. ըստորում Մասիսի հիւսիսային ստորոտը բաւականին ցած է իջնում դէպի դաշտի կողմը միանալով Երասխի աջակողմեան ափի հետ։

Ակոռի գիւղի անուան հետ կապուած են շատ յիշատակներ Հայոց պատմութեան մէջ, նա մանաւանդ շատ առասպելներ եւ աւանդութիւններ։ Այստեղ է տնկել, ըստ աւանդութեան, Նոյ նահապետն առաջին գինեբեր որթը. այստեղ է հանգիստ առել սուրբ Յակոբը եւ ընդունել հրեշտակից Նոյեան տապանի մասը. այստեղ է այն ահագին պատառուածը, ուր անհետ եղաւ գոռոզ Արտաւազդն Արտաշիսեան, որ դեռ պիտի դուրս գայ աշխարհս տակնուվրայ անելու; եթէ Հայոց դարբինները չծեծէին անդադար իրենց երկաթի սալերը... Թողնինք մէկ կողմ եւ այն, որ իբրեւ պատմական իրողութեանց տեղ Ակոռին բազմիցս յիշուում է մեր պատմիչների գրուածոց մէջ. տեղի անձկութիւնը մեզ չի ներում միառմի թուել այդ ամէնը. հարցասէր ընթերցողը առայժմ թող բաւականանայ Փարպեցու պատմածովս։ Ակոռու վանքի մասին այսպէս է գրում Յովհաննէս կաթուղիկոսը. “Ապա յաջորդէ զաթոռ հայրապետութեանն Անաստաս ի գեղջէն Ակոռոյ, որ ի Մասեաց Ոտին. (Է. դար.) Սա շինէ զպայծառապաճոյճ եկեղեցին ի հայրենի բնակութեանն իւրում ի վանս դաստակերտին Ակոռոյ՝ կացորդ գնա յարդարեալ... միակրօնից... ի պաշտօն աստուածային խորանին եւ ի ժողովրդեան հանդեր-ձեան հիւրոց եւ տնանկաց եւ աղքատաց (եր. 52)։



## ԳԼՈՒԽ ԻԲ.

1. Կանգարաց գաւառ:

"Յարուցեալ վաղվաղակի եւ անյապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքայն Վրաց հասանէին եւ բանակեալք առ վայր մի ի գաւառին Կանգարաց դադարէին: ... Թէպէտ եւ սօթ էր ժամանակն հարկաւորեցան իջանել ի դաշտն Ճարմանայնոյ եւ յիշխանացն Հայոց ոմանք ոչ յաջող համարէին զէջս գնդին Հայոց ի Վիրս: ... Եւ չեւ եւս անցեալ աւուրս երեք կամ չորք դայր հասանէր Միհրան եւ բանակէր դէմ յանդիման բանակին Հայոց մօտ ի բանակն յայնկոյս գետոյն զոր Կուր գետն անուանեն. եւ բանակն Հայոց չուեալ յայլ տեղի հեռագոյն ի բանակէն Պարսից:,, Ղազար, եր. 404 եւայլն:

Ղազարի այս խօսքերից երեւում է, որ կանգարաց գաւառը գտնուում էր Հայաստանի հիւսիսային կողմը Վրաց սահմաններին մօտ Կուր գետի աջ կողմից: Կուր գետի ափումը կար մի դաշտ Ճարմանայնի անունով, որն արդէն Վրաստան է համարուում Փարպեցու խօսքով: Խորենացին ասում է որ Գուշարն հասու կանգարք, որ է լեառն Մթին. եւ կանգարք գաւառը երկու տեղ էլ դնում է իւր աշխարհագրութեան մէջ. Վրաստանում եւ Գուգարք գաւառում, որ նշանակում է թէ երկու երկրում էլ այդ անունով գաւառներ կային: Շօպէնն երեւի Խորենացու խօսքերից առնելով ասում է, որ կանգարքը Գուգարքի ամենավերջին գաւառն է ութ-նըւէից Մթին ասուած լեռների մէջ: Այս բոլոր տեղեկութիւններից պէտք է եզրակացնել, որ կանգարքը այժմու Բօրչալուայ կողմերը պէտք է լինէր, Բօրչալու գետի վրայով դէպի արեւելահիւսիս. ըստորում Մթին լեառն ասուած սարերին համապատասխանում են այժմու Մօկրայա եւ Լալուար ասած սարերը, որոնք մեծ մասով մառախլապատ են եւ մութը: Բացի այն՝ այդ տեղերն են

*Հին Գուգարքի արեւելեան եզերքը եւ աւելի մօտ են Գէ·ԻՂ երեւում Տայոց գաւառին, ուր առանձնացաւ անյաջող պատերազմից յետոյ Վահան Մամիկոնեանը։ Իսկ Ճարմանայնու դաշտն երեւի ընկնում էր Բօրչալուի եւ Կուր գետի իրար հետ խառնուելու տեղում։*

---

2. Դու գիւղ, } տես գլ. Է. 6։
3. Մկնառինճ գիւղ, }

## ԳԼՈՒԽ ԻԹ.

1. *Ցղքաղ:*

*Տայքի հարաւային գաւառներից մէկն էր՝ Բասենին սահմանակից: Շօպէնն ասում է, որ այդ գաւառն ընդ ամէնն երկու գիւղ ունէր:*

---

2. *Ճաղագոմ գաւառ:*

*Այն ժամանակ երբ Հայոց երկիրը երկու մասն էր եղել Յունաց եւ Պարսից իշխանութեան տակ եւ իւրաքանչիւր բաժնի հայ ժողովուրդը ապրելով օտար պայմանների մէջ հետզհետէ կորցնում էր թէ՛ հաւատի եւ թէ՛ ազգային միութեան սէրը, Ս. Սահակ Պարթեւ կաթուղիկոսն (Ե. դար.) ինչպէս վկայում է Խորենացին, "Թողու զՄեսրոպ ի վերայ վարդապետութեան կողմանն արեւմտից (Յունաց)...,, Հրամայէ քննել զժանտագործ Բորբորիտոնսն եւ եթէ ոչ հեզութեամբ եւ ոչ սաստիւ գայցեն յուղղութիւն՝ չարչարանօք հալածել. զի թշնամանք ի թշնամանաց վրէժ առնուցուն եւ խայտառակեսցի իրաւացի մահուամբ անիրաւ մահ հոգւոց . . . Եւ Մեսրոպայ կացեալ, ասում է, յանապատ եւ ի հովանաւոր տեղիսն, որ Ճաղգոմն անուանին, բովանդակեաց զվարդապետութիւնս առաջին առելոց խմբիցն: Քանզի ոչ որպէս արուեստ ուսուցանէր, այլ իբրեւ զհոգի առաքելաբար աշակերտելոցն տայր: Յետ որոյ թողեալ վերակացուս յիւրոց աշակերտելոցն ի նմին տեղւոջ, ըզՂեւոնդ եւ զՑենովք ի Սպեր, իսկ ի Դերջան զնոցին եպիսկոպոսն զԳնիթ, եւ յԵկեղեաց՝ զԴանան, ինքն եկեալ յԱյրարատ, անցանէ յառաջնոյ բնակութեան գաւառն Գողթն:,,*

*Խորենացու այս խօսքերից երեւում է, որ Ճաղգոմքը Սպերին (Տայքում) եւ Դերջանին (Բարձր Հայքում) սահմանակից է: Բացի այն՝ Խորենացու աշ-*





խարհագրութեան մէջ յիշուած է Շատգոմք անունով ԳՆ.ԻԹ.[3] գաւառ Բարձր Հայքում. Թերեւս Շաղգոմք եւ Շատգոմք միեւնոյն գաւառի անուններն են, ըստորում Շաղգոմքն առանձին չի պատահում գաւառների բաժանման մէջ։

Փարպեցու յիշած Վարայրվարոյն գիւղն էլ այդ գաւառումն էր գտնւում, բայց թէ ուր, չգիտենք։

---

3. Արծաթաղբերը, տես գլ. Ի. 6։

## ԳԼՈՒԽ Լ.

1. *Ցայր հնչեցուցանել զփողս պատերազմականս, յորմանէ զարհուրեալք ալք զօրուն եւայլն։*

*Ուշադրութիւն պէտք է դարձնել յորմանէ խօսքի վերայ, որ գործ է ածուել յորմէ խօսքի տեղ։ Սորա-նից պէտք է եզրակացնել, որ երբեմն եղել է որմն, որման խօսք իբրեւ յարաբերական դերանուն, ինչպէս որ կայ ամն, յոգն. ամանք։*

Ե Բ

## Անձերի եւ անցքերի ժամանակագրական պատմութ

| Մարզպանների յաջորդութիւնը | | | | Կաթողիկոսների յաջորդու | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ն ո ւ ն | Թուական Ք. յ. | տարիներ | Պատմիչների վկայութիւնը | Կարգ | ա ն ո ւ ն | Թուական Ք. յ. | տարիներ | վկ |
| ․Հրշապուհ | 432—445 | 13 | Ասող. եղիշ. Սեբէոսը ասում է 13 տարի. | ա. | Սուրմակ | 432—433 | 1 | Խոր |
| | | | | բ. | Բրքիշոյ ասորի | 433—435 | 3 | ն |
| | | | | գ. | Շմուէլ ասորի | 435—439 | 5 | ն |
| | | | | դ. | Ս. Մեսրոպ տեղա-պահ | 439—440 | 6 | ամ |
| կ Սիւնի | 445—453 | 8 | որոշ յայտնի չկայ այլ հաւանական է | ե. | Ս. Յովսէփ | 440—453 | 12 | Փար ներն 16 գ Յվհ. 8 ա Մխի |
| միզդ Արշա- | 453—464 | 11 | նոյնպէս | զ. է. | Մելիտէ Մանազկերտեցի; Մովսէս Մանազկերտեցի | 453—471 | 18 | որ բայ |
| նապ Յոզ-ևան | 464—483 | 19 | նոյնպէս | ը. | Գիւտ | 471—481 | 10 | Յովհ ներն |
| Բագրա-ն | 483—484 | -1 | Ղազար փարպ. | թ. | Ս. Յոհան Մանդա-կունի | 481—487 | 6 | Վարդ Մխի ն Մխի |
| ան | 486—486 | -1 | նոյն. | | | | | |

## ԱՂԻՒՍԱԿ

– Նեաց Թագաւորութեան անկումից յետոյ։ (Հայոց մարզպանութիւն։)

*Ե՞րբ, ի՞նչ անցք է պատահել մարզպանների օրով*

| Թուական | Ա Ն Ց Ք |
|---|---|
| 432 | Արշակունեաց թագաւորութեան անկումը։ |
| 438 | Յազկերտ Բ. թագաւորում է։ |
| 439 | Ս. Սահակ Պարթեւը վախճանւում է։ |
| 439 | Յազկերտ Բ. սպառնում է Յունաց կայսրութեան գաւառներ |
| 440 | Ս. Մեսրոպ վախճանւում է։ |
| 441 | Հայոց զօրքը գնում է Ապար աշխարհ։ |
| 445 | Վասակ Սիւնին նշանակւում է մարզպան Հայաստանի։ Բ մարզպան։ |
| 449 | Դենշապուհ Պարսիկը փոփոխութիւն է ձգում Հայաստանում։ |
| 449 | Յազկերտ Բ. գնում է Քուշանաց դէմ պատերազմելու։ |
| 449 | Արտաշատ քաղաքում լինում է ազգային ժողով եւ գրում են Յազկերտի Հ |
| 449 | Հայոց նախարարներն երեսանց ուրանում են քրիստոնէական հաւատը։ |
| 450 | Հայոց զօրքը գնում է Աղուանքին օգնութեան։ |
| 450 | Հայերը խնդրում են Յոյներից օգնութիւն, բայց չեն գտնում։ |
| 451 | Վարդանանց պատերազմ Աւարայր դաշտի վերայ գարնան սկզբին։ |
| 451 | Հայերն ամրանում են բերդերում եւ հակառակում մարզպանի եւ Պարսից |
| 453 | Վասակ Սիւնի մարզպանը գնում է Տիզբոն եւ կալանաւորւում։ |
| 453 | Ատրորմիզդ Արշականը նշանակւում է մարզպան Հայաստանի։ Գ. մարզպա |
| 453 | Յովսէփ կաթուղիկոսին եւ կալանաւորած եկեղեցականներին ու նախարարնե<br>չապուհ քաղաքում։ |
| 453 | Հրատից 25ին = օգոստ. 2ին նահատակւում են Ս. Յովսէփն եւ մի<br>նահատակութիւնը)։ |
| 454 | Վրաց Աշուշայ բդեշխն ազատում է Հմայեակ Մամիկոնեանի որդւոցը։ |
| 457 | Յազկերտ Բ. մեռնում է։ |
| 459 | Պերոզ թագաւորում է։ |
| 464 | Հայոց նախարարներն արձակւում են կապանքից եւ գալիս են Հայաստա |
| 464 | Ատրվշնասպ Յօզմանդեանը նշանակւում է մարզպան Հայաստանի։ Դ. |
| 483 | Վահան Մամիկոնեանն եւ ընկերներն ապստամբում են մարզպանի |
| 483 | Ակոռու եւ Ներսեհապատի } ճակատամարտը։ |
| 484 | Վահան Մամիկոնեանը գնում է Վրաց օգնելու։ |
| — | Սահակ մարզպանը մեռնում է պատերազմում։ |
| — | Զարմիհր Հազարաւուխտը գալիս է Հայաստան։ |
| 485 | Պերոզը մեռնում է Հեփթաղաց պատերազմում։ |
| 486 | Վաղարշ թագաւորում է։ |
| — | Նիխորը գալիս է Նուարսակ Վահանի հետ խաղաղութիւն խօսե |
| — | Անդեկանը նշանակւում է մարզպան Հայաստանի։ |
| 486 | Անդեկանը հրաժարւում է Հայոց մարզպանութիւնից եւ նորա<br>միկոնեանը։ |

375—378 *թուին. Վաղէսին յաջորդեց Թէոդոս Մեծ 379—395 թուին։ Ուրեմն Արշակ Բ.ը թագաւոր նստաւ Վաղենտինիանոսի Ա. տարին այն է 364 թուին. թագաւորեց Վաղենտինիանոսի եւ Վաղէսի ժամանակ եւ գահից ընկաւ Վաղէսից յետոյ. այս երեւում է նորանից, որ Ներսէս Մեծը դեռ նոր էր վերադարձել աքսորից Թէոդոս Մեծի թագաւորութեան Ա. տարին, երբ Պարսից Ալանոզան զօրավարն եկաւ զօրքով Արշակի վերայ եւ բռնեց նորան ու տարաւ Պարսկաստան, որով եւ վերջացաւ նորա թագաւորութեան ժամանակը. գուցէ նա կապանքի տակ աւելի երկար ապրեցաւ, բայց այսքանը հաստատ է, որ Թէոդոս Մեծի ժամանակ արդէն թագաւոր չէր, այլ Ներսէս Մեծն եւ նախարարք այդ կայսեր օգնութեամբ թագաւոր դրին Արշակի որդուն Պապին։*

*Այսպէս Արշակի թագաւորութիւնը չէր կարող աւելի տեւել քան 364—380, այսինքն 16 տարի եւ ոչ էլ դորանից պակաս։ Սորանից հետեւում է, որ Խորենացու յիշած 30 տարին, կամ Փաւստոսի յիշած "առաւել քան զ30 ամ,, եւ կամ միւս պատմիչների յիշած 7 ամ ժամանակը, որ տալիս են Արշակ Բ.ի թագաւորութեանը, սխալ է եւ շփոթ։ Արշակը չէր կարող ոչ մի կերպով 30 տարի թագաւորութիւն անել. այն ժամանակ նա պէտք է մինչեւ Թէոդոսի մահը թագաւորած լինէր որ անհնարեւ հակառութիւն է նոյն իսկ Խորենացու վկայութեանը. շատ կարելի է, որ նա ընդ ամէնը 30 տարի կեանք է ունեցել իւր գահակալութեան օրից մինչեւ իւր մահը, այդ այլ խնդիր է։*

*Արշակ Բ.ի թագաւորութեան ժամանակի հետ կապ ունի եւ Ներսէս Մեծի հայրապետութեան ժամանակը։ Խորենացին ասում է՝ Ներսէս Մեծ կաթուղիկոս նստաւ Արշակ Բ.ի Գ. տարին, կառավարեց երեսուն չորս տարի ու վախճանեցաւ Պապի ժամանակ։ Եթէ Արշակ Բ. 30 տարի չթագաւորեց այլ միայն 16 տարի, խօսք չկայ, որ Ներսէս Մեծի 34 տարի հովուելն էլ անկարելի բան է. Հաստատ է, որ նա Արշակի Գ. տա-*





րին Նատաւ եւ Պապի Գ. կամ Դ. տարին վախճանեցաւ. ուրեմն նա էլ չէր կարող աւելի հովուել քան 366—384 այսինքն 18 տարի. իսկ եթէ Խորենացու ասածով լինէր, այն ժամանակ Ներսէս Մեծի վերջին տարին պէտք է լինէր 366+34=400 թուականը, երբ կառավարում էր նորա որդին Սահակ Պարթեւ։

---

4. Արշակունեաց անկումը, տես գլ. Ա. 8։

---

5. Վասակի Մարզպանութիւնը, տես գլ. ԺԳ. 2։

---

Հայոց անարժան կաթողիկոսները ի գահում Սուրմակ, Բրքիշոյ եւ Շմուէլ: Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի մահը*:

Իսկ տանուտերացն Հայոց, որոց խոստացեալ էր գէթ ուղղափառութիւնն Սուրմակայ՝ Արծկեցի երիցուն․ նստուցին զնա յաթոռ կաթուղիկոսութեան Հայոց․ բայց Սուրմակայ ոչ աւելի աեւեալ քան զմի ամ՝ ի նոցին նախարարացն հալածեցաւ յաթոռոյն․ որ ապա գերոյ գաւառին զԲզնունեաց զեպիսկոպոսութիւնն ի Պարսից արքայէ եդիտ ունել ազգաւ: Խնդրեցին այնուհետեւ նախարարքն Հայոց յարքունուստ կաթուղիկոս եւ Թագաւորն Վռամ ետ նոցա զԲրքիշոյ ոմն Ասորի․ սա եկեալ յաշխարհն Հայոց իւրովք գաւառակցօք յԱսորեստանէ՝ ըստ սովորութեան իւրեանց աշխարհին՝ ածեալ ընդ իւրեանս եւ կանայս անկալուչս՝ եւ ոչ կէին ըստ ամբիծ կրօնիցն, զոր եդեալ էր՝ յամենայն եկեղեցիս Հայոց սրբոյն Գրիգորի․ այլ անժուժաբար եւ աւելորդօք եւ յափշտակութեամբ վախճանելոցն մինակաց վարեալ ամս երիս: Իսկ տաղտկացեալ մեծամեծ տանուտեարքն Հայոց եւ աւագ սեպուհքն եւ ամենայն ժողովրդոցն բազմութիւնք ընդ վարս մարդկան, որք եկեալ էին ընդ Բրքիշոյի․ սուգ առեալ հեծէին անմխիթար՝ զքանչելի քահա-

* Այս գլուխն իրօք պէտք է Հիւսուածքի առաջին եւ երկրորդ գրքերում երկրորդ գլխի տեղը լինէր․ բայց որովհետեւ սորա բովանդակութիւնն ամբողջութեան մէջ համեմատաբար երկրորդական նշանակութիւն ունի եւ միջանկեալ պատմութիւն է, այդ պատճառով մենք անյարմար համարեցինք դնել այն տեղում: Այնուամենայնիւ Վեհմիհրշապուհի մարզպանութեան ժամանակի վերայ աւելի լիակատար գաղափար ունենալու համար կարեւոր է գիտենալ եւ կաթուղիկոսական աթոռի վիճակը․ այդ պատճառով եւ պարզ համարեցինք ընթերցողների համար տեղաւորել այստեղ այդ գլուխը՝ հիւսուածաբար կազմելով ժամանակակից եւ այլ պատմիչների խօսքերից միմիայն գրոց լեզուով․ բովանդակում է իւր մէջ ութնամեայ ժամանակի նկարագիր այն է 432ից մինչեւ 440 թուականը Ք․ յ․:





նայք սուրբ եկեղեցւոյ՝ յառաքելանման աջոյ հայրապետին ձեռնադրեալք. եւ չկարացեալք հանդուրժել, մերժեցին զԹըքիչոյն՝ ծանուցանելով Վռամայ թէ «ոչ են կարգք սորա եւ վարք ըստ կարգի մերոյ աշխարհի ուսման. տո՛ւր մեզ առաջնորդ ըստ մերում բնիկ կարգիս, որ եղեալ վերակացու կալցի հաստատուն զկարգք սուրբ եկեղեցւոյ»։ Եւ յերկուս բաժանեալ նախարարքն Հայոց յիւրաքանչիւրոցն առաքեցին խնդրել աթոռակալ յարքայէն Պարսից. Վաչէ Արծրունեաց տէր եւ Հմայեակ Աշոցաց[2] տէր՝ զոր ոք արքայ կամեսցի. իսկ Մանէճ Ապահունեաց տէր եւ Սպանդարատ Արշարունեաց[3] տէր՝ զՄեծն Սահակ. նաեւ զօրավարին Անատօլեայ[4] ի Կարնոյ զհաւուկ ոմն ի Կուկայառճոյ. յղեցին եւ բազմութիւնք եպիսկոպոսացն հանդերձ երանելեաւն Մեսրոպաւ եւ բովանդակ ուխտիւ եկեղեցւոյն մաղթանօք զքահանայն Տիրուկ զորդի Մովսիսկան ի Ջարիշատէ Վանանդայ։ Իսկ Վռամ յերկմիտս եղեալ կասկածանօք տարուբերէր՝ մի՛ գուցէ ոչ առնելով իմ զոր խնդրեն՝ առ կայսր Յունաց հաստատեալ անկանիցին նախարարքն՝ հարկել եւ զինուորել կայսեր։ Վասն որոյ զերկաքանչիւրոցն կատարեաց զխնդիր՝ տուեալ յաթոռ եպիսկոպոսապետութեան զայլ ոմն ասորի Շմուէլ անուն, զի լիցի ընդդիմափառ Մեծին Սահակայ եւ հակառակաթոռ. եւ գործ նմա զատուցեալ՝ զընկերել մարզպանին, կալ ի վերայ բաշխից հարկաց խնդրեցելոց եւ դատաստանաց եւ այլ աշխարհական կարգաց։ Եւ զՄեծն Սահակ արձակեալ թողու ի նա սակաւ գիւղս ի նորին տանէ, զի նստցի յինքեան՝ միայն իշխանութիւն ունելով վարդապետութեան սովորական կրօնիցն եւ ձեռնադրութեան զայնոցիկ, զորոց եւ Շմուէլն յանձն առնուցու։ Բայց յարձակելն յանդիման իւր արարեալ ի բազմակոյտ ատենին, ասէ. «Երդմնեցուցանեմ զքեզ ի քոյին հաւատ՝ միամիտ կալ ի ծառայութեան մերում եւ ոչ խորհել իրս ապստամբութեան՝ պատրել ի մոլար հաւատակցութիւնն Յունաց եւ լինել կորստեան պատճառ աշխարհին Հայոց ի

մէնջ։„ Յայնժամ կանգուն կացեալ մեծին Սահակայ՝ պարկեշտ եւ նազելի զինքն կազմեալ ի բեմբասացութեան ձեւի համեստ հայեցուածովք, համեստագոյն եւս ձայնիւ սկսաւ ճառել զերախտիս ծառայութեան եւ զապերախտն ի նոցանէ լինել. ընդ նմին եւ զկեղծաւոր քաղցրաբանութիւնն նոցա յանդիմանելով եւ եւ զդառնութիւն խորհրդոցն եւ զգործս չարաչարս. յարելով զընդդիմաբանել հայհոյութեանցն, զոր ասաց մոլար հաւատակցութիւն. եւ զնոցայն խայտառակելով պաշտամունս, կատարեաց ի հրաշալի աստուածաբանութիւն ըստ հանդուրժելոյ հեթանոսական լսելեաց. որով զգազաղացան մոգուցն լեզուք եւ հիացեալ պակեաւ ինքնին թագաւորն եւ ամենայն բազմութիւն հրապարակին. մինչեւ հրամայեաց Վռամ արծաթ բազում տալ նմա. այլ նորա ոչ առեալ ասէ ցհամազգին իւր Սուրէնն Պահլաւ[5]. "Արծաթ նորա նմա լիցի. բայց դու հաւանեցուսցես զնա տալ ինձ զերկուս զայս միայն. զգահ նախարարացն Հայոց, որպէս կարգեալ է յԱրտաշրէ եւ վարեցան մինչեւ ցայժմ, նովին օրինակաւ հրամայեսցէ եւ առ յապայ, զի մարզպանք Պարսիկք մի կարասցեն ծանուցմամբ սակս այնր առնելով ինչ գերազանցօրէն փոփոխել ըստ կամաց իւրեանց. եւ միւս եւս զի դարձուսցէ ընդտուն ազգականին իմոյ եւ քոյ՝ զմանկան Գազաւոնի զորդւոյն Հրահատայ, թէեւ ոչ յիւրում եւեղ՝ զԱրշակունին յաչաղելով անուն, գէթ ի կարգ ընկեցեալ ընդ այլ նախարարսն թուեսցի, յորում տեղւոջ ինքն կամեսցի։„ Այնմ լուող եղեալ Վռամայ հրամայէ զամենայն կատարել. եւ դարձեալ հաստատելով զԹոռն նորին զՎարդան սորատելատն ի տէրութեան իւրոյ ազգին Մամիկոնէից, արձակէ ի Հայս։

Եկեալ Շմուէլի կալաւ զաթոռ եպիսկոպոսապետութեանն՝ հետեւեալ վարուցն Բրքիշոյի եւ առաւել եւս ագահութեանն մասամբ. զի նա զվախճանեալ եպիսկոպոսացն յափշտակեաց զվիճակ, այլ սա եւ ընդկենդանեացն. քանզի փոխանորդ մեռելոց ոչ տայր թողլ մեծին Սահակայ ձեռնադրել. եւ զկենդանեացն





դոյզն ինչ պատճառս գտեալ խափանման հարկաց ար-
քունի՝ հալածական առնէր, յինքն կորզելով զամե-
նեցուն զտունս բայց ի Սուրմակայն յայնմանէ, զորոյ
եւ մեծացոյց իսկ զվիճակն արքունի հրամանաւ հա-
նեալ ի բազմաց նմա հաւատայր. ընդ որ նախանձեալ
եւ այլ եպիսկոպոսաց՝ ժպրհեցան զնոյն առնել օգ-
նականութեամբ իւրաքանչիւր իշխանաց։

Իսկ Անատողի զօրավարն Յունաց զՀաւուկ կու- *Թովմայ Արծր.*
կռաճացի կացոյց մասին Յունաց եպիսկոպոսապետ։ Եւ
այսպէս աղմկեալ եւ շփոթեալ երկիրս Հայոց կեայր
լի անկարգութեամբ՝ ըստ յօժարութեան Վաչէի
Արծրունւոյ։

Եւ եղեւ ի դառնալն սրբոյն Սահակայ ի Պարսից
եկն առ նա Աղան Արծրունի [6] եւ ընկալաւ ի նմանէ
զքեմ կրօնաւորութեան եւ երթեալ բնակէ առան-
ձնապէս ի Գողթն գաւառի ի տեղւոջ վարդապետու-
թեան սրբոյն Մեսրոպայ, զոր Թողեալ խարսխեաց *Խորեն.*
Սահակ յեկեղեցւոջն կաթուղիկէ, որ ի Վաղարշա-
պատ, ինքն կալով ի Բագրեւանդ գաւառի։

Բայց Շմուէլ կեցեալ ամս հինգ մեռանի ի մե-
րում աշխարհիս։ Յայնժամ ժողովեալ ամենայն նա-
խարարացն եւ բովանդակ ուխտին եկեղեցւոյ եւ ժո- *Ղազար.*
ղովրդոց միահամուռ դիմեալք բուռն հարկանէին զո-
տից սրբոյ առն Աստուծոյ Սահակայ եւ ասեն. "Մեղաք
յերկինս եւ առաջի քո. թող մեզ մեղուցելոցս եւ
ձեւացո՛ զքեզ ըստ օրինակի նախնւոյն քո սրբոյն
Գրիգորի, որ ոչ յիշեաց զայնչափ տանջանս եւ զքե-
րանս, զոր անցուցին ընդ նա նախնիքն մեր։,, Եւ աղա- *Խորեն.*
չէին զնա դարձեալ ունել զաթոռն. խոստանային ի
Պարսից արքայէն հաստատել զնա՝ մուրհակ ամենե-
ցուն կնքեալ ազգաւ տալ թուանց նորա զնոյն իշխա-
նութիւն։ Այլ նա ոչ յանձն առնոյր. այլ խաղաղա- *Ղազար.*
կան պատասխանատուութեամբ ասէր. "Ես ոչ ուսայ ի
վարդապետէն Քրիստոսէ բարկանալ ումեք, այլ քա-
հանայանալ ի վերայ տիրանենգ եւ տիրասպան եւ
մատնիչ ժողովրդոց ոչ կարեմ։ Արդ դուք ձեզէն եղէք
վրէժխնդիր թագաւորին ձերոյ եւ. զայրացեալք նմա՝

զուրբ հաւատ 'մեր' մատնեալ ծաղր եւ տուք առնել անօրինացն. Ի՞ւ զիս արդեօք ջանայցէք մխիթարել եւ կամ ո՞ւմ թախանձեցուցանէք զիս քահանայանալ, որ զվիրաւոր աշխար հօտին Քրիստոսի տեսանեմ ոչ պատեալ եւ օծեալ եւ եդեալ ի վերայ գրաստու եւ տարեալ ի պանդոկի, այլ առաջի գիշակեր գազանաց ընկեցեալ:,, Եւ ի բազում թախանձելոյ նոցա հարկաւորեալ պատմեաց 'Սահակ' զտեսիլն, որ յառաջ երեւեցաւ նմա: Եւ նախարարացն գիտացեալ թէ յաստուածային հրամանէ դադարեաց յազգէ նորա քահանայապետութիւնն' զարհուրեցան եւ այնուհետեւ ոչ ոք իշխէր յաղագս այսպիսի բանից խօսել ընդ նմա:

Խորեն.

Ղազար.

Զքսան եւ մի ամ թագաւորեալ Վռամ Բ. մեռանի' թողլով զտէրութիւնն որդւոյ իւրում Յազկերտի, որոյ մոռացեալ զհաշտութիւնն իսկ եւ իսկ դիմէ ի վերայ Յունաց ի Մծբին' հրամայելով զնդին Ատրպատականի ի մեր աշխարհս ելանել: Որք եկեալ բանակեցան հուպ առ Բագնացն աւանի: Եւ այս ամենայն այսպէս եղեալ' կեցեալ սուրբ Սահակ ամս հարիւր քսան, 'եհաս նմա' հիւանդութիւն մահու, եւ առեալ աշակերտացն' տարան ի գեօղն, որ կոչի Բլուր 'ի գաւառին Բագրեւանդայ 'որպէս ի վայր ընդանեգոյն եւ զերծ ի զօրացն Պարսից: Ուր եհաս վախճան' կեցեալ եպիսկոպոսապետութեամբն ամս երեսուն եւ մի' սկսեալ յերկրորդ ամէ վերջնոյ Խոսրովայ Հայոց արքայի մինչեւ ցսկիզբն ամին երկրորդի Յազկերտի յելս ամսոյն Նաւասարդի յաւուր իւրոյ ծննդեանն' յերկրորդ ժամու աւուրն ի պաշտաման անուշահոտ իւղոյն*: Եւ ոչ դոյր իւր որդի, բայց միայն դուստր մի տուեալ կնութեան Համազասպայ' տեառն Մամիկոնէից եւ Հայոց սպարապետի, որ ծնաւ ի Համազասպայ երիս որդիս' զսուրբն Վարդան, զսուրբն Հմայեակ եւ զերանելին Համազասպեան, որոց եւ եւ

Խորեն.

Թովմայ Արծր.

Խորեն.

Ղազար. Խորեն.

Կորիւն.

Ղազար.

* Կորիւն ասէ. "Յառաջնումն ամի Յազկերտի ի Բագրաւանդ ի գիւղ Բլրոցաց:,, Իսկ Ղազար ասէ. "Յամսեանն Նաւասարդի, որ օր երեսուն էր ամսոյն յերրորդ ժամու աւուրն:,,





կնքեայ Սահակ զստացուածս գեօղից իւրոց եւ ագա-
րակաց ի ժառանգութիւն մինչեւ յաւիտեան։ Բայց
զպատուական մարմին նորա բարձեալ սարկաւագա-
պետին նորին Երեմիայի[8] հանդերձ աշակերտակցօք եւ
տիկնաւն Մամիկոնենից՝ նորին նուաւ, որում անուն
էր Դստրիկ՝ կին Վարդանայ, տարեալ հանգուցին
յիւրեանց գիւղն յԱշտիշատ ի գաւառին Տարօն։
Եւ անդ շինեալ եկեղեցի մեծապայծառ՝ զարդարե-
ցին 'Մամիկոնեանքն' մեծագին զգեստուք, կանգնե-
ցին վանս բազմութեան պաշտօնէից՝ կարգեալ դար-
ման անպակաս պտղոց ի հանգիստ եղբայրութեանն,
ժողովս տարեւորականս հաստատեցին, որ բազմամբոխ
ժողովրդօք ազատք եւ քահանայք գաւառին, այլ եւ
ի հեռաւոր տեղեաց դիմեալք՝ յօր կարգադրութեան
նորա կատարեն։ — Խորէն.

Եւ ցրուեալ աշակերտաց նորա 'Սահակայ' կրօ-
նաւորաց սպուղէից ի գաւառս իւրաքանչիւր վանո-
րեայս շինեցին ժողովեալ եղբարս։ — Խորէն.

Իսկ երանելի զուգականին լուեալ, զՄաշթոցէ
'զՄեսրովբայ' ասեմ, բազում տրտմութեամբ եւ ող-
բովք եւ ոգովք պաշարեալ գնէր. բայց թէպէտեւ
միայնաւորութեանն տրտմութիւն չթողոյր զուարթա-
նալ, սակայն զվերակացութիւն սրբոյ եկեղեցւոյ ա-
ռանց պակասութեան տանէր. եւ բազում թուղթս
խրատագիրս եւ զգացուցիչս ընդ ամենայն գաւառս
առաքէր։ Անդէն ի նմին ամի յետ ամսոց վեցից ան-
ցելոց վախճանի երանելւոյն Սահակայ լինէր հանդերձ
սրբով վարդապետով 'Մաշտոցաւ, Մեսրովբաւ' բա-
նակն Հայոց յԱյրարատեան ի Նոր քաղաք, 'ուր եւ'
հասանէր սրբոյն քրիստոսակոչ կատարումն յետ սա-
կաւ ինչ աւուրց հիւանդութեան յերեքտասաներոր-
դում ամսեան մեհեկանի։ Եւ յորժամ որոշեալ ի մի-
ջոյ ձեռնասուն աշակերտաց ի դունդն Քրիստոսի հա-
սանէր, համբարձեալ զձեռսն վասն նոցա օգնութիւն
հայցէր։ Եւ անուանք գլխաւոր աշակերտացն են՝ Յով-
սէփ եւ Թադիկ[9]. ի զինուորական կոչմանն Վահան
յազգէն Ամատունեաց[10] հազարապետ* Հայոց մեծաց

Margin notes: Խորէն. (beside "Բայց"); Ղազար. (beside "Եւ անդ շինեալ"); Կորիւն. (beside "Իսկ երանելի")

* Թովմայ ասէ. "Սպարապետ Հայոց։"

եւ Հմայեակ Մամիկոնեան։ Եւ մինչդեռ ձեռք սորայն յերկինս կարկառեալ էին, տեսիլ սքանչելի խաչանման լուսաւոր շողաւոր ձեւ երեւէր ի վերայ ապարա-

Խորէն. նիցն, յորում երանելին վախճանէր։ ՚Եւ փոխեցաւ ‘Մեսրոպ’ յաշխարհէ գերազանցեալ քան զամենայն, որ զայնու ժամանակաւ էին առաքինիք. վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, մտօք ծննդական, բանիւք պայծառ, գործովք ժուժկալ, սարասիւք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող, սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ։

Յայնժամ լեալ աղմուկ շփոթի բաժանեալ յերիս գունդս՝ վասն հանգուցանելոյ զպարկեշտն զայն մարմին. կէսքն ասէին տանել ի բնագաւառն իւր ի Տարօն. եւ ոմանք ի Նախաշակերտեալն Գողթն եւ այլքն անդէն ի Վաղարշապատ քաղաքի ի սրբոյն դիրս։ Բայց յաղթեալ քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք եւ ճոխութեամբ մարմնաւո-

Կորիւն. րաւ։ ՚Առեալ Վահանայ եւ Հմայեկի հանդերձ աշխարհական ամբոխիւ, սաղմոսիւք եւ օրհնութեամբ եւ հոգեւոր ցնծութեամբ, կանթեղօք վառելովք եւ ջահիւք բորբոքելովք եւ ամենայն լուսաճաճանչ գնդիւ եւ այնու խաչանշան լուսաւոր առաջախաղաց նշանաւն

Թովմայ Արծր. Կորիւն. յՕշական ՚ի գաւառին որ կոչի Ոստն Արագածոյ ՚եղանէին. եւ անդ ի մարտիրոսարանն մատուցեալ՝ ապա նշանն աներեւոյթ լինէր։ Իսկ յետ երից ամաց յաջողեցաւ Վահանայ Ամատունւոյ խորան սքանչելի կանգնել՝ ի ներքսագոյն խորանին զսրբոյն հանգստարան յօրինեալ. սպաս վայելուչս գունագոյնս պայծառատեսիլս ոսկւով եւ արծաթով եւ ականբք պատուականօք ի յիշատակարան սեղանոյն պատրաստեաց, եւ ամենայն սրբովք հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ ի հանգիստ խորանին փոխէ. եւ զնորին աշակերտ Թադիկ անուն հանդերձ եղբարբք սպասաւոր սրբոյն կարգէ։ Եւ լինի համար հաւատոյ երանելւոյն ‘Մեսրոպայ’ ամք քառասուն եւ հինգ եւ ի դպրութենէն Հայոց մինչեւ ցվախճան սրբոյն ամք երեսուն եւ հինգ։





Իսկ զաթոռ եպիսկոպոսապետութեանն տեղա-պահութեամբ յաջորդեաց հրամանաւ երանելոյն Մեսրոպայ նորին աշակերտ Յովսէփ քահանայ ի Վայոց ձորոյ ի Խողոցիմ գեղջէ. ՝սակայն ի հրամանէ Յազ-կերտի Սուրմակ կատարէ զձեռնադրութեան զլրումն զամս վեց* մինչեւ մեռաւ իսկ. եւ ապա զսուրբն Յով-սէփ ի ձեռնադրութիւն Հայոց։

Խորեն.

Յովհ. կթղ.

---

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. *Սուրմակ երէց.* սա յետոյ Բզնունեաց աշխարհի (Վանի լճից արեւմուտք) եպիսկոպոսութիւնն ընդունեց եւ Ս. Մեսրոպից յետոյ դարձեալ կաթուղիկոսութիւն արաւ Յազկերտ Բ.ի հրամանով, մինչեւ որ Յովսէփ երէցը ձեռ-նադրուաւ (տես Յովհ. կթղ.)։ 449 թ. երբ ժողով եղաւ Յազկերտ Բ.ի նամակին պատասխան տալու՝ այս Սուրմակն էլ Արտաշատում հաւաքուած եպիսկոպոսների մէջ կար իբրեւ "եպիսկոպոս Բզնունեաց", այլ թէ նա՞ էլ ուխտա-պահների կողմն էր, այդ կասկածելի է։ Ինչքան որ կարելի է նկատել Խորենացու եւ Փարպեցու խօսքերից, Սուրմա-կը ոչ միայն ատելի էր եկեղեցական դասին, այլեւ նախա-րարներին։ Հաւանական է ուրեմն որ ինչպէս կային երկդիմի նախարարներ, կային եւ երկդիմի եպիսկոպոսներ. եւ Սուր-մակը այդպիսիներից պէտք է լինէր։ Սակայն նորա ազդե-ցութիւնը պէտք է աննշան լինէր այն ժողովի մէջ, որով-հետեւ եպիսկոպոսների մեծ մասը Յովսէփ կաթուղիկոսի դասակիցներն էին եւ Ս. Սահակի ու Ս. Մեսրոպի աշա-կերտները։

---

2. *Վաչէ Արծրունեաց տէր եւ Հմայեակ Աշոցաց տէր.* սոցա մասին չի յիշուում ոչ Եղիշէի ու ոչ Փար-պեցու պատմութեան մէջ։

---

3. *Մանէճ Ապահունեաց եւ Սպանդարատ Արշա-րունեաց.* Մանէճը Վարդանանց պատերազմի ժամանակ ուրացողների կողմն էր, թէեւ Արտաշատու ժողովում կար եւ երբ աւագ նախարարները գնացին Յազկերտի մօտ ու

* Վարդան ասէ. "Զամս եօթն։" Թովմայ ասէ. "Ղեւոնդ ոմն. աշակերտ սրբոյն Մաշտոցի տեղապահ լինէր սրբոյն Սահակայ, եւ Յովսէփ եւ Մովսէս Մեղջո։"





երեանից ուրացան, Մանէճն էլ նոցա մէջն էր. իսկ Սպանդարատը չի յիշուում ոչ Եղիշէի եւ ոչ Փարպեցու պատմութեան մէջ. շատ հաւանական է, որ սա Արշաւիր Կամսարականի այսինքն Վարդան Մամիկոնեանի փեսայի հայրն էր։

Ապահունիքը Վանայ ծովի հիւսիսային եւ Տուրու-բերանի արեւելեան կողմն է ընկնում, այժմու Մելազկերտի կողմերը։ Արտաշատու ժողովում ներկայ էր եւ Ապահու-նեաց եպիսկոպոսն Երեմիաս։

---

4. *Անատոլ*, տես գլ. Թ. 1։

---

5. *Յուրէն Պահլաւ*, տես գլ. Ա. 5։

---

6. *Աղան Արծրունի*, տես գլ. Թ. 2։

---

7. *Համազասպ Մամիկոնեան*, տես գլ. Է. 8 եւ գլ. Ը. 4։

---

8. *Երեմիա սարկաւագապետ*. Արտաշատում ժողով-ուած եպիսկոպոսների մէջ կայ "Երեմիա եպիսկոպոս Մարդաստանի." Թերեւս սա է նոյն Երեմիա սարկաւա-գապետը։ Մարդաստանը Վասպուրականի գաւառներից մէկն է Վանայ ծովից արեւմուտք՝ լեռներում։

---

9. *Յովսէփ եւ Թաղիկ*. Յովսէփը նոյն Յովսէփ կաթուղիկոսն է, որ Արտաշատու ժողովում կոչւում է եպիսկոպոս Այրարատոյ. իսկ Թաղիկը նոյն ժողովում կո-չւում է "Բասենոյ եպիսկոպոս." սա յետոյ նահատակուաւ Յազկերտի հրամանով Ասորեստանում։

---

10. *Վահան Ամատունի*, տես գլ. Գ. 2։



*Արտաշատու ազգային ժողովի ներկայացուցիչները:*

Ինչպէս յայտնի է 449 Թ. Ք. յա. Հայոց կրօնական տագնապի ժամանակ մի ժողով եղաւ Արտաշատ քաղաքում Յազկերտ երկրորդի հրովարտակին պատասխան տալու: (Տես Հիւսուածք գլ. Դ:) Այդ ժողովի ներկայացուցիչների վերայ մի լիակատար գաղափար տալու համար բաւականանում ենք հետեւեալ ցուցակով: Եւ այդ կարող է կրկին նշանակութիւն ունենալ, մէկ որ մենք այդպիսով կըկարողանանք հասկանալ զանազան պատմական անձինքների փոխադարձ յարաբերութիւնը. եւ մէկ էլ որ մենք կ'ունենանք մի չափ կշռելու Ե. դարու Հայոց զարգացումը, որովհետեւ այդ ժողովը ներկայացնում էր ամբողջ Հայ ազգի ամենալաւ ոյժերը:

| | Եպիսկոպոսք | | Նախարարք |
|---|---|---|---|
| | Ա Այրարատ նահանգ.[1] | | |
| 1 | Յովսէփ Այրարատոյ | 1 | Արշաւիր Արշարունեաց[2] |
| 2 | Եզնակ Բագրեւանդոյ | 2 | Գազրիկ Աբեղենից |
| 3 | Թադիկ Բասենոյ | 3 | Ատոմ Գնունեաց |
| 4 | Գադ Վանանդայ | 4 | Հրահատ Աշոցաց (.՞) |
| 5 | Եղիշէ Ամատունեաց | 5 | Գիտ Վահեւունեաց (.՞) |
| | | 6 | Առաւան Վանանդեայ |
| | | 7 | Վահան Ամատունեաց |

1. Յովսէփ, Եղնակ կամ Եզնիկ, Թադիկ, Եղիշէ, Մուշէ, Երեմիա եւ Անանիա եպիսկոպոսները սուրբ Թարգմանչաց աշակերտներն են. սոցանից՝ Յովսէփը կաթուղիկոս եղաւ, Եզնիկ Կողբացին գրեց «Եղծ աղանդոց» գիրքը, Թադիկն եւ Մուշէն նահատակուան մեծ պատերազմից յետոյ Յազկերտի հրամանով, իսկ Եղիշէն գրեց Վարդանանց պատերազմի պատմութիւնը:

Միւս եպիսկոպոսներից ոմանք էլ շատ հաւանական է, որ սրբոց Թարգմանչաց աշակերտը լինէին: Մելիտէ (կամ Մեղէտ կամ Մեղետ) եպիսկոպոսը կաթուղիկոս եղաւ Ս. Յովսէփից յետոյ: Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսն էլ նահատակուաւ մեծ պատերազմից յետոյ Ս. Յովսէփի եւ այլ Ղեւոնդեանց նահատակների հետ 453 Թ. Ք. յա.

2. Նախարարների մասին տես գլ. ԺԳ. 5 եւ գլ. ԼԲ: Վասակ Սիւնին, Գիւտը, Գադիշոյն, Մանէճը, Վարազշապուհը, Ռշտունեաց Արտակը եւ սոցա հետ էլ Բագրատունեաց Տիրոցը, Գաբեղենից Արտէնը, Ուրծայ Ներսէհը եւ այլ մի քանի նախարարներ յետոյ ուրացողների դասն անցան:

| | Եպիսկոպոսք | | Նախարարք |
|---|---|---|---|
| | Բ Տուրուբերան գաւառ. | | |
| 6 | Քասու Տուրուբերանոյ | 8 | Գադիշոյ Խորխոռունեաց |
| 7 | Սահակ Տարօնոյ | 9 | Վարդան Մամիկոնեան |
| 8 | Մելիտէ Մանազկերտոյ | 10 | Հմայեակ Դիմաքսենից (՞) |
| 9 | Սուրմակ[1] Բզնունեաց | 11 | Մաղխազն Վրիւ (՞) |
| 10 | Երեմիա Ապահունեաց | 12 | Մանէճ Ապահունեաց |
| 11 | Եւղաղ Մարդոյ աղւոյ | 13 | Վարազշապուհ Պալունեաց |
| | Գ Վասպուրական գաւառ. | | |
| 12 | Մուշէ Արծրունեաց | 14 | Ներշապուհ Արծրունեաց |
| 13 | Սահակ Ռշտունեաց | 15 | Արտակ Ռշտունեաց |
| 14 | Եղբայր Անձեւացեաց | 16 | Շմաւոն Անձեւացեաց |
| 15 | Երեմիա Մարդաստանի | 17 | Փապակ Առաւեղենից (՞) |
| | Դ Մոկաց գաւառ. | | |
| 16 | Բասիլ Մոկաց | 18 | Արտակ Մոկաց |
| | Ե Սիւնեաց գաւառ. | | |
| 17 | Անանիա Սիւնեաց | 19 | Վասակ Սիւնեաց |
| | Զ Տայոց գաւառ. | | |
| 18 | Տաճատ Տայոց | 20 | Վրէն Ձիւնական (՞) |
| | Է Բարձր Հայոց գաւառ. | | |
| 19 | Զաւէն Մանանաղւոյ | | |

1. Սուրմակի մասին տես գլ. ԼԲ։



# ՀԱՅՈՑ ՄԻՔԱՆԻ ՊԱՏՄԻՉՆԵՐԸ*

Եղիշէից եւ Փարպեցուց զատ կան եւ այլ պատմիչներ, որոնք նկարագրել են մարզպանների կառավարութեան ժամանակը։ Այդպիսի պատմիչներից է եւ Եղիշէին ու Փարպեցուն ժամանակակից Աբրահամ Խոստովանողը (տես գլ. Ի. 3), որի պատմութիւնն ապաբախտաբար տակաւին ոչ մի տեղ գտնուած եւ լոյս տեսած չէ։ Աւելի ուշ հանդէս եկող պատմիչները յիշում են դորա գոյութեան մասին, իրենց տեղեկութիւնները մասամբ քաղում են այդ պատմութիւնից. Ստեփանոս Օրբէլեանն յիշում է նաեւ Սիւնեաց Պետրոս եպիսկոպոսի ճառերի կամ պատմութեան մասին, որոնցից նա բերում է իւր պատմութեան մէջ նաեւ ամբողջ գլուխներ։

Ինչպէս որ նկարագրութեան եղանակի ու հայեացքների մէջ կամ նաեւ նոյն իսկ տեղեկութիւնների կողմից, կայ զանազանութիւն Եղիշէի ու Փարպեցու պատմութիւնների մէջ, այնպէս էլ, շատ կարելի է, որ Աբրահամ Խոստովանողի կամ Սիւնեաց Պետրոս եպիսկոպոսի գրուածները բովանդակում էին իրենց մէջ զանազան հայեցուածներ եւ մինչեւանգամ տարբեր տեղեկութիւններ մանրամասնութեան կողմից։

Աւելի ուշ հանդէս եկող հայ պատմիչները հաղորդում են մեզ միքանի անծանօթ եւ հետաքրքրական տեղեկութիւններ. խօսք չկայ, որ նոքա իրենց գլխից չեն հնարել այդ տեղեկութիւնները. եւ որովհետեւ գործքին ժամանակակից պատմիչներն Եղիշէն եւ Փարպեցին բնաւ չեն էլ յիշում այն անցքերի մասին, վասնորոյ պէտք է կարծել, որ աւելի ուշ հանդէս եկող պատմիչները կամ ուրիշ անյայտ պատմիչներից են քաղել իրենց տեղեկութիւնները կամ լսել են ժողովրդի բերանից։

* Այս գլուխը բովանդակում է իւր մէջ եւ մի ծաղկաքաղ Պատմագրութեան եօթն հատուածներով։

Նայելով նոյն իսկ անծանօթ տեղեկութիւնների վերայ՝ մեզ այնքան չի զարմացնում նոցա լինելութիւնը, որքան այն որ դոցանից ոչ մէկը ժամանակագրօրէն չի կապւում Եղիշէի ու Փարպեցու ցուցումների հետ։ Զորօրինակ Յովհաննէս կաթուղիկոսն առաջինը հաղորդում է մեզ, որ կայ եղել մի Ղաւատայ Արծրունի անունով նախարար, որը Վնդոյ եւ Շիրոյ անունով անձերի հետ միասին սկսում են մոգութիւն տարածել Հայոց մէջ եւ Դուին քաղաքում շինում են ատրուշան. Վարդան Մամիկոնեանը գալիս սպանում է նոցա, փախցնում է Մշկան անունով մարզպանին եւ կաթուղիկոս է կարգում Գիւտին։ Թովմայ Արծրունին էլ (թերեւս Յովհ. կթղ. կամ որ աւելի հաւանական է Աբրահամ Խոստովանողի պատմութիւնից քաղելով) կրկնում է նոյն Ղաւատայի պատմութիւնը. բայց հաղորդում է մի այլ հետաքրքիր տեղեկութիւն էլ, իբրթէ Արշակունեաց անկումից յետոյ Վարդան Մամիկոնեանը մարզպանի ահից առանձնանում է Մոկաց աշխարհում. եւ նորա հետ էին Մոկաց Յովհան, Ռշտունեաց Սահակ, Անձեւացեաց Շմաւոն եպիսկոպոսները. յետոյ երբ Վարդանը լսում է Ղաւատայի եւ նորա ընկերների գործերը, կանչում է Տաճատ Ռշտունի եւ Վահրիճ Անձեւացի նախարարներին ու նոցա հետ միանալով յարձակւում է ուրացողների վերայ եւ հալածում, կոտորում նոցա եւ այլն. յետոյ նախարարները կամենում են թագաւոր ընտրել Վահան Արծրունուն, բայց անմիաբան գտնուելով բանը գլուխ չի գալիս եւ այլն։ Թովմայի խօսքով Ղաւատայը (ուրեմն եւ Վարդան Մամիկոնեան) Պերոզ արքայի ժամանակն էր, իսկ Հայոց մարզպանը մոգպետ Վնդոյն էր եւ կաթուղիկոսն էլ Քրիստափոր։ Յովհաննէս կաթուղիկոսի եւ Թովմայի պատմածը կրկնում է եւ Վարդան Բարձրբերդցին։

Մի՛թէ այդ ամէնը մտացածի՞ն է կամ բնաւ կապ չունի՞ Վարդանանց ժամանակի հետ։ Մենք անձեռնհաս ենք լուծելու այդ հարցը. այլ բաւականանում ենք միայն հետեւեալ փաստերը ցոյց տալով։ Նախ որ գոր-

*ծին ժամանակակից պատմիչներն Եղիշէն եւ Փարպե-
ցին ոչ մի տեղ չեն յիշում Ղաւասպ Արծրունու,
Վնդոյի եւ Շիրոյի անունները*. թէեւ մի Ղաւասպ
Արծրունի կայ, բայց նա կապեալ նախարարների մէջն
է, որոնք Վարդանանց պատերազմից յետոյ գնացին
Տիզբոն (տես գլ. ԺԳ. 5). երկրորդ որ՝ ոչոք չի յիշում,
որ եղել են Հայաստանում Մշկան եւ Վնդոյ անունով
մարզպաններ. Մշկան Նիւսալաւուրտն, ինչպէս յայտնի
է, զօրավար էր Պարսից կողմից Վարդանանց պատե-
րազմի ժամանակ, իսկ մարզպանն էր Վասակ Սիւնին.
երրորդ որ՝ Վարդանի հետ Մոկաց աշխարհում գրտ-
նուող եպիսկոպոսներից երկուսի անունը նոյնպէս չեն
յիշում ժամանակակիցք, միմիայն Ռշտունեաց Սահակ
եպիսկոպոսն է պատմական անձն այդ երեքի մէջ.
որովհետեւ, ինչպէս յայտնի է, նա Ս. Ղեւոնդեանց
նահատակներից մէկն է. չի յիշուում նաեւ Քրիստա-
փոր** կաթուղիկոսի անունը մինչեւ անգամ իբրեւ
եպիսկոպոս. չորրորդ որ՝ Վարդանին աջակցող Տաճատն
եւ Վախրիճը նոյնպէս չկան ու չեն յիշուում ժամա-
նակակիցների պատմութեան մէջ. եւ հինգերորդ որ
այս ամէնն, ինչոր հաղորդում են Յովհաննէս կթղ.
եւ Թովմայ, ներկայանում է իբրեւ տարաձայնութիւն
ժամանակի (անախրօնիզմ). որովհետեւ Վարդանը
գործում է Պերոզի ժամանակ, Գիւտը կաթուղիկոս
է նստում Վարդանի օրով եւ այլն. (տես Հատուած
Գ, Դ, Զ:)*

*Այս բոլոր փաստերից եւ տարաձայնութիւններից*

* *Մուրատեան Հ. Մելքիսեդեկ վարդապետն իւր "Պատմու-
թիւն Հայաստանեայց Եկեղեցւոյ" գրքում (տպ. Եաղմ.
1872 Թ.) Վարդանանց պատերազմի պատմութիւնն անե-
լիս եր. 216 յիշում է նաեւ Ղաւասպի, Վնդոյի եւ Շի-
րոյի մասին, իբրթէ ուխտապահներն ուրացողներին ըն-
կճելիս եւ բերդերի վերայ բռնանալիս սոցա էլ բռնեցին
եւ այլն. թէ ի՞նչպէս է կապում Հայր Մուրատեանն այդ
ամէնը իրար հետ, մեզ անհասկանալի է տակաւին:*

** *Ոչ միայն Եղիշէն ու Փարպեցին չեն յիշում Քրիստա-
փորի անունը ոչ կաթուղիկոսների եւ ոչ էլ Արտաշա-
տում ժողովուած եպիսկոպոսների շարքում, այլ մինչեւ
անգամ Յովհաննէս կաթ. չի յիշում, որին ամենից լաւ
յայտնի պիտի լինէր Հայոց կաթուղիկոսների յաջորդա-
բար իրեն հասնելը:*

պաշարուած՝ մեզ մնում էր փոքր ինչ կասկածանքով նայել յիշեալ անցքերի վերայ, ոչ թէ սուտ կամ մտացածին կարծելով, այլ ուրիշ ժամանակի պտուղ, այսինքն ոչ-Վարդանանց ժամանակակից։ Մեզ այնպէս է երեւում, որ այդ ամէնի մէջ համաձայնութիւն կըլինէր, եթէ Վարդան Մամիկոնեանի անձնաւորութիւնը չլինէր, որն իւր դիւցազնական շքեղութեան համար միայն տեղ է գտել այդ անցքերի մէջ. Արեւելքի համար զարմանալի երեւոյթ չէ, որ երեւելի դիւցազունները ամենայն ժամանակ եւ ամենայն շրջանի մէջ գործել են տալիս. այդ պատճառով Աղեքսանդր Մակեդոնացու նման հռչակաւոր աշխարհակալները արեւելցու երեւակայութեան մէջ անմահ են եւ ամէն ժամանակ պատրաստ՝ լինի այն նորա ժամանակից հազար տարի յառաջ թէ յետոյ։ Այսպէս եթէ Վարդանի անձնաւորութիւնն հեռացնենք Յովհաննէս կաթուղիկոսի եւ Թովմայի ցուցումների միջից, դուրս կուգայ, որ այն ժամանակ, երբ Պարսից թագաւորում էր Պերոզ եւ Հայոց կաթուղիկոս էր Գիւտ, կրակապաշտութեան արբանեակները դարձեալ սկսել են վրդովել քրիստոնեաների հանգստութիւնը։ Փարպեցին այդ ժամանակի իշխանների վատութեան վերայ գանգատելով (տես Հիւսուածք գլ. ԻԳ.) պարզ յիշում է արդարեւ այդ արբանեակների մասին առանց անունները տալու։ Ո՞վ էին դոքա. շատ հաւանական է, որ Շաւասպը, Վնդոյն, Շիրոյն այդպիսիներից էին, որոնք այդ միջանկեալ ժամանակում մինչեւ Վահանեանց ապստամբիլը բռնացած էին Դուին քաղաքի վերայ եւ որոնց պատիժը թերեւս նոյն իսկ Վահանեանց ձեռքից հասաւ։

Այս ենթադրութիւնն անելով՝ թէեւ մենք չենք կարողանում գտնել միւս անձնաւորութիւնների համար մի որ եւ իցէ հաստատութիւն, այնուամենայնիւ նոցա լինելութիւնն էլ այդ դէպքում կարող է աւելի հաւանական երեւել։ Փարպեցին յիշում է, որ Վահան Մամիկոնեանն ուղարկեց օգնութեան կանչելու Արծրունեաց, Ռշտունեաց եւ Անձեւացեաց իշխան-

ներին. (տես Հիւսուածք գլ. ԻԷ.) այս բանն ապացուցանում է, որ այդ իշխանների մէջ եղել են անձինք, որոնք կրակապաշտութեան արբանեակներին խոչընդոտն եղած են Վահանից յառաջ եւս. շատ կարելի է, որ Վահան Արծրունին, Տաճատ Ռշտունին եւ Վախրիճ Անձեւացին այդ իսկ իշխաններից էին, որոնք եւ ոսոխ հանդիսացան Շաւասպների գլխին։

Այս ամէնից յետոյ մնում է սպասել, որ աւելի ձեռնհաս անձինք քննելով Յովհաննէս կաթուղիկոսի եւ Թովմայ Արծրունու ցուցումները՝ տան իւրաքանչիւր անձին իւր տեղը։ Մեր նպատակն էր միայն հարեւանցի կերպով ակնարկել այն կէտի վերայ՝ թէ նոցա պատմածը միմիայն ժամանակի տարաձայնութեան պատճառով երեւում է փոքր ինչ առասպելական եւ թէ այդ տարաձայնութիւնն յառաջացած է նորանից, որ պատմիչները՝ թերեւս իրենցից անկախ պատճառներով՝ Վարդան Մամիկոնեանին էլ դեր են տուել այդ գործերի մէջ։

Գալով այն կէտին թէ ի՞նչ աղբիւրից պէտք է քաղած լինին այդ տեղեկութիւնները թէ Յովհաննէս կաթուղիկոսն եւ թէ Թովմայ Արծրունին, երբ ոչ Եղիշէն եւ ոչ Փարպեցին ոչինչ չեն հաղորդում, այդ մնում է տակաւին խնդրելի։ Աչքի առաջ ունենալով այն, որ Յովհաննէս կաթ. երբեմն ամբողջ երեսներ է դուրս գրում Խորենացուց, կարելի է կարծել, որ նա այդ անցքերից երեք չորս դար յետոյ նոցա մասին գրել սկսելով՝ նոյնպէս մի որեւիցէ մեզ անյայտ տեղից ուղղակի արտագրել է այդ տեղեկութիւնները, որովհետեւ նորա պատմածից չի երեւում, որ նա այդ գրած լինէր ժողովրդի աւանդութիւններից։ Այլ է Թովմայի պատմութեան եղանակը։ Նա թէեւ ոճով է պատմում, բայց ցոյց է տալիս միեւնոյն ժամանակ մի առանձին կենդանութիւն. կարծես թէ հինգ դար յետոյ նա դարձեալ ականատես է Վարդանի քաջութիւններին. Թովման պատմելով թէ ինչպէս Վարդանը բռնել է Շաւասպին, ասում է "Պատահի յառաջ Շաւասպ Արծրունի, յորոյ վերայ նշեալ եւ նշնչեալ

տանն Վարդան իբրեւ զառիւծ իբրեւ զկորիւն առիւծու եւ առ ոտոյ եւ երագոտութեան յեղջերու ի վերայ յեղեալ ըղ-մեղին յերկոսս կողմ զՀատաւորն։,, Այս խօսքերը շըն-չում են Թարմ ժողովրդական ոգւով. կարծես մի երգ է սա կամ Թէ մի ականատես անձի նկարագրուԹիւն. Թովմայ Արծրունին չէր կարող իւր ժամանակն այդ խօսքերով պատկերացնել, ինչպէսոր չէր կարող Վար-դանանց պատերազմի մանրամասնուԹիւնքն իւր գլխից հնարել ու այսպէս գրել. "Ի վեր կացուցեալ զսուր սրբոյն Վարդանայ՝ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր եւ զՀետ նորա աճապարեալ արկանեն զնա ի յամ-րափակ զինեալ վաշտն ի մէջ փղացն. եւ քաջն Վա-հան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ մեռանին։,, ԵԹէ Եղիշէն է այսպիսի մանրամասնուԹեամբ եւ պատկերներով նկարագրում, այդ զարմանալի չէ, որովհետեւ Եղիշէն ականատես էր պատերազմի հան-դէսին։ Այնպէս որ եԹէ Թովման ժողովրդական աւան-դուԹիւններից չէ քաղել այդ տեղեկուԹիւնքը, ինչ-պէս որ նկարագրուԹեան ձեւից երեւում է, այն ժա-մանակ պէտք է կարծել, որ նա ուղղակի դուրս է գրել Աբրահամ Խոստովանողի պատմուԹիւնից ինչպէս որ նա յայտնում է Թէ "Եւ պատմի այս ի համառօ-տուԹեան Աբրահամու Խոստովանօղի*։,, (Տես Հա-տուած Դ։)

* Ինչպէս պարզ նկատելի է՝ Մովսէս Կաղանկատուացին էլ (տես Հատուած Բ.) ուղղակի Եղիշէի պատմուԹիւնից է արտագրել իւր պատմուԹեան միքանի տեղերը։ Այս արտագրելը հազուագիւտ երեւոյԹ չէ. այն պատմիչները, որոնք աւելի հին ժամանակներն են նկարագրում, այլ ոչ իրենց ժամանակը, նոքա քաղում են կամ դուրս են գրում իրենց տեղեկուԹիւններն աւելի հին մատենագըր-ներից։ Այսպէս՝ Ստեփանոս Օրբէլեանը (ԺԳ. դարում) նկարագրում է Սիւնեաց Անդոկ եւ Բաբիկ իշխանների գործերը. (տես գլ. Ը. եւ Թ.) նոյն անձանց նկարագրու-Թիւնը միեւնոյն բառերով անում է եւ Մովսէս Կաղան-կատուացին (Է. դար.) (տես Հատ. Բ. գլ. Ա.) Օրբէ-լեանն իւր նկարագրուԹեան աղբիւրը ցոյց է տալիս՝ ասելով որ նա քաղել է Սիւնեաց Պետրոս եպիսկոպոսի ճառերից, բայց Կաղանկատուացին ցոյց չի տալիս։ Այս եւ պատճառ է տալիս մեզ երկու ենԹադրուԹիւն անե-լու. ա) կամ Օրբէլեանն էլ Կաղանկատուացին էլ միեւ-նոյն Պետր[illegible] եպիսկոպոսի ճառերից են դուրս գրել այդ

Այս կարճառօտ տեղեկութիւնների հետ միասին կարեւոր համարեցինք ամփոփել այստեղ եւ զանազան դարերում հանդէս եկած պատմիչների խօսածը Վարդանանց եւ Վահանանց ժամանակի վերայ։ Այդ ամփոփումը կարեւոր ենք համարում երկու պատճառներով. նախ որ՝ մարզպանութեան Պատմութեան Ա. մասի համար կասկածելի կամ անորոշ տեղեկութիւններին եւս ծանօթանան ուսումնասիրողներն. եւ երկրորդ որ՝ նոցա քննութեան համար իմի ամփոփուած լինի այն ամէնը ինչոր խօսած են այդ ժամանակի վերայ Հայոց նշանաւոր պատմիչները զանազան դարերում. եւ միեւնոյն ժամանակ՝ հարկաւորութիւն չլինի զանազան գրքեր ունենալու ձեռքի տակ՝ այդ նպատակի համար։ Բոլոր պատմական հատուածները դասաւորեցինք ժամանակագրական հետեւողութեամբ իբրեւ մի պատմագրական ծաղկաքաղ եօթն հատուածներով, ինչպէս ցոյց է տալիս հետեւեալը։ Այդ հատուածներից առած հատուկտոր տեղեկութիւնները հիւսել ենք ամբողջութեան մէջ Ա. եւ Բ. գրքերում։

---

գլուխները. բ) կամ թէ՝ Օրբէլեանը Կաղանկատուացու գրքից է դուրս գրել՝ ցոյց տալով միեւնոյն ժամանակ նորա աղբիւրը, որը Կաղանկատուացին թերեւս զանցառու էր եղած յիշելու։

Առաջին ենթադրութիւնն աւելի հաւանական է. նախ այն պատճառով որ Օրբէլեանը ոչ մի տեղ չի յիշում Կաղանկատուացու անունը եւ երկրորդ որ ինքը Սիւնեաց եպիսկոպոս լինելով կարող էր ունենալ Պետրոս եպիսկոպոսի ժամանակից մնացած յիշատակարաններ, որոնց մէջ եւ նորա ճառերը։ Եթէ այս ենթադրութիւնը հիմք ունի, ինչպէսոր Օրբէլեանի պատմութիւնից էլ երեւում է, այն ժամանակ հաստատ է, որ դեռ ԺԳ. դարում ձեռքի տակ են եղել հռչակաւոր Պետրոս եպիսկոպոսի գրուածները, որոնք ցարդ մնում են անյայտութեան մէջ։ Պետրոս եպիսկոպոսի մասին տես Ուխտանէս եպիսկոպոս, գլ. ԺԳ։



Ա․

# ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

## ՊԱՏՄԻՉ ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ․*

Եւ եղեւ յամս Պերոզի արքայի Պարսից բարձումն ամենայն իշխանութեանցն եւ կարգաց եւ օրինաց քրիստոնէութեան եւ վտանգ նեղութեան հալածանաց եւ քամահանաց ի վերայ հասեալ իշխանաց։ Եւ ապստամբեալ Մամիկոնեանն Վահան հալածեաց զՊարսիկս եւ բռնաբարայն գրաւեաց զիշխանութիւնն։

Յայնժամ արձակէ ի վերայ նորա Պերոզ արքայ՝ Հոնաց զօր յոյժ։ Եւ հրաման տայ խիստ սաստիւ սպանանել զապստամբն եւ հարկանել զամենայն արու սրով սուսերի։ Ընդդէմ սորա աճապարեալ Վահան սպարապետ երեւուն հազարաւ ընտիր վառելոց՝ յարձակին ի միմեանս ի դաշտին Գիրանայ։ Անդ զօրացեալ զօրն Հայոց վանեցին կոտորածով զզօրն Պարսից եւ զմնացեալսն փախստական արարեալ տանէին. եւ դարձան յաղթութեամբ մեծաւ։

Այս Վահան ժողովեաց եւ զհարկս աշխարհին Հայոց եւ շինեաց եկեղեցիս մեծամեծս, զոր աւերեալ էր Պարսից ի Վաղարշապատ քաղաք եւ ի Դուինի եւ ի Մզրայս եւ ի բազում տեղիս աշխարհիս Հայոց։ Եւ շինեալ զերկիրն նորոգեաց վերստին։

Իսկ Պերոզի արքային Պարսից՝ Թէպէտեւ կամեցաւ վերստին զօրս գումարել ի վերայ աշխարհիս Հայոց, ոչ եղեւ նմա պարապ, զի համբաւք թշնամեացն ստիպէին զնա ի կողմանցն Քուշանաց։ Եւ յայն մարզէ. զի ինքն իսկ արքայն Քուշանաց խաղացեալ գայր ի վերայ նորա զօրու մեծաւ։ Եւ նորա (Պերոզի) գումարեալ զզօրս իւր գնաց ընդդէմ նորա տագնապաւ մեծաւ։ Ասէ. "Երթայց նախ առաջին զնա վանեցից եւ ապա պարապաւ դարձեալ գնացից ի Հայս եւ մի խնայեսցէ սուր իմ ի նոսա՝ յարս եւ ի կանայս։" Եւ ինքն անցեալ փութանակի եհաս ընդդէմ թշնամւոյն յարեւելս. եւ եղեւ պատերազմն սաստիկ. հարին եւ կործանեցին զբազմութիւն զօրացն Պարսից, մինչեւ ոչ մնաց ի նոցանէ ապրեալ եւ փախստական։ Եւ մեռաւ Պերոզ արքայ ի պատերազմին հանդերձ եօթանեքումբ որդւովքն։

* Տես "Պատմութեան Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն", Կոստանդնուպոլիս, 1851 = ՌՅԱ․ երես 45—47։

Եւ ապա յայնժամ թագաւորեաց Կաւատ* որդի նորա ի վերայ աշխարհին Պարսից։ Եւ զի բեկեալ էր զօրութիւն բազմութեանն զօրաց իւրոց, ոչ ընդ ումեք կամեցաւ ունել գործ պատերազմի, այլ արար խաղաղութիւն յամենայն կողմանց. առնէ եւ ընդ Հայոց հաշտութիւն եւ կոչէ զՎահան ի Դուռն մեծարէ զնա մեծապէս պատուով։ Եւ տայ նմա զմարզպանութիւն աշխարհին եւ Մամիկոնեաց տէրութիւն եւ երդում առ բազում ի ծառայութիւն եւ արձակէ բարեաւ յերկիր իւր։,,

* Ինչպէս երեւում է՝ Սեբէոսը Կաւատին է ընծայում այն ինչոր Ղազարը Վաղարշին։ Կաւատ Ա. թագաւորեց 490—531 թիւը Ք. յտ. իսկ Վաղարշ 486—490 թիւը Ք. յտ։ Այս ակներեւ շփոթութիւն է։



Բ.

# ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ

## ՊԱՏՄԻՉ ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ.*

Ի ժամանակս Յազկերտի ամբարշտի վառէր բորբոքէր սատանայ ի միտս նորա բառնալ զքրիստոնէութեան կրօնն: Եհաս հրաման սատակագոյն յաշխարհս Աղուանից թողուլ զհաւատս եւ հնազանդ կալ մոգական աղանդոյն կրակապաշտութեան. Նոյն աղէտք եւ ի Հայս գործեցան ի նոյն թագաւորէ: Բայց դէմ եդեալ հազարապետն Աղուանից եւ սուրբ եպիսկոպոսապետն աշխարհիս՝ հաստանէին միաբան յուխտն Հայաստանեայց եւ պատմեալ զանցս աղետին՝ մեծաւ տագնապաւ փութացուցանէին զզօրս եւ ասէին. ‚‚Գունդն Պարսից, որ էր ի կողմանս աշխարհին Հոնաց՝ դարձաւ այսրէն, եկն եմուտ յաշխարհս մեր, եւ բազում եւս այլ անձինք, որ ի դրանէ եկին. եւ թող զերկոսեանն, այլ եւս երեք հարիւր վարդապետք ածեալ են ընդ ինքեանս: Պառակտեցին զաշխարհն, զոմանս յինքեանս արկին, կամէին յեկեղեցիս ձեռնարկել. եւ հրամանաւ արքայի ստիպեն զամենեսեան եւ ասեն. ‚‚Եթէ կամաւ յանձն առնուք զօրէնս՝ պարգեւս եւ պատիւ գտանէք ի նմանէ եւ թողութիւն հարկաց արքունի լինի ձեզ. ապա եթէ կամաւ զայդ ոչ առնէք, հրաման ունիմք ի գիւղս եւ յագարակս շինել ատրուշանս եւ զՎռամական կրակն ի ներքս դնել, եւ կացուցանել մոգս եւ մոգպետս օրէնադիրս աշխարհիս: Եւ եթէ ստամբակէ ոք մահուամբ սատակի. եւ կին եւ որդիք այնպիսւոյն անաշխարհիկ լինիցին,,: Զայս լուեալ գնդին Հայոց՝ ոչինչ լքեալ, այլ համագունդ լեալ վասն գուժին այնմիկ՝ քաջալերս տուեալ արձակեցին զնոսա, զի առ ժամանակ մի խաբէութեամբ կալցեն զնոսա, զի մի՛ ձեռնարկեսցեն յուխտ եկեղեցւոյ, մինչեւ ելս խնդրեսցեն: Յայնժամ գրեցին գունդք Հայոց առ Թէոդոս կայսր՝ օգնել նոցա ի մեծի վտանգին. իսկոյն հասանէր նմա վախճան. եւ անօրէնն Մարկիանոս թագաւորեալ՝ ոչ պահէր զուխտն. այլ ըստ իւրում բարուցն միակամ լինէր ընդ հեթանոսս: Եւ ոչ ուստեք գտեալ օգնականութիւն քաջացն Հայոց՝ ի վերինն ապաւինեալ յամենակալ զօրութիւն Բարձրելոյն, յերիս բաժանեալ զզօրս Հայոց՝ զառաջինն տան ցՆերշապուհ Ռմբոսեան՝ պահապան Ատր-

* Տես ‚‚Պատմութիւն Աղուանից աշխարհի,, Մոսկվա, 1860. տես հտ. Բ. գլ. Բ. եւ հտ. Ա. գլ. Ժ:

պատական կողման։ Եւ զերկրորդ գունդն տան ի ձեռն
Վարդանայ զօրավարին Հայոց, անցանել ընդ սահմանս
Վրաց ի վերայ մարզպանին Չողայ*, որ եկեալ էր աւերել զե-
կեղեցիսն Աղուանից։ Եւ երանելին Վարդան ոչ գիտէր
զդաւաճանագործութիւն անիծելոյն Վասակայ ուրացողի, որ
յառաջ քան զգալ զօրուն Հայոց յԱղուանս՝ ազդէ Վասակ
մարզպանին Պարսից Մերսեբուխտայ**, եթէ բաժանեցին
զզօրս Հայոց եւ զՎարդան պակաս զօրօք յայդմ կողմն
հանին. արդ պատրաստ լեր ի դիմի ելանել, զի ի սպառ
սատակեսցես զդոսա։ Այս էր անօրինին խորհուրդն, զոր
զգացեալ Մերսեբուխտայ զքաջալերսն ի Վասակայ՝ ոչ
եկաց ի կողմանս Չողայ, այլ կուտեաց զամենայն բազմու-
թիւն զօրացն իւրոց եւ փութանակի գայ անցանէ ընդ
գետն մեծ Կուր. եւ պատահէ նմա ի սահմանս Վրաց հան-
դէպ Խաղխաղ քաղաքի, որ ձմերոց էր թագաւորութեանն
Աղուանից։ Ռազմ եդեալ՝ զբոլոր մեծութիւն դաշտին ի
ներքս փակէր, զինեալ եւ վառեալ ի մարտ պատերազմի
ընդդէմ գնդին Հայոց։ Իսկ քաջն Վարդան եւ զօրքն որ
ընդ նմա՝ իբրեւ տեսին զբազմութիւն հեթանոսացն եւ նայ-
եցան յիւրեանց սակաւութիւն, թէպէտ եւ կարի իսկ
նուազ էին քան զնոսա՝ ոչ ինչ զանգիտեցին առ ի յոյժ
բազմութենէն. այլ առհասարակ միաբանեցին, եւ ամբար-
ձեալ յերկինս զձայնս իւրեանց ասեն. "Դատեա Տէր,
զայնոսիկ, որք դատեն զմեզ, եւ մարտիր ընդ այնոսիկ, որք
մարտնչին ընդ մեզ։ Զինուք եւ ասպարօք օգնեա մեզ,
շարժեա եւ դողացո զգունդ անօրինացն,,։ Այսպէս կա-
ցեալ յաղօթս եւ խումբ արարեալ յարձակէին քաջքն
Հայոց, եւ զաջ թեւն բեկեալ ընդ ձախու կողմամբն ար-
կանէին. որոյ ճարակ զամենեսեան առնէին եւ ընդ երեսս
դաշտին փախստական արկանէին յամուր տեղիս մայրեացն
առ խորագոյն դարիւք Լուբնաս գետոյ. ուր ընդդէմ դար-
ձեալ թագաւորազնեաց Բաղասական արքայի, անդ ընկեցին
ի ձիոյ զոմն ի նախարարացն Հայոց ի գնդէն Դիմաքսենից,
զՄուշն սպանին, զԳազրիկն վիրաւորեցին։ Յայն տեղւոջ
դիտակն ի վեր ամբառնայր Արշաւիր Արշարունի. գոչէր
առիւծաբար եւ յարձակէր վարազապէս՝ սատակէր զՎուրկն
քաջ՝ զեղբայր թագաւորին Լփնաց եւ զայլս անհամարս,
զորս յայնմ տեղւոջ սատակէր։ Եւ այնպէս ամենեքին այր
զընկեր իւր ախոյեան կործանէր. եւ առ յոյժ յանդուգն
յարձակմանէն բազումք այն էին՝ զոր գետասոյզ առնէին
քան զընկեալսն որ ի ցամաքի։ Եւ ի բազմութենէ անկե-
լոցն՝ յատակ ջուր գետոյն յարիւն դառնայր եւ ոչ գտանէր
ոք ի նոցանէ ապրեալ։ Եւ ի թագուցելոցն յանտառախիտ
մայրիս դաշտաց ի զօրաց թշնամեացն ոմն մի զինու հան-

* Չողայ նոյնն է ինչոր Ճորայ Պահակը։
** Եղիշէն ասում է "Սեբուխտ,,։

դերձ ելեալ ի Նիւս երիվարին անցանէր ընդ մեծ գետն մազապուրծ զերծեալ՝ գոյժ տանէր ի բուն բանակն, որք փախստեայ անկանէին ի մեծ շահաստանն։ — Եւ յայնժամ զօրք Հայոց կատարելով զգործ մեծի պատերազմին զբազմութիւն աւարին կուտէին՝ արծաթ եւ ոսկի յոյժ, զէնս եւ զարդս, որք յարանցն քաջաց եւ յերիվարաց, եւ դարձեալ յարձակէին քաջարար ի վերայ բերդից եւ քաղաքաց, զոր ունէին Պարսիկք յաշխարհիս Աղուանից. հզօրապէս մարտնչէին, այրէին զամուրս արգելանոցաց նոցա եւ զերամ երամ մոգս գայթակղեցուցիչս՝ ուր եւ գտանէին, սրոյ ճարակ առնէին՝ գէշ թռչնոց երկնից եւ գազանաց երկրի։ Սրբէին զտեղիսն յամենայն պղծագործ զոհից եւ ազատէին զեկեղեցիսն յանհնարին նեղութենէն։ Եւ բազումք ի նախարարացն Աղուանից եւ ի շինականաց, որք վասն անուանն Աստուծոյ ցրուեալ եւ վտարեալ էին յամուրս լերանց Կապիկու, իբրեւ տեսին զմեծ յաղթութիւն գնդին Հայոց, գային ժողովէին եւ նոքա՝ եւ խառնէին ի զօրս նոցա, եւ միաբանեալ կցորդ լինէին նահատակութեան նոցա։ Խաղային գնային այնուհետեւ ի վերայ պահակին Հոնաց, զոր ունէին բռնութեամբ Պարսիկք. առնուին քանդէին զպահակն, կոտորէին զզօրս, որ բնակեալ էին ի ներքս եւ րզդուռնն տային ի ձեռն Վարդանայ ումեմն, որ էր յազգէ թագաւորացն Աղուանից։ Եւ յայսմ ամենայն քաջութեանց վերայ ոչ ոք անկաւ ի նոցանէ, բայց միայն որ նահատակեցաւն։ Եւ անդէն զնոյն այր, որում զդուռնն յանձն արարին՝ արձակեցին դեսպան յաշխարհն Հոնաց, բանս դնել ընդ նոսա եւ ուխտս հաստատել՝ անքակ ունել զմիաբանութիւնն։ Իսկ իբրեւ նոքա զայն լուան՝ իսկոյն հասին ի տեղին եւ ականատեսք լինէին յաջողմանն։ Երդմամբ եդին ուխտ օրինօք երկնից, յանձն առին զերդումն քրիստոնէութեան՝ պահել ընդ նոսա հաստատուն միաբանութիւն։ Եւ այսպէս կատարեալ զամենայն կամս իւրեանց՝ մինչդեռ ի տեղիսն էին, գուժկան հասանէր յերկրէն Հայոց վասն ուրացողին Վասակայ, եթէ աւերեաց զբազում երկիրս Հայոց։ Զու արարեալ Վարդան մեծաւ աւարաւն, անտրտում ուրախութեամբ առ Աստուած եւ նորին յուսովն հասանէր յերկիրն Հայոց յաւուրս երեսուն։ Ազդ լինի Վասակայ բարեյաղթ գալուստ քաջին Վարդանայ եւ միաբանութիւնն Հոնաց եւ Աղուանից, գնայ փախստեամբ յերեսաց նորա, ըստ չար բարուցն չար կրեալ անցս, նաեւ ոչ գտանէ յԱստուծոյ ողորմութիւն։ Այս եղեւ ի ժամանակս Յազկերտի արքայի ի մէջ Աղուանից եւ Հայոց վերնոյն օգնականութեամբ։

Յիննեւտասներորդի ամի թագաւորութեանն Յազկերտի հասանէ նմա վախճան մահու. եւ ընդ հակառակս ելեալ երկու որդիքն նորա ի վերայ տէրութեանն կռուե-

ցան. եւ մինչդեռ նոքա ի խռովութեան էին՝ ապստամբէ Եւ Վաչէ* արքայն Աղուանից, զի էր նա նոցա քեռորդի եւ յառաջ լեալ էր քրիստոնեայ ըստ հայրենի աւանդիցն, զոր Ուռնայր հաստատեաց, եւ անօրէնն Յազկերտ արար բռնութեամբ զնա մոգ։ Իսկ յայսմ վայրի ժամ գտեալ պարապոյ անձին իւրոյ՝ լաւ համարեցաւ մեռանել պատերազմաւ քան ուրացութեամբ ունել զթագաւորութիւն։ Յընդերկար խռովութեանն Արեաց գնդին ոմն Ռահամ** անուն ի Միհրեան տոհմէ, որ էր դայեակ կրտսեր որդւոյն Յազկերտի՝ դիմեաց գալ անբաւ գնդիւ իւրով ի վերայ երէց որդւոյ թագաւորին. եհար սատակեաց զգունդն եւ ձերբակալ արար զորդի թագաւորին, զոր եւ անդէն ի տեղւոջն սատակեաց. եւ զմնացեալ զօրսն ած հաւանեցոյց եւ միաւորեաց ի գունդն Արեաց եւ թագաւորեցոյց զխուր սանն, որում անուն էր Պերոզ։ Իսկ արքայն Աղուանից ոչ կամեցաւ նուաճիլ անդրէն ի ծառայութիւն նորա, այլ խրամատեաց զպահակն Չորայ, էանց յայնկոյս եւ անցոյց ըզզօրսն Մասքութաց, միաբանեաց ընդ իւր եւ զմեծասասան թագաւորս զլեառնորդեայս, ընդդէմ եկաց պատերազմաւ Արեաց գնդին եւ բազում վնաս արար զօրացն արքունի։ Եւ գրեալ երկիցս եւ երիցս զհրովարտակս աղաչանաց, ոչ կարաց (Պերոզ) ի հաւանութիւն ածել զնա, այլ գրով եւ պատգամաւ յանդիմանէր (Վաչէ) զնա վասն ի զուր աւերելոյն զաշխարհն Հայոց. յիշեցուցանէր եւ զմահ նախարարացն եւ զչարչարանս կապելոցն, որոց փոխանակ ըզկեանս տալոյ սիրոյն եւ վաստակոցն՝ զարեւսն հատիք. լաւ լիցի ինձ չարչարանօք մեռանել քան ուրացութեամբ կեալ։

Իբրեւ գիտացին, եթէ ոչ բռնութիւն եւ ոչ սէր կարէ ածել զնա ի հաւանս՝ գանձ սաստիկ ետուն տանել յաշխարհն Խայլնդրաց եւ բացին զդրունս Ալանաց եւ հանին գունդ բազում ի Հոնաց եւ կռուեցան ամ մի ընդ Աղուանից արքային։ Եւ թէպէտ պակասեցան եւ ցրուեցան զօրք նորա, սակայն զնա ոչ կարացին ածել ի հաւանս։ Այլ եւ հարուածք մեծամեծք հասին ի վերայ նորա, էր որ կռուով եւ էր որ չարաչար ախտիւք ծիւրեցան։ Եւ երկարեալ պաշարմանն՝ մեծ կողմն աշխարհին աւերեցաւ, այլ ոչ ոք ի նմանէ բաժանեցաւ։ Ապա յղեաց առ Վաչէ թագաւորն Պերոզ. «Զքոյրդ իմ, ասէ, եւ զքեռորդիդ ի բաց տուր ածել, զի ի բնէ մոգ էին եւ դու քրիստոնեայ արարեր. եւ աշխարհդ քո քեզ լիցի։»

Իսկ երանելի այն ոչ եթէ ի վերայ տէրութեան կռուէր, այլ յաստուածպաշտութեանն մրցէր. եւ ետ տանել զմայրն եւ զկին եւ զաշխարհն բովանդակ ի բաց եթող

* Եղիշէն չի յիշում Աղուանից արքայի անունը, բայց պատմում է միեւնոյն ինչոր Մովս. Կաղ.։

** Եղիշէն ասում է «Ռահամ անուն ի Միհրան տանէ։»

եւ ինքն զԱւետարանն առ եւ ի բաց կամէր գնալ։ Զայն լուեալ Թագաւորին Պերոզի ի գեղջ եկեալ՝ զամենայն փառսն ի Հայր իւր արկանէր. անսուտ երդմունս կնքէր եւ տայր տանել առ նա եթէ ‘‘յաշխարհէդ միայն մի գնար, եւ զոր ինչ ասես առնեմ։,, Իսկ սա հաճեցաւ միայն զսեպհականն առնուլ բաժին իւր, զոր ի հօրէն էր առեալ հազար երդ. առ զայն ի Թագաւորէն եւ նստաւ ի նմա միայնակեցօք հանդերձ։ Եւ այնպէս անզբաղապէս կեայր ընդ Աստուծոյ. եւ ոչ յիշեաց ամենեւին, եթէ Թագաւոր լեալ իցէ յառաջ։ Այս եղեւ վարք նորա։

ԺԲ

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻ

## ՊԱՏՄԻՉ ԻՆՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ.*

*Եւ ապա ոմանք ի մերոց նախարարաց դաւաճանեալք ի չարէն՝ ուրացան զհաւատս քրիստոնէութեան՝ հեթանոսական օրինաց հնազանդեալք: Իսկ աւագագոյնք երկուք ի նոցանէ՝ Շապուհ Արծրունի եւ Վնդոյ ի Դունին քաղաքի հրամայեն շինել զմեհեանս Որմզդականն եւ զգօտն հրապաշտութեան: Եւ թշնամանէր հարկէր Վնդոյն զօրդն իւր զՀէրոյ եւ դնէր օրէնս իւր պարսիկ մոգէնն բազում՝ եւ անհնարին բարս չարեաց գործոց եւ լի մթացուցիչ եւ նսեմական պիղծ ուսմամբ:*

*Լուեալ ապա զայս քաջին Վարդանայ՝ Թոռին մեծին Սահակայ, թէ շիջաւ բարեկարգութիւնն եկեղեցւոյ եւ տօնք տարեկանաց տխրացան, յանկարծակի ապա զօր գումարեալ եւ յանդուգն յարձակմամբ ի վերայ հասեալ՝ զանօրէնն Շաւասպ փայլակնահար իմն սրով սատակէր եւ զմոգզգաւնն Մշկան փախստական առնէր եւ զպիղծն Վնդոյ ձերբակալ արարեալ յատուշանի կրակին, զոր շինեաց ինքն իսկ ի Դուին, եւ զորդի նորա Շիրոյ ի վերայ բագնին զփայտէ կախէր: Եւ ի տեղի քաղնին շինէ եկեղեցի մեծ անուանակոչութեամբ սրբոյն Գրիգորի՝ անդ փոխելով զաթոռ հայրապետութեանն. եւ հաստատեալ կացուցանէ ի նմա զմեծ հայրապետն Գիւտ. վասնզի սուրբ հայրապետն Յովսէփ ի մէտաղս բանտից ըմբռնեալ էր ընդ սրբոց Ղեւոնդեանցն, որ թէպէտ դեռ եւս կայր կենդանի, սակայն ոչ պարտ վարկան նախարարքն Հայոց առանց հովուի զհօտն Քրիստոսի թողուլ, զի մի վարատեսցին ի հեթանոսական գայլոցն. կամ թէ ի հրամանէ սրբոյն իսկ Յովսէփայ այն իրագործէր: Եւ այսպէս ապա վերստին նորոգէր կարգ եկեղեցւոյ սրբոյ. եւ յայնմ հետէ ապա հնազանդէին Հայք առաջնորդութեան քաջին Վարդանայ մինչեւ ցօր մահուան նորա, որ բազում պատերազմունս քա-*

* Տես Յովհաննու կաթուղիկոսի Դրասխ. «Պատմութիւն Հայոց», Մոսկվա, 1853. եր. 35:

Ջուլթեան վասն առ ի Քրիստոս հաւատոցն կատարեալ՝ արժանի գտանի առնուլ բազում եւ այլ եւս ընկե-րօքն զպսակն անթառամ յանմահ արքայէն Քրիստոսէ։ Զկնի այսորիկ ապա լինի կատարումն սրբոյ կաթուղի-կոսին Յովսէփայ՝ կալեալ զաթոռ հայրապետութեան զամս ութն. ընդ նմին եւ այլ եւս եպիսկոպոսաց եւ քահանայից Ղեւոնդեանց եւ սարկաւագաց նոցա ի Պարս յանօրինէն Պերոզէ։

Զայսու ժամանակաւ մեծ հայրապետն Գիւտ, որ յՈթմսոյ գեղջէ, կացեալ ամս տասն յաթոռ հայրա-պետութեան վախճանի։ Եւ զկնի նորա յաջորդէ Յովհան Մանդակունի, որ առլցեալ իսկ էր ամե-նայն հանճարով. եւ կարգս յօրինեալ ճոխացուցանէ պայծառապէս զամենայն աղօթական ժամակարգու-թիւնս եկեղեցւոյ սրբոյ. եւ յարդարէ եւս ճառս ըզ-գուշացուցիչս դիտաւորական կենցաղոյս, որ բերէ զոգւոցն փրկութիւն։ Եւ յաւուրս սորա պայազատէր զհայաստանեայս Վահան Մամիկոնեան՝ որդի Հմայե-կի՝ եղբօրորդի սրբոյն Վարդանայ, որ արիաբար յաղ-թեալ ամենայն զօրաց եկելոց ի վերայ նորա. եւ ժո-ղովեալ զհարկս աշխարհիս՝ շինէ այնուիկ զեկեղեցիս զաւերեալս ի թշնամեաց թելադրութեամբ եւ խրա-տու եւ աղօթից նպաստիւ սուրբ հայրապետին Յով-հաննու Մանդակունւոյ։

Եւ մինչդեռ Պերոզ զկորուստ աշխարհիս Հայոց հնարէր կատարել՝ յանկարծօրէն յաղօթից սրբոյ առնն Աստուծոյ Յոհաննու սատակի ի Քուշանաց ինքն եւ առ հասարակ զօրք իւր։

Յետ սորա Վաղարշ թագաւորէ Պարսից, որ բա-րեխրատուց լսող լեալ՝ ի Վահան զաշխարհս մեր հաւատայր։ Իսկ մեծ հայրապետն Յոհան Մանդակու-նի կացեալ յաթոռ հայրապետութեան ամս վեց փոխի առ Քրիստոս։ Եւ զկնի նորա ապա Բաբգէն ի նորուն յաշակերտութենէ կալաւ զաթոռ հայրապե-տութեան. յորում ժամանակի Պերոզ (.´) թագաւո-րեալ Պարսից եւ ի Դուռնն զՎահան կոչեալ՝ ետ նմա զմարզպանութիւն Հայոց եւ առաքէ ի Հայս։

---

Գ.

# ԹՈՎՄԱՅ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՐԾՐՈՒՆԻ

## ՊԱՏՄԻՉ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ.*

Յամի երկրորդի Յազկերտի որդւոյ Վռամայ Բ.՝ բարձաւ թագաւորութիւնն ի տանէն Հայոց, որ տեւեալ ամս չորեքհարիւր տասն եւ հինգ։ Իսկ զտեղի թագաւորութեանն Հայոց հրամանաւ Յազկերտի ունի Մշկան զօրավար Պարսից։

Իսկ Վարդան Մամիկոնեան որդի Համազասպայ Մամիկոնէի թոռն սրբոյն Սահակայ խոյս տուեալ գնաց զկողմամբքն Մոկաց՝ ի խոխոմս Տօրոսական լերինն ի լեսուրս Ջերմաձորոյ եւ բնակէ յամրոցին, որ այժմ Ջաղայլ վասն անխեդեդ ամրութեանն դեղջկաբանեն։ Եւ քանզի յետ մահուան մեծին Սահակայ Բագրատունւոյ սպարապետի ասպետի եւ զօրավարի Հայոց հաւատացեալ էր Թէոդոսի կայսեր զսպարապետութիւնն Հայոց Համազասպ Մամիկոնէի եւ որդւոյ իւրում Վարդանայ, երկեաւ Վարդան ի մարզպանէն բնակել յանդորրու, այլ այնր աղագաւ անց գնաց յամուրսն Մոկաց. եւ կայր մնայր ի նախախնամութենէ Աստուծոյ այցելել աշխարհիս Հայոց։ Եւ կոչեալ առ ինքն զեպիսկոպոսն Մոկաց զՅովհան եւ զեպիսկոպոսն Ռշտունեաց Սահակ եւ զեպիսկոպոսն Անձեւացեաց Շմաւոն եւ կարգէ զդասս պաշտօնէից կատարել զպաշտօն Տեառն ի տուէ եւ ի գիշերի անձանձրոյթ աշխատութեամբ՝ եւ առատաձեռն տեսչութեամբ աղքատաց զի գտցեն զողորմութիւն ի Քրիստոսէ։

Յետ բառնալոյ թագաւորութեանն Հայոց ի տանէն Արշակունեաց. ապա Մարզպանք Պարսից կալեալ տիրէին աշխարհիս. եւ գլխաւորք Հայոց մեծաց ամրանային ի քարանձաւս ամրաշէն բերդիցս. ըստ

* Տես ''Պատմութիւն տանն Արծրունեաց,, Կ. Պօլիս, յՕրթագիւղ, 1852 = ՌՅԱ. եր. 81, 84—89, 91—93։

*տեղիս տեղիս եւ ըստ աշխարհս աշխարհս, եւ ըստ Պարսկական բռնութիւնն զօրացեալ աճէր. եւ հարկապահանջք գունդքն ելեւելս առնէին սաստիկ խոշտանգանօք։*

*Ընդ նոյն ժամանակս Շաւասպ Արծրունի խորհեցաւ շփոթել Հայոց, եւ ելեալ գնաց զհետ անհանճար իմացմանց առ Պերոզ արքայ Պարսից. եւ յանձն առեալ ինքնակամ մոլորութեամբ զօրէնս մոգպետաց եւ խնդրեալ յարքայէ զիշխանութիւն Հայոց։ Եւ նորա կատարեալ զխնդիրն, դարձեալ դառնայ ի Հայս. ընդ իւր ածելով մարզպան զՎնդոյ Պարսից մոգպետ. եւ ընդ մտանելն նոցա յաշխարհս, վրդովեցին զուխտ քրիստոնէութեան, եւ փոյթ ընդ փոյթ ձեռնամուխ եղեն աւերել քանդել զեկեղեցիս. դառնապէս չարչարել զքահանայս, զարս եւ զկանայս մատնել ի բանդս ի խոշտանգանս ծանրաբեռն հարկապահանջութեամբ, զի այնու դիւրաւ կարասցեն հերքել մերժել ի բաց կալ ի սուրբ հաւատոյ քրիստոնէութեան, եւ բազում այն էր որ մարտիրոսական ճգնութեամբ վկայեցին, քան որք դրդուեցան. առ ոչինչ համարելով զյափշտակութիւն ընչիցն եւ ստացուածոց, եւ զմահս դառնագոյնս։ Եւ հասեալ Շաւասպայ Արծրունւոյ ամբարշտի յԱրտաշատ հանդերձ մարզպանաւն, շինեն ի դուռն քաղաքին Որմզդական մեհեանն, եւ զկրակապաշտութեան մոլորութեան բորբոքեն ի նմա։*

*Այս լուր դառնութեան եհաս առ մեծն Վարդան Մամիկոնեան՝ որ էր ամրացեալ ի Տօրոսականն Ձռայլ։ Եւ առ չհանդուրժել այնքան եկեալ հասեալ վտանգաւոր նեղութեանցն փութացոյց գիր պաղատանաց առ Տաճատ Ռշտունեաց տէր, եւ առ Վախրիճ Անձեւացեաց տէր, զեկուցանել նոցա զեղեալսն, եւ նոքա թափառնակի անյապաղ հանդերձ իւրաքանչիւր զօրու եկին հասին առ մեծն Վարդան. եւ զզօրս լեռնակողմանն ընդ իւրեանս ածելով, ոչինչ աւելի քան զհազար եւ երկերիւր այր. Եւ յանկարծօրէն հասին ի վերայ Շաւասպայ եւ Մարզպանին Վնդոյի։ Եւ քանզի էին բանակեալ ի խառնուրդս Երասխայ եւ մաւրին*

Պծի, պատահի յառաջ Շաւասպ Արծրունի, յորոյ
վերայ կալեալ եւ կանչեալ քաջն Վարդան եւ առ ու-
ժոյ եւ երագութեան ձեռինն ի վերայ ձգեալ զմիող-
նին, յերկուս կտրէ զՇաւասպն։ Իսկ Տաճատ եւ Վախ-
րիճ ի մէջ փակեալ զմարզպանն եւ զորդի նորա զՇի-
րոյ ձերբակալ արարեալ ածեն ի Դուին, եւ զհուր կրա-
կարանին բորբոքեալ առատածակէզ արարին զնա յորմըզ-
դական մեհենին. եւ զՇէրոյ կախեն զփայտէ ի վերայ
կրակարանին. եւ զայրն գետամէջս եւ սրախողխող արարեալ
վատնեն, եւ զփախստեայսն տանին անցուցանեն յայն-
կոյս քան զքաղաքն Նախճուան, եւ ինքեանք դառ-
նան մեծաւ յաղթութեամբ. եւ դարձեալ առեալ զՄե-
հեանն եւ յապականեալ զտեղին շինեն նորին տաճար զՄեծ
եկեղեցին սուրբ Գրիգորի ի Բլուր տեղւոջն, եւ փոխեն
անդ զկաթուղիկոսն Հայոց զԳիւտ. եւ շինեն նախա-
րարքն Հայոց իւրաքանչիւր պալատս արքունականս եւ
դաստակերտս յականաւորս, եւ զքաղաքն որմափակօք
պարսպեն, եւ խաղաղեցուցանեն զերկիրս։ Իսկ զՆո-
րաւորաբնակ տեղին մեծին Տրդատայ տան ի յետս Վահա-
նայ Արծրունւոյ, շինել նմա տուն Նախարարաց՝ արարս
պատրաստութեամբ. տանել խորհեցան Նախարարեցուցա-
նել զնա ի վերայ Հայոց. զի էր այր օրհեալ եւ ուժեղ,
հանճարախորհուրդ եւ իմաստնախոհ, խոնարհ, առատաձեռն
եւ զուարթադէմ։ Բայց յետոյ անմիաբան գտեալք նա-
խարարքն Հայոց՝ թողին զոր խորհեցանն, վասն թա-
գաւորելոյ Վահանայ. եւ անցին գնացին առ մեծն
Վարդան. գնաց եւ Վահան զհետ նախարարացն առ
Վարդան յառաջագոյն, տալ նմա զվերակացութիւն
Հայոց, եւ եղեն հնազանդեալ նմա զամենայն աւուրս
Վարդանայ։

Բայց արքայն Պարսից հեռացեալ պատերազմաւ
ի Քուշանն ի դուռն Ճորայ. եւ երկիրս Հայոց յապա-
հովանայր ի հինիցն Պարսից, եւ անդ սպանանի ար-
քայն ի Քուշանաց. եւ թագաւորէ ընդ նորա Յազ-
կերտ։ Եւ սկսաւ ոգորել ընդ իշխանս Հայոց մեծաց՝
խրոխտանօք։ Բայց իբրեւ եղեւ մեծ պատերազմ սըր-
բոյն Վարդանայ ընդ Մշկանին եւ ընդ զօրս Պարսից ի

*յԱւարայրեան դաշտին, յԱրտաշական գաւառի ձախոյ կողման Թեւն Հայոց պարտել սկսաւ, եւ սրբոյն Վարդանայ ի փախուստ զախոյեանսն Պարսից դարձուցեալ եւ զկողմն իւրոյ ձեռին գնդին զօրացուցեալ. անդ Վահան Արծրունի ընդ Վարդանայ հարեալ ի զօրացն Պարսից գունդ մի հարուստ արք իբրեւ հարիւր քառասուն: Ի վեր կառուցեալ զաչս սրբոյն Վարդանայ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր, եւ զհետ նորա աճապարեալ արկանեն զնա ի յամրափակ զինեալ վաշտն ի մէջ փղացն, եւ քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ մեռանին ի միասին Վարդան եւ Վահան. եւ կատարեցան ի Քրիստոս սուրբ գունդն Հայոց վեց հարիւր իննսուն եւ վեց ոգիք: Եւ պատմի այս ի համառօտութեան Աբրահամու Խոստովանողի:*

*Բայց թէ էր աղագաւ պատմութիւն վկայութեան Վահանայ ոչ է գրեալ ի գիրս պատմագրի, ստուգապէս առանց յերկուանալոյ ցուցանեմ:*

*Ընդ այն ժամանակս Պերոզի արքայից արքայի էր ումն յաղանդոյն Նեստորի Բարծումայ անուն, որ ունէր զանուն եպիսկոպոսութեան. զօրեղագոյնս զնեստորական հերձուածոյն բուռն հարեալ եւ քսութեամբ զնախարարացն Հայոց առ Պերոզ վարելով՝ բազում ոճիրս արիւնհեղութեան գործեաց:*

*Ի ժամանակին յայնմիկ էր ճոխացեալ պանծալի աթոռակալութեամբ սրբոյն Գրիգորի տէր Քրիստափոր (․՛) Հայոց կաթուղիկոս. գրէ առ կողմանս Ասորեստանի՝ զգուշացուցանելով մի խառնել ընդ նեստորականսն. զնոյն գրէ եւ առ որս ի Խուժաստանին էին ժողովուրդ ուղղափառացն. դարձեալ գրէ եւ ի կողմն Դերջանոյ եւ Խաղտաց ձորոյ բնակիչսն եւ աշխարհական տեարս եւ առ եպիսկոպոսունսն:*

*Զոր զթուղթսն խաբող պատրանօք ի բուռն առեալ Բարծումայ՝ ետ տանել առ արքայ Պերոզ եւ ասէր թէ զայս ամենայն, զոր գրէ կա-*

թուղիկոսն Հայոց եւ առ ապստամբութիւն խոր-հել առ ի քէն եւ զնախարարսն Հայոց զՅունաց թագաւորին խորհել հնազանդութիւն. արդ տե-սանել պարտ է վասն այդր: Եւ ինքն Բարձումայ ի չքմեղս լինելով եկն եհաս յԱրզնարզիւն եւ յաշխարհն Մոկաց, զի անդ զնեստորական աղան-դոյն սերմանիցէ սերմանս:

Եւ որքոյ վարդապետին մեր Եղիշէի, որ յայնմ ժամանակի ի Մոկաց բնակէր աշխարհին, եկեալ առ նա (առ Եղիշէ) Բարձումայ, խնդրեալ զպատմողական գիրսն* Հայոց, զոր գրեալ էր հրամա-նաւ սրբոյն Վարդանայ. եւ նորա կատարեալ ըզ-խնդրելին:

Ի նմին ժամու զգացեալ վասն նորա մեծ իշ-խանին Արծրունեաց Մերշապհոյ, որ յայնժամ ի Ցմորեացն ամրանայր բերդի, յղէ առ նա (առ Բարձումայ) ելանել գնալ ի սահմանացն այնո-ցիկ՝ ոչ ինչ ձեռնամուխ լինելով ի նա վասն Պարսից արքային. միայն խստաբանութեամբ յղէ առ նա պատգամս: Նորա զչարեալ ընդ հասանել պատգամին առ զայրուցս բարկութեան քինա-հանութիւն վրէժխնդրութեան արարեալ՝ ի բաց եհան ի գրոցն պատմութենէ, որ ինչ վասն տանն Արծրունեաց էր գործոց հանգամանք եւ որ ինչ օրինակ մարտիրոսութեան Վահանայ Արծրունւոյ:

Իսկ վարդապետն Եղիշէ էր ի ժամանակին յայնմիկ բնակեալ ի գաւառին Ռշտունեաց ի ծովեզերին, յորում տեղւոջ եւ հանգեաւ իսկ ի Քրիստոս սուրբն Աստուծոյ Եղիշայ: Իսկ ի դառ-նալ գրոցն ի յաշխարհն Մոկաց՝ ոչ ինչ ումեք փոյթ վասն այն լինելով, կարծել վարդապետին

* Այս խօսքերից երեւում է, որ Եղիշէն գրած է եւ Հայոց պատմութիւն ընդհանրապէս. որովհետեւ եթէ նորա գրած Վարդանանց պատերազմի վերայ լինէր Թովմայի խօսքը, այն ժամանակ չէր ասէր, թէ “զոր գրեալ էր հրամանաւ սրբոյն Վարդանայ.„ յայտնի է, որ այն պատմութիւնը Վարդանի մահից յետոյ գրեց Եղիշէն Մամիկոնէից երէց Դաւթի խնդրանքով:

զայս այսպէս կանոնեալ, զոր ցուցանեմ յայլում տեղւոջ, եւ զոր ինչ արար արքայն Պարսից ընդ տունն Արծրունեաց ի սադրելոյ Բարծումայի ամբարշտի։

Իսկ յաւուրս Վաղարշու մանուկն Վահան Մամիկոնեան ուժեղանայր ընդդէմ Պարսից եւ առ ինքն ժողովեալ նախարարքն Հայոց՝ դնեն ուխտ եւ դաշինս անկեղծաւոր եւ աննենգ տիրասիրութեամբ ցուցանել հնազանդութիւն մինչ առնուլ վրէժս ի Պարսկացն հինցցն։

Եւ եղեւ ընդ ժամանակսն ընդ այնոսիկ ել Հազարաւուխտ Պարսից զօրավար ծանու զօրու ի վերայ Հայոց տալ պատերազմ ընդ զօրս Հայոց. եւ խաղայ գնայ զկողմամբքն Հաշտենից եւ Ծոփայ ի վերայ Վահանայ։

Աճապարեալ Վահանայ ձայն քաջալերութեան առ նախարարսն Հայոց՝ նոյն ժամայն վառեցան պատրաստեցան հեծեալ յիւրաքանչիւր յերիվարս ելին ընդդէմ նոցա։ Եւ իբրեւ տեսին զբազմութիւն Պարսկային զօրուն՝ վհատեալ գնդին լքին զմիմեանս եւ գնացին յետս կոյս. մինչ կալ մնալ միայն երեսուն արանց ընդ քաջին Վահանայ։ Միհրշապուհ եւ Ցաշկուր Արծրունիք եւ Կամսարն Ներսեհ եւ ի տանէն Ամատունեաց, զորոց զանուանսն անգիտանամ, նիզակակիցք միմեանց եղեալք երեք տասնեակք թուով, զսուրբ Երրորդութիւնն յօգնականութիւն իւրեանց վերաձայնեալ, լքին զօգնականութիւն մարդկան. եւ հարեալ ի դիմի զաշիկ (զակի՞շ) զօրուն Պարսից. եւ նոցա թուէր ծաղր առնել։ Իսկ նոքա պատահեալ Պարսից ի գեօղն Երիզ սուր ի վերայ եդեալ վանեցին զբազումս քան եթէ զսակաւս. եւ զմնացեալսն փախստականս արարեալ հանին ի սահմանացն Հայոց եւ ինքեանք դարձան մեծաւ յաղթութեամբ, մատուցին պատարագս Աստուծոյ եւ լցուցին զպէտս տնանկաց այրեաց եւ որբոց։ Եւ ամենեցուն բերան լցեալ խնդութեամբ ետուն փառս Աստուծոյ։

---

Ե.

# ՍՏԵՓԱՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԱՐՕՆԵՑԻ

## ԱՍՈՂԻԿ ՄԱԿԱՆՈՒԱՆԵԱԼ

### ՊԱՏՄԻՉ ՏԱՍՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ*

*Յետ մահուանն Արտաշրի Հայոց թագաւորի ժողովեալ նախարարաց Հայոց՝ զսուրբն Վարդան իւրեանց սպարապետ կացուցանէին, որ էր ի Մամիկոնէից տոհմէն թոռն սրբոյն Սահակայ: Եւ էր երբեմն զի ի հնազանդութեան կային Պարսից թագաւորացն. եւ երբեմն յապստամբութեան, որպէս ուսուցանէ պատմութիւն Եղիշէի վարդապետի:*

*Եւ յետ մահուանն Սուրմակայ ժողովեալ հայրապետացն Հայոց՝ խնդրեալ գտին քահանայ ոմն Յովսէփ անուն, որ լեալ՝ էր աշակերտ մեծին Մեսրոպայ, ի գաւառէն Վայոց ձորոյ ի գեղջէն Հողոցիմայ: Եւ հրամանաւ Վարդանայ նստուցին յաթոռ կաթուղիկոսութեան ամս երկու: Սա (Յովսէփ) արար ժողով ի Շահապիվանի, ուր զտուգանօք կանոնս կարգեցին:*

*Իսկ սուրբն Վարդան միաժողով կալեալ զնախարարս Հայոց ամս [illegible]** (19), պատերազմեալ ընդ Յազկերտի Պարսից արքայի, մեռանի ի վերայ սուրբ ուխտի եւ ի քրիստոսական հաւատոյ ի դաշտին Աւերայրի ի գաւառին Արտազու:*

*Եւ յետ պատերազմին Վարդանայ՝ զկնի երկուց ամաց սուրբ Ղեւոնդեանք Յովսէփաւ հայրապետաւ կատարեցան յամսեանն հրոտից, որ օր քսանեւվեց էր ամսոյն նոյն յուլիսի յաւուր կիւրակէի: Ըստ որում ստուգեալ մեր զամս թագաւորացն՝ գտաք հանդիպեալ ի տասն եւ հինգերորդ ամի Յազկերտի եւ յերրորդ ամի Մարկիանոսի անիծելոյն:*

*Իսկ յետ մահուանն Վարդանայ անիշխան եղեալ երկիրս Հայոց ամս տասն, հալածանք եւ խռովութիւնք բազմանային, թէեւ սակաւ ինչ Յազկերտ ի սպառիչ խորհրդոյն դադարեալ՝ զմտաւ զուրացեալ Վասակաւ արկանէր*

* Տես Տիեզերական Պատմութիւն Ստեփանոս Վ. Տարօնեցւոյ, 1859, Փարիզ. եր. 79—82:

** Միհւնոյնը կրկնում է եւ Վարդան Բարձրբերդցին. այդ ցուցումը ժամանակագրօրէն ճիշդ է գալիս, եթէ ենթադրենք, թէ ինչպէս Ասողիկը նոյնպէս եւ Բարձրբերդցին Վարդանի սպարապետութեան այն ժամանակն ունին աչքի առաջ, որը Արշակունեաց անկումից յետոյ էր: 432 թուից մինչեւ 451 թիւը ճիշդ 19 տարի է. տես աղիւսակ Գ:

եւ զնա մեծապէս անարգանօք քարշել հրամայէր։ Եւ ապա Պերոզ որդի նորա թագաւորեալ զնախարարս Հայոց արձակէր ի կապանաց։ Ե[illegible] Հայոց Մանէնոս որդի Վարդանայ ամս [illegible]։

Իսկ զկնի տեառն Յովսէփայ կալաւ զաթոռ հայրապետութեան տէր Գիւտ ամս տասն, որ էր ի գաւառէն Վանանդայ յՈւթմնոյ գեղջէ։ Եւ յայսմ ժամանակի էր մեծ փիլիսոփայն Հայոց Մովսէս, որ զճարտասանական արուեստ ի գործ առնու ի Հայս։ Եւ ճգնազգեացն Անտոն որ եւ Թաթուլ, առ սոքօք (․́) ասի թողեալ զամենայն վասն Քրիստոսի հանդերձ Վարոսիւ եղբարբ իւրով երեքեան եւ երթեալ ի վայրս դժնդակս ընդ գաղանաց եւ ընդ վիշապաց բնականայր ի տեղին, որ այժմ ասի Գաղանածակք կամ Թաթլոյ վանք։

Եւ յամին քսան եւ հինգերորդի Պերոզի Հայք ի Պարսից ապստամբեալ՝ ընդդէմ կացին խիստ մարտիւք ի ձեռն Վահանայ՝ որդւոյ Հմայեկի՝ եղբօր Վարդանայ։ Եւ էին սորա եղբարք Վասակ քաջ եւ Արտաշէս եւ Վարդապատրիկ, զոր ուսուցանէ քեզ Ղազար Փարպեցի։ Որոց առաջնորդէր խրատու եւ պաշտպանութեամբ ինքն իսկ առ յցեալ իմաստնական հանճարով երանելի հայրապետն Յովհան Մանդակունի, որ զկնի տէր Գիւտի պաշտեաց զաթոռ հայրապետութեան ամս վեց։ Յայսմ ժամանակի երանելին Տեառնթագ, որ էր ի գաւառէն Արշարունեաց, ի Կալոց գեղջէ, վկայեալ վասն Քրիստոսի քաջութեամբ կատարեցաւ ի Զառ Միհրան Հազարաւուխտայ ի զօրավարէն Պարսից։

Իսկ Վաղարշ արքայ Պարսից լուօղ եղեալ բարի խրատտուացն իւրոց՝ բարերարութեամբ զՀայս անդրէն նուաճեաց եւ մեծապատիւ մեծարեալ հաշտութիւն արար․ առ որս նշանս հաշտութեան մուրհակս մոռացութեան կնքէր։ Եւ առաւել եւս յարգեալ զՎահան ի ձեռն Անդեկանայ՝ զաշխարհս Հայոց ի նա հաւատայր մարզպանութեամբ, որ պետանայր ամս երեսուն։

Յայնմ ժամանակի Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ փիլիսոփայ, դառնայր ի Հայս եւ Դաւիթ աշակերտ Մովսիսի ի Հարք գաւառէ ի Հերեան գեղջէ։

Զայսու ժամանակաւ երանելին Յովհան Մանդակունի, որ էր ի գաւառէն Արշամունեաց ի գեղջէն Ծախննստայ, զՀայոց բազում կարգս ուղղութեան կատարեաց, զքարոզս գիշերի եւ տուընջեան, զկարգս մկրտութեան, ըզ սարկաւագի, զքահանայի եւ զեպիսկոպոսի եւ զօրհնութեան եկեղեցւոյ, եւ գլխովիմբ զպատարագամատոյցն, զոր Աթանասի ասեն լինել։ Եւ ինքն հանգեաւ ի կամս Աստուծոյ։

Ջ.

# ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻ

## ՊԱՏՄԻՉ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ*

Իսկ Նախարարացն ի մի վայր ժողովեալ կացուցանեն տեղապահ Բագրատունեան զսուրբն Վարդան։ Զայսու ժամանակօք դարձան ի Թարգմանութենէ Ղեւոնդ, Կորիւն եւ Արձան, որ դիպեցան ի ժողովն Եփեսոսի, զոր արար Թէոդոս (Բ.) ի մեռասան ամի Թագաւորութեան իւրում վասն Նեստորի չարի։ Եւ բերին անտի կանոնս վեց գլուխս։

Բայց գունդն Հայոց էր որ հնազանդէին Պարսից, էր զի ընդդիմանային պատերազմաւ. յորժամ վասն հաւատոյ ոյժ հասանէր. քանզի Շաւասպ Արծրունի եւ Վնդոյ աւագ նախարարքն ուրացեալ զհաւատս շինեն ի Դուին մեհեան Որմզդի եւ տուն կրակի եւ քրմապետ դնեն զՇիրոյ զորդի Վնդոյի։ Զոր լուեալ Վարգան գայր իւրով գնդաւն եւ սատակէր զՇաւասպ. եւ զմարզպանն Մշկան փախստական առնէր. եւ զպիղծն Վնդոյ յատրուշանն հրոյ արկեալ՝ այրէր եւ զՇիրոյ ի վերայ բագնին կախէր զփայտէ. եւ զտեղին շինէր եկեղեցի անուամբ սրբոյն Գրիգորի։ Եւ զսուրբն Յովսէփ ձեռնադրեն կաթուղիկոս, որ արար զժողովն ի Շապահի վանս, ուր զտուգանաց կանոնն կարգեցին։ Զկնի երկուց ամաց եկեալ գունդ ի Պարսից եւ ըմբռնեալ զնա եւ զՍահակ եւ զՂեւոնդ եւ զայլս եդին ի բանտի որպէս զխրատատու Վարդանայ հեռագոյն որսացեալ ի յըմբռնելն զսուրբսն. զոր եւ խնդութեամբ ընկալան զկապանս վասն Քրիստոսի եւ ոչ յօժարեցան հանել զնոսա մինչեւ ցժամանակն։ Վասն որոյ ի մի վայր եկեալ իշխանքն Հայոց՝ դնեն զԳիւտ Պատրիարք եւ ի Դուին փոխեն զաթոռն հրամանաւ նորին Յովսէփայ, յորմէ մանաւանդ հնազանդեցան սրբոյն Վարդանայ նախարարքն Հայոց ամենեքեան, որովք տայր պատերազմ (Վարդան) ընդ Պարսս Զօ[illegible] յաղթեալ [illegible] երկու պատերազմաց մինչեւ ցկատարումն իւր մարտիրոսութեամբ՝ օրհնութեամբ սրբոյն Սահակայ, որ ի ժամ վախճանի իւրոյ յամսեանն Նաւասարդի յերեսուն՝ յաւուր ծննդեան իւրոյ օրհնեաց զնա եւ զեղբարս իւր՝ զՀմայեակ եւ զՀամազասպեանն. Նոյնպէս եւ սուրբն Մեսրոպ յիւրում կատարման՝ յերեքտասան մեհեկի ամսոյ. որոց աղօթիւք եւ օրհնութեամբ պարապեցան

* Տես «Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական», Մոսկվա, 1861. եր. 74—80։

*եւ պսակեցան։ Քանզի ընդ այն ժամանակս եկաց ի գործ հազարապետութեան Յազկերտի չարամիտն Դեհրաճ եւ չոգաւ առ նա Վարազվաղեան, որ էր փեսայ Վասակայ Սիւնեաց իշխանին ի նոյն ազգէ՝ ատեցեալ եւ հալածեալ աներոյն իւրոյ. որ եւ (Վարազվաղան) ուրացեալ զՔրիստոս գրգռեաց զնա ի յանցսն, զոր անցոյց ընդ Հայս. որ եւ ի նոյն խորխորատն սատանայի անկանէր աներ նորին Վասակ. եւ եղեն պատճառք այնքան աղէտից, որ էանց ընդ Հայս, զոր յԸնդարձակ պատմութիւնսն է տեսանել։ Եւ վկայեցին Վարդանեանքն հազար երկու հարիւր երեսունքն (.´) ի հրոտից երեսունն ի վեշտասանն Յազկերտի. եւ զկնի երկուց ամաց սուրբ երէցն Սամուէլ եւ սուրբ սարկաւագն Աբրահամ ի հրոտից 7 ին եւ սուրբ եպիսկոպոս Բասենոյ Թաթիկ, որ յառաջագոյն տարեալ ի Խուժաստան դառն տանջանօք ի 10 հրոտից։ Եւ սուրբ կաթուղիկոսն Յովսէփ եւ սուրբն Սահակ եւ Ղեւոնդ եւ երէցն Մուշէ եւ սուրբ երէցն Արշէն եւ սուրբ սարկաւագն Քաջաջ ի 25 հրոտից յԱպար աշխարհի. եւ երանելի մոգպետն մարգաց ի 10ն։*

*Առողիկն ասէ թէ ստուգեցաք զվեշտասան Յազկերտի երեք ամ Մարկիանոսի։ Յորում աւուր (.´) սուրբն Մովսէս եւ Մամբրէ եւ Դաւիթ եկեալ յուսմանէ՝ հոգային զտուն կաթուղիկոսարանին։ Եւ թուի թէ ի լինել ժողովոյն Քաղկեդոնի վախճանեալ էր Գիւտ եւ չէր նստեալ Յոհան Մանդակունի։ Եւ բերեալ առ սոսա թուղթ դաւանութեան՝ ոչ ընկալան, զի արտաքոյ էր ամենայն սրբոց հարցն աւանդից. այլ չոգան Մովսէս եւ Դաւիթ, եթէ հնար իցէ օգնել ուղղափառութեան. վասն զի գտանին այսպիսի բանք առ մեզ թէ Դաւիթ խօսեցաւ յերկար ընդ Յոբնաղայ եւ ընդ դրան երէցն Պողքերայ եւ ընդ Մամբրէի արքեպիսկոպոսին Կորնթացւոց եւ կարկեցան եւ յամօթ եղեն։ Ապա յոտն եկաց Մելիտոս մետրոպօլիտն Մակեդոնացւոց եւ ասէ ցՄովսէս. ‘‘Գիտեմ զքեզ եւ զաշակերտքդ քո. ի մանկութենէ կրթեալ էք եւ թեքեալ ի ճռում բանս կոկոզաբանից եւ կրկղայօնիցն փիլիսոփայից եւ ոչ ոք կարէ յաղթել ձեզ. այլ եւ նախանձու վառեալ էք, զի ոչ կոչեցաք զձեզ, զի չէր կենդանի պատրիարքն ձեր։,, Եւ ասէ Մովսէս. ‘‘Ապաքէն ճանաչես զմեզ, զի անդրանիկ իսկ էաք եկեղեցւոյ եւ դատաւորք հայրապետանոցին եւ ընդէ՞ր ոչ կոչեցէք զմեզ. եւ զբազմահմտութիւնս մեր նախատինս ասես։ Բայց պատճառ ժողովոյն չէ ծածկեալ յումեքէ, այլ մեք զճշմարտութիւն ոչ թողումք՝ մի բնութիւն ասել մարմնացելոյն։,, Ասէ Մելիտոս. ‘‘Որպէս ասես զմինն յատկացեալ՝ ասես զՈրդի ի Հօրէ եւ միացեալ ի մարմնի։,, Մովսէս ասէ. ‘‘Ոչ բաժանեալ ի Հօրէ, եւ միացեալ ի մարմնի։,, Եւ այլ այսպիսի բանք բազումք։*

*Ուստի կարծեցաք այսպիսի գոլ զժամանակն. զվեց*

տամ կայեալ Գիւտայ զաւաթոռն՝ կատարի. եւ յաջորդէ զաթոռն նորա Յոհան Մանդակունի իմաստասէր եւ լի հոգւով Աստուծոյ, որ բարիոք յօրինեաց զկարգ ձեռնադրութեան եւ զժամակարգութեան եւ զճառս խրատուց: Եւ սա թարգմանեաց զերկրորդ Կորնթացիս թղթոյն եւ զՅոհան եւ այլ բազում օգտակար գործոց ի կեանս իւր: Կէսք ի կողմն Յունաց ասեն զԳիւտ կաթուղիկոս եւ զՅոհան ի Պարսից ի միում ժամանակի: Առ սոքօք էր Անտոն, որ եւ Թաթուլ, թողեալ զամենայն ինչ վասն Քրիստոսի Վարոսիւ հարազատիւն երթեալ կրօնաւորէր ի տեղւոջն, որ այժմ ասի սուրբ Թաթուլ:

Իսկ զկնի վճարման սուրբ նահատակացն մերոց չարն Վասակ զկին եւ զորդիսն երեք Համայեկի ի դուռն տանէր, որպէս զորդիս մահապարտաց, զոր խնդրեալ Աշուշայի Վրաց բդեշխին ի Յազկերտէ՝ տայ նմա զանակնունելի պարգեւն. որ եւ աւագն ի նոցանէ Վահան սպարապետ եղեւ Հայոց: Քանզի սատակեալ Յազկերտի՝ Պերոզ որդի նորա սպանեալ զեղբայրն իւր՝ թագաւորէ եւ հաշտութիւն առնէ աշխարհիս. եւ զՎահան կացուցանէ հարկահան արքունի: Եւ ի քսու արանց նեղեալ տկարանայ ի հաւատոցն, եւ զկնի հարեալ զնա ի սիրտն՝ զղջանայ, եւ ապստամբեալ յարքայէ հարկանէ զզօրսն Պարսից յոլով անգամ: Եւ Վարազվաղեան տիրեալ Սիւնեաց՝ վասն ուրացութեան ի բազում աւուրս նեղեալ ի դիւաց, խեղդի անզեղջ. յորում աւուր (.՜) [illegible] Վաղէն եւ այլ բազում ուրացօղք ընկալան ատէն զառհաւատչեայ գեհեննոյն: Յետ այսորիկ զօրավարն Պարսից Միհրան գայ բազում զօրօք ի վերայ Վախտանգայ Վրաց արքայի. եւ յղէ աղաչանս (Վախտանգ) առ Վահան օգնել նմա. եւ գնաց յօժարութեամբ. եւ ի խմբել պատերազմին վատ զօրքն Վրաց փախեան թագաւորաւն հանդերձ այլ եւ վատօք ի Հայոց: Եւ նահատակեցաւ սուրբն Վասակ եղբայրն Վահանայ. պսակեցաւ եւ սուրբ սեպուհն Սիւնեաց Յազդ յամենանն Հոռի ի վեշտասան ի Բագուան. նոյնպէս եւ քաջ սպարապետն Սահակ կատարի ի ժամ պատերազմին: Զկնի այսորիկ սպանաւ Պերոզ ի Հեփթաղաց եօթն որդւովք: Եւ թագաւորեցուցին զՎաղարշ եղբայր նորա եւ կոչեաց ըզՎահան եւ ետ նմա զզօրավարութիւն Հայոց. եւ յետ այնորիկ եթող ի նա զմարզպանութիւն, իսկ Վահան շինեաց զեկեղեցին Արտաշատու զաւերեալն ի Պարսից:,,



## Ե°

# ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԻՒՆԵԱ

## ՊԱՏՄԻՉ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ *

Յետ բառնալոյ թագաւորութեանն Հայոց, որոյ էր վե
ջինն Արտաշէս, եկաց մարզպան ի տեղի Արտաշիսի Վեհ-Միհ
Շապուհ ամս ԺԳ: Իսկ որդոյն Սահակայ խնդրեալ ի Վռա
Շապհոյ՝ կացուցանէ զԹոռն իւր Վարդան՝ որդի Համ
զասպայ, սպարապետ Հայոց եւ. ինքն վճարեալ յաստեա
փոխի ի կարգս հրեշտակաց: Իսկ յետ Վեհ-Միհր-Շապհ
մարզպանութեան կացուցանէն ի տեղի նորա զՎասակ Սի
նեաց տէր, մարզպան Հայոց: Նա էր Վասակ մարզպա
եւ Վարդան Մամիկոնեայն՝ սպարապետ Հայոց: Իսկ յե
Վռամ Շապհոյ թագաւորէ Պարսից Յազկերտ ամս Ժ
Նա էր Յազկերտի հազարապետ մի յոյժ խորհրդակ
Միհր-Ներսեհ անուն, եւ կայր յԱտրպատական աշխարհ
յոյժ չարահնար եւ մեքենաւոր բարուք. եւ ի վաղուց հետ
կամէր հնարս գտանել առ ի բառնալ եւ չիջուցանել զքրի
տոնեան աւետարանն: Նա Վասակ էր չքեղ եւ բարձր ի մ
աշխարհիս Հայոց եւ յոյժ մեծարգոյ եւ երեւելի ի դր
արքունի. եւ ունէր երկուս որդիս՝ Բաբիկ եւ Ատրներսե
անուն, եւ դուստր մի, որում փեսայացուցեալ էր զՎարա
վաղան եւ ատէր Վարազվաղան զկին իւր. վասն որոյ մա
խացեալ Վասակայ՝ կամէր սպանմամբ խնդրել զվրէժ քինու
զոր եւ իմացեալ նորա՝ փախստեայ անկանի առ Միհր-Նե
սեհ. եւ վասն չար եւ սաստիկ նախանձու առ ի հաճ
զկամս նորա ելանէ յաստուածադրոշմ ուխտէ քրիստոնէու
թեան եւ երկիր պագանէ կրակի եւ արեգական. եւ հանա
պազ գրգռէր զՄիհր-Ներսեհ հազարապետ արքայի ի վեր
Հայոց, թերեւս լցուսցէ զխորհուրդս իւրոյ չար քինու
որ ընդ Վասակայ:

Իսկ Միհր-Ներսեհ մատուցեալ զսա առաջի Յա
կերտի՝ ծանուցանէ նմա զխորհուրդ նորին. եւ նա մեծ
րեալ զՎարազվաղան՝ յաստուածոց իմն համարեցաւ զպ
տահումն զայն. խորհէ ընդ մովպետան մովպետի եւ ը
այլ աւագանւոյն դարձուցանել զաշխարհն Հայոց ի կրօ
իւրեանց. հաճեցան ամենեքեան: Նա հրամայեաց թագաւո
հրովարտակս գրել առ իշխանսն Հայոց, եւ ընդ նմին
տրուշանս եւ փուշտիպանս եւ քուրմս առաքել ի ձեռ

* Տես ''Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի Պատմութի
Տանն Սիսական,, Մոսկվա, 1861. գլ. ԺԶ, ԺԷ, ԺԸ:

մեծամեծաց իւրոց, որք եկեալ հասեալ յաշխարհս Հայոց՝ մատուցին զնամակն մեծամեծ նախարարաց, որոց լուեալ՝ սուգ անհնարին պատեաց զամենեսեան։ Եւ փութանակի ժողովեալ զեպիսկոպոսունս եւ զվանականս աշխարհին ի մի վայր եւ զսեպուհս եւ զաւագ տանուտէրս, որոց գլուխ ժողովոյն Յովսէփ, որ եկաց զկնի սրբոյն Սահակայ տեղապահ աթոռոյն, եւ Անանիա՝ եպիսկոպոս Սիւնեաց, եւ Ղեւոնդ երէց. եւ խորհեալ ի միասին՝ գրեն պատասխանի յոյժ բիրտ եւ պինտ վասն օրինաց իւրեանց առ Թագաւորն։ Եւ դարձեալ անդրէն դեսպանացն՝ մատուցին զպատասխանին արքայի։ Ընդ որ յոյժ ցասուցեալ ահագին եռացմամբ սրտին իբրեւ օձ թաւալգլոր լինէր. եւ փութանակի հրաւիրակս հանեալ կոչէր զամենեսեան կամայ եւ ակամայ զիշխանս Հայոց եւ տայր ածել զառաջեաւ։ Եւ ի մէջ մեծ ատենին սաստիւ հարցեալ զնոսա՝ ընտրել զմի յերկուց — կամ ապրել եւ յանձն առնուլ զօրէնս մոգութեան, եւ կամ զարմիւք եւ զաւակօք մեռանել խաղառ։ Որոց առ ժամայն ոչ ինչ պատասխանեալ ելեալ արտաքս խորհեցան եւ ընտրեցին առ ժամ մի վերին երեսօք յանձն առնուլ զհրամանս արքունի, եւ երթեալ յաշխարհն իւրեանց հնարել պատերազմաւ եւ կամ սիրով զփրկութիւն աշխարհին եւ զգիւտ անձանց. զոր եւ արարին իսկ։ Եւ մեծաւ պարգեւօք արձակեցան յաշխարհն իւրեանց՝ ածեալ ընդ ինքեանս զատրուշանս եւ զվարդապետս օրինացն։

Բայց կասկածեալ Թագաւորին եթէ խաբեսցի, պատանդ էառ զբդեաշխն Վրաց զԱշուշա եւ զերկու որդիսն Վասակայ՝ զԲաբիկ եւ զԱտր-Ներսեհ։ Իսկ իշխանքն Հայոց՝ ուխտեալ էին միմեանց եւ աւետարանին երդմամբ կնքեալ զգիր ուխտին՝ միով միաբանութեամբ կեալ եւ մեռանել ի վերայ քրիստոնէական հաւատոյն։ Որք եկեալ հասեալ յաշխարհն իւրեանց, ի գաւառն Արարատու՝ երեւեցուցին զծածուկ ուխտ պայմանին. զոմանս ի մոգուցն սպանին, զայլսն փախուցին եւ զկրակն ցրուեալ արկին ի ջուրս։ Ընդ որ խոժոռեալ Վասակայ՝ վարանէր ի մեծի տրտմութեան. մի՝ զի բոց ծնողութեանն ջեռոյց զփորոտիս նորա վասն որդւոցն որ կային անդ ի պատանդի եւ խելացնորեալ ափշեցուցին զնա. մի երկիւղ Թշնամւոյն Վարազ-Վաղանայ, որ կայր առ արքայի եւ սպասէր Վասակայ մահուն, եւ մի՝ զի զրկումն մեծ եւ երեւելի փառացն եւ հայրենի տէրութեանն։ Յայսց երից անհնարին տարակուսանաց տագնապեալ խուճապէր միշտ եւ ոչ ունէր քուն ի գիշերի կամ հանգիստ ի տուընջեան։ Եւ զի սահման է մարմնոյ ի կենցաղումս հանապազ սխալել եւ գթել, սակս որոյ եւ սա սխալեաց յերդումն սուրբ աւետարանին. եւ զայս համարձակիմ ասել, եթէ միով բանիւ մեղայ էր խոստովանեալ ի վերջոյ՝ ոչ էր թողեալ զնա կորուստ անսահման

գթութիւնն Աստուծոյ։ Բայց այս ծնունդ էր չար յուսահատութեան, զորոյ զորպէսն դատաստանին Աստուած միայն գիտէ եւ ոչ այլ ոք։

Արդ սակս այսր պատճառի խաբեալ ի չար դիւէն՝ ապաշխարութեան յուսով առեաց ուխտին առ ժամ մի, թերեւս զերծուցէ յեկեալ հասեալ չարէն զորդիսն իւր եւ զինքն։ Եւ յղեալ զՎարդան զօրօքն Հայոց ի պատերազմ, յԱղուանս առ Պարսիկս որ եկեալ էին անդ՝ եւ ինքն ծանուցանէ զխորհուրդ իւրոյ միամտութեան, որպէս թէ հաւատս պահելով թագաւորին, Միհր-Ներսեհի հազարապետին ի ձեռն նամակաց, նաեւ զօրագլխոցն Պարսից որ յԱղուանս. զայդ եւս օրէն համարելով, որպէս ասէ աստուածային Գիրք. "հնազանդ լերուք մարմնաւոր տերանց որպէս Աստուծոյ։„ Եւ ապստամբեալ սա ի Վարդանայ եւ ի կամաւորականացն եւ յայլ ազատացն որք ընդ նոսա, այլովք իշխանօք Հայոց՝ իշխանաւն Բագրատունի Տիրոցաւ, Խորխոռունի Գադիշոյ, Վահեւունի Գիւտ՝ Պալունի Վարազ-Շապուհ, Գաբեղենի Արտէն, Ուրծայ Ներսեհ եւ այլ բազում ոստիկանք եւ սեպուհ տանց եւ տոհմից, որք երկուցեալ յահէ Պարսիցն՝ կամեցան շնորհուկս առնել թագաւորին. եւ զամենայն բերդս եւ ամրոցս Հայոց ընդ իւրեանց ձեռամբ արարին. եւ զամենայն մանկունս Մամիկոնեան տոհմին եւ զկամաւորականացն եւ զայլ ազատացն ետ ածել Վասակ առ ինքն եւ ամրացոյց յանտառիկ ամուրս աշխարհին Սիւնեաց։ Եւ մինչ այս այսպէս եղեւ, ապա լուեալ Վարդանայ զդառն գոյժ մահաբեր բօթին, մեծաւ յաղթութեամբ եկեալ ի պատերազմէն, որ առ Աղուանս, այլովք ազատօք խորհէին ի միասին զաւուրս բազումս հնարս ինչ։ Եւ մինչ թափեցան յամենայն յուսոյ՝ զմահ ընտրեցին լաւ քան զկեանս. եւ անցեալ յԱրտազ գաւառ յետ ամօրէայ ...րց եղեւ խմբումն մեծ պատերազմին, յորում պսակեցաւ սուրբն Վարդան այլովք ընկերօք. զոր լուեալ զայս Յազկերտի՝ ի մեծի եւ յանհնարին սուգ դառնութեան վարանէր։ Իսկ Վասակ՝ հաւատարիմ եւ մեծավաստակ զինքն համարեալ, առեալ զկալանաւոր մանկունսն եւ զսուրբ քահանայսն՝ խաղաց գնաց ի դուռն արքունի, յորում ատեան մեծ լինէր եւ հարցափորձ կալանաւորացն ընդ Վասակայ։ Եւ ամենայնիւ պարտեալ եւ յիմարեալ լինէր անօրէնն Վասակ. եւ ըստ արժանաժառանգ իւրոյ թուշակին առնոյր զփոխարէնն։ Եւ ի նմին դրան ի դիպահող կացեալ լինի մինչեւ անդէն առնու զվախճան. զորոյ եւ զորպէսն լիով պատմեն մեզ Եղիշէ եւ Ղազար Փարպեցի։ Իսկ զիշխանութիւնն Սիւնեաց առնու անօրէնն Վարազ Վաղան, որ էր դիւաբախ, եւ յետոյ ի դիւէն խեղդամահ եղեւ։ Եւ յետ նորա նոյն չարութեամբ անհեդեդ հսկայն Գդիհոն, որ անպարտելի էր զօրութեամբ եւ





*միշտ պատերազմէր ընդ մնացորդս Հայոց. զոր եւ Վահան եղբօրորդի Վարդանայ, վերին օգնութեամբ հարեալ սատակեաց ի պատերազմի զքուրդն աՀագին զԳդիհոն ի գաւառին Շիրակայ մերձ ի գիւղն որ Բշտէ անուանի։ Եւ ծառայից իւրոց թափեալ զփոր նորա՝ պատեցին եղեգամբ եւ բերեալ եդին ընդ Հարս իւր ի դամբանի։*

*Արդ թէպէտեւ տեարքն երեւելիք Սիսական պետութեանս պարեալք ի Հին խաբողէն՝ Հետեւեցան կամաց թագաւորին եւ առին ժառանգութիւն զփառս աշխարհականս, զառօրեայս եւ զեղծական. սակայն ոմանք ի նոցանէ եղբարք ըստ մարմնոյ եւ արեանառուք իմաստնացան զվերին իմաստութիւնն, եւ լուսով Հաւատոյն ոչ գնացին ընդ մոլար շաւիղն, որ Հայի ի վիհն կորստեան. այլ Հրաժարեալք յամենայն աշխարհական իրաց՝ թողին զփառս եւ զմեծութիւն եւ գնացին զՀետ երանաւէտ ձայնին, որոց անուանքն Բաբգէն եւ Բակուր եւ Ցաղդ։ Սոքա ելեալ ի գնդէն Սիւնեաց գնացին զՀետ ուխտապահացն Հայոց, որոց գլուխ եւ սպարապետ էր երանելին եւ քաջ Վահան Մամիկոնեան՝ եղբօրորդի Վարդանայ, եւ ի բազում պատերազմունս մեծամեծ քաջութիւնս ցուցանէին։ Իսկ ի գալն Միհրանայ բազում զօրօք ի Վիրս պատերազմել ընդ Վախթանկայ՝ թագաւորին Վրաց. գնաց եւ Վահան Հայոց զօրօքն յօգնութիւն Վախթանկայ, զի ուխտակիցք էին միմեանց։ Եւ իջեալ ի դաշտն Ճարմանոյ մերձ Կուր գետոյն՝ ճակատեցան ընդդէմ Պարսիցն եւ գամ մի յաղթեցին։*

*Իսկ Վրաց երկուցեալ ի բազմութենէն Պարսից՝ ի փախուստ դարձան։ Եւ Վահան զայս իմացեալ դարձաւ անդրէն իւրով գնդաւն, յորում տեղւոջ էառ զնաՀատակութիւն Վասակ՝ կրսեր եղբայր ՎաՀանայ։ Իսկ Միհրան զՀետ մտեալ զօրացն կալաւ զՋրաՀատ Կամսարական՝ զեղբայր Ներսեհի Շիրակայ տեառն, այսու պատճառաւ զի երիվար նորա վազս առեալ սաստիկս ընկէց զնա. ապա պնդեալ զկնի կալան եւ զգովելի սեպուՀն Սիւնի զՑաղդ. եւ մեծապէս խրախացեալ Միհրանայ՝ դարձաւ անդրէն։ Իսկ ՎաՀան գտանէ զԲաբգէն Սիւնեաց պայազատն կարեվէր խոցեալ եւ անկեալ ի տեղի մի, Հեծուցանէ զնա յերիվար եւ Հանեալ անտի ապրեցուցանէ, որ եւ վասն խոցուածոյն այլ ոչ շրջեցաւ ընդ ՎաՀանայ, այլ անց գնաց յանքոյթ տեղիս։*

*Այլ պիղծն Միհրան առեալ զերկու սեպուՀս շրջեցուցանէր ընդ ինքեան եւ Հետամուտ լինէր ՎաՀանայ. եւ զնոսա օր ըստ օրէ զառաջեաւ ածեալ կապանօք՝ դառն տանջանօք նախատէր եւ չարչարէր եւ Հնարէր դարձուցանել յիւր կրօնս, յորմէ աներեւոյթ օգնութեամբ ազատեալ լինէր Կամսարականն ՋրաՀատ։ Վասն որոյ սաստկապէս զչարեալ Միհրանայ՝ եւ երկուցեալ՝ մի՛ գուցէ նոյն*

գունակ եւ Սիւնին Յազդ. զերծցի՝ հրամայէ զորոշն անմեղ եւ զզատն տարեւոր զառաջեաւ ածել, զի լիցի պատարագ անուշահոտ Տեառն իւրում: Եւ զի առաւելապէս գրգռեալ լինէր առ յանօրէն եւ ի կայենատիպ եղբօրէն Յազդայ ի Գդիհոնէ Սիւնեաց Տեառնէ. առնս այնր առատիկ դրդեալ լինէր ի ցասումն: Խօսել սկսանի ընդ Յազդայ մեծամեծ պատուհասիւ եւ ահարկու խրոխտմամբ հնարէր զանազան հեթեթանօք խախտել ի քրիստոնական հաւատոյն եւ ընդ պատժոցն խոստանայր եւ պարգեւս մեծամեծս, եթէ արասցէ զկամս նորա. իսկ երանելին այն լուռ միայն ունկն դնէր բանից նորա, եւ ապա հրաշագիտակ տեսականն յերկինս հայեցեալ առ անձկալին իւր՝ կոչէր զնա յօգնականութիւն. եւ պնդեալ զսիրտն եւ զմէջսն անճառելի յուսովն՝ պատասխան տայ Միհրանայ եւ ասէ. «Թէ զժամանակեայ կեանս մարմնոյ վաճառէր ոք, եւ ինձ հնար էր գնել եւ կեալ յաղագս ցաւոց մարմնոյս եւ սիրոյ կենցաղոյս, տայի արդեօք զամենայն ինչ զոր ունէի՝ եւ գնէի. բայց զյաւիտենից պատուհասն եւ զանշէջ գեհենին զպատրաստեալն գնել ընդ կարասւոյ յայժ անմտութիւն է, մանաւանդ զի եւ անյայտ է երեւումն վաճառոյն, քանզի ոչ ոք գիտէ զկեանն իւր զհետին եւ զմօտեալն. գուցէ գնեալ խնդասցէ եւ ի վաղիւ վախճանեալ յուղարկեսցի ի խաւարն արտաքին: Այլ զայդպիսի աղտեղի եւ կորստական վաճառ թէ սիրեցեալ էր իմ՝ ընդէ՞ր այժմ գնէի զդա վասն կելոյ, այլ վաղ իսկ առնուի հանդերձ փառօք եւ մեծամեծ պարգեւօք. այլ զայս ընտրեցի յօրում եմս, եւ զայն համարեալ լաւ եւ պատուական՝ ուրախ եմ եւ խնդամ մեռանել վասն Քրիստոսի, քան թէ զհազարս ամաց կեալ մեծամեծ փառօք յուրացութեան, եւ անվախճան պատուհասին լինել ժառանգորդ»:

Եւ լուեալ զայսպիսի բանս անօրէն Պարսկացն ի սըրբոյն Յազդայ՝ իբր անգառագեղ գազանք յարձակեցան ի վերայ եւ կամէին կենդանւոյն հաղորդել ամենեքեան յարիւն նորա: Եւ առեալ սպանողացն տարան մերձ ի մատուռն սուրբ եւ առաքելանման նահատակին Գրիգորի, ի գիւղն որ կոչի Բագաւան ի գաւառին Վաղարշակերտոյ ի նահանգին Բագրեւանդայ, ի լանջակողմն լերինն Նպատայ, մօտ ի սուրբ տեղի մատրանն իբրու երկու քարընկեցօք. եւ անդէն հատին զսուրբ գլուխն. զոր բարձեալ քրիստոնէից տարեալ հանդուցին ի սուրբ մատրանն Գրիգորի: Կատարեցաւ սուրբ սեպուհն Սիւնի երանելի նահատակն Յազդ յամսեանն հոռի, որ օր վեշտասան էր ամսոյն. յորոց վերայ եղեն նշանք մեծամեծք եւ լինին բժշկութիւնք ամենայն ախտաժետաց. որ է բարեխօս վասն մեր եւ աշխարհիս այսմ առ Քրիստոս, որում փառք յաւիտեանս, ամէն:

Յետ աւերման աշխարհիս Հայոց եւ կատարածի սրբոց Վարդանանց՝ զամս քսան եւ երեք ոչ դադարեաց սուրն

պարսկական ի ճարակելոյ զսեաւ արամեան։ Քանզի յետ Յազկերտի Թագաւորեաց Պերոզ ամս՝ քսան եւ երկու եւ խառացոյց զանողորմ կոտորումն եւ գերումն, այրումն եւ քանդումն աշխարհիս Հայոց։ Իսկ ի սատակելն նորա ի Հեփթաղացւոց Թագաւորէն եւ ի բնաջինջ լինել տամբ եւ զաւակօք, ապա Թագաւորէ Պարսից խաղաղասէրն Վաղարշ, որ եւ յառաջին ամի իւրոյ տէրութեանն արար հաշտութիւն ընդ Վահանայ եւ այլոց Նախարարաց Հայոց. եւ եդին զնա մարզպան աշխարհիս եւ կնքեցին ուխտ երդման եւ հաստատեցին զխաղաղութիւն ընդ Հայս։

Ապա յետ սորին Վարդանայ շրջէին ընդ ամենայն տեղիս զօր Պարսից, ոմանք զկնի փախստէից եւ ոմանք ի վերայ բերդից եւ ամրոցաց եւ ջանային ի սպառ ի սպուռ ջնջել եւ արմատախիլ առնել զազգ Հայոց։ Սուրն վաղակաւոր կայր մերկացեալ ի վերայ ամենայն հայ զինուորի, միայն խնդրէին բանիւ միով ուրանալ զՔրիստոս եւ զլուխ կորացուցանել արեգական, եւ թէ ոչ՝ մեռանել առժամայն։ Վասն որոյ լի եղեն վկայիւք ամենայն անապատք եւ խորաձորք, հովիտք եւ բլուրք աշխարհիս Հայոց, իբր զկանճաւս աստեղաց, որ ի մէջ գիշերի փայլին Թանձրախիտ ընդ երեսս երկնից. որպէս եւ աստ է տեսանել յաշխարհիս Սիսական ի գաւառս Վայոց ձորոյ, ուր եկեալ ի զօրացն Հայոց փախստեայք կամէին անցանել յամուր աշխարհն Արցախայ. որոց զկնի պնդեալ զօրացն Աճոշխոդոյէ եւ հասեալ ի գաւառամէջն Վայոց ձորոյ մերձ ի բլուրն որ մեծամեծ վիմօք պատեալ էր վասն ամրութեան ի գետամիջին Եղեգեաց եւ Մոզան՝ մատուցեալ եգին արեան ճապաղիս. եւ կոտորեցին զբազումս եւ զգեղեցիկս որ էր յազգատոհմէ Հայոց վասն անուան Քրիստոսի, յորոց վերայ եղեն նշանք զարմանալիք ի վերուստ եւ ինքեանք պնդեցան զհետ այլոց. եւ հասեալ կիսոցն յատորոտ Բերդաքարի ի միոյ ձորակի անդ կատարեցին, որոց գլխաւորին անուն Մարտիր էր, որ եւ տեղն կոչեցաւ Անգեղ ձոր։ Եւ անդէն ասպատակ եդեալ եւ երեք հարիւր արս ի ջրկիցն, որ Ոստինք կոչի եւ Արտաբոյնք, եւ անդ զնոսա խողխողեցին. յորոց վերայ յետոյ շինեցաւ եկեղեցի ի բնակչաց տեղւոյն։

Եւ անտի սակաւ մի անցեալ Պարսկաց ի ձորադուռն, որ ի ձախ կողմանէ հայի ի վեր յուխտն սուրբ՝ Ցախացքար կոչեցեալ, որ ի վերայ բարձրաւանդակին ի մէջ սահմանաց երկուց գեղջն, զոր ի վերայ ասացաք. անդ կոտորեալ յոյժ բազմութիւնք սեպուհ արանց եւ ընտիր զօրաց՝ եւ ինքեանք եկեալ ի շինամէջն բնակեցան խորանօք՝ լքեալք եւ վաստակեալք ի կոտորածէ, եւ կամեցան գիշերօթ առնել։ Իսկ ի մէջ գիշերին Պարսիկ մի, որ էր գուշակ զօրացն, տեսանէր զերկինս բացեալ եւ լոյս սաստիկ հեղեալ ի վերայ սպանելոցն, եւ կառք մի ոսկեղէն բարձր յոյժ, յորոց վե-

րայ նստէր կին մի ծիրանազգեստ թագաւորակերպ, եւ ամբոխք ահագին զօրաց լուսեղինաց շուրջ զնովաւ։ Եւ նա հայէր ի վերայ կոտորածին եւ լայր ողբով, եւ մի մի գգուէր ի նոցանէ։ Իսկ պարսիկն այն զարհուրեալ կամեցաւ ազդարարել զօրացն, եւ կապեցան ոտքն եւ լեզուն։ Ապա մերձենայր ի նա մի սրբոցն զօրաց եւ նա հարցանէր. ''ո՞վ է այդ,,. ասէ հրեշտակն, ''այն Մայրն է երկնաւոր Թագաւորին, եւ իջեալ է առ վկայս եւ սիրելիսն որդւոյն իւրոյ, եւ մի մի կամի փառաւորել զնոսա,,։ Եւ կացեալ տեսլեանն մինչեւ յառաւօտն եւ աներեւոյթ լինէր։

Իսկ ի լուսանալ առաւօտուն կամեցան զօրքն գնալ ի տեղւոյն, եւ գտին զայրն թալացեալ անկեալ. հարցանէին ցնա զպատճառն եւ նա այլ ինչ ոչ կարէր պատասխանել, միայն մատամբ ցուցանէր եւ լեզուաւ ասէր. ''մայր անդ այ, մայր անդ այ,,, վասն որոյ եւ անուն տեղւոյն մինչեւ ցայժմ Մօրանդ կոչի։ Եւ գնացեալ Պարսիկն այն անկեալ զորբովքն եւ բժշկեալ՝ լինէր քրիստոնեայ եւ զամենայն աւուրս իւր սպասաւորէր սրբոցն. որ եւ յետոյ երթեալ քրիստոնէից՝ ամփոփեցին զսուրբսն եւ շինեցին մատուռն ի վերայ։ Իսկ զառաջին սուրբսն, որ կատարեցան առ բլրաւն ի ժամուն ամփոփեցին քրիստոնեայք։ — Եւ էր յայնժամ կաթողիկոս երանելին Գիւտ. որ լուեալ հրամայէր շինել վկայարան մեծ ի վերայ սրբոցն եւ ժողովել անդ զոսկերս նոցա։ Ապա ձեռն ի գործ արկեալ Ցրեւ եւ Շահիրէտ եւ Արշէն երէց եւ Աբդիու՝ հիմն արկին սրբոյ կաթողիկէին յիններորդ ամին Գիւտայ կաթողիկոսի յամառան ամսամտին, որ օր հինգ էր ամսոյն։ Եւ կատարեալ զնա մեծածախ գանձիւք կանգնեցին ճեմարան երկնանման հրաշաքարտար շինուածով երկագմբէթ եւ եռախորան. եւ յերկուս կողմանս գաւիթս, սրահակս, եւ վերնատունս սեամբք եւ սքանչելի յօրինուածովք։ Եւ վայրն ամենայն ի մեծ գետոյն մինչեւ ի վեր ի լեռնակողմն՝ որ Կղօնք կոչի, ընծայեցաւ ի ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյ պաշտօնէիցն։

Իսկ ի կատարման գործոյն գայ երանելի կաթողիկոսն Գիւտ եւ Անանիա Սիւնեաց եպիսկոպոս, եւ բազմամբոխ ժողովով փոխեն ի հանգիստ զսուրբսն, եւ առնեն նաւակատիս սուրբ եկեղեցւոյն ութ օր ի փառս Քրիստոսի։ Բայց այժմ յետ աւերման տեղւոյն՝ եղեւ շինանիստ Գեղջկաց, եւ կոչեցաւ տեղին Խատորալեզ։ Զայս ամենայն ծանեաք յիւրոց արձանագրութեանց. եւ այլ՝ էր որ ի գրոց, եւ էր՝ որ ի տեղեաց եւ ի վկայից եւ յանուանցն եւ ի հաւաստի աւանդութեանց հնոցն ծանեաք. եւ տեղեկացեալ ամենայն ստուգիւ՝ աւանդեցաք ձեզ։

# ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿԸ·

## (Գ. ԳԻՐՔ)

*Այս ցանկի մէջ մտած չեն Նախարարութեանց աղիւսակի եւ ժամանակագրութեան երեք տախտակների մէջ եղած յատուկ անունները։*

---

## Ա, ԵՒ Բ ԳՐՔԵՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԵԱՆ

## ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆԸ·

---

### ԳԼՈՒԽ Ա. *Արշակունեաց անկումը:*

*Վռամ Բ. Հայոց վերայ թագաւոր է դնում Արտաշէս Գ.ին. (426թուին:) Արտաշէս անկարգ է վարում իւր կեանքը: Նախարարները կամենում են բողոքել Վռամին, բայց Սահակ Պարթեւն արգելում է: Նախարարները բողոքում են Վռամին. Վռամը կանչում է իւր մօտ Արտաշէսին եւ Սահակ Պարթեւին: Սուրէն Պահլաւը յորդորում է Սահակ Պարթեւին՝ միաբանելու նախարարների մտածութեանը, բայց նա հրաժարուում է: Մեծ հարցափորձի ժամանակ Վռամը զրկում է Արտաշէսին թագաւորութիւնից եւ Սահակ Պարթեւին էլ կաթուղիկոսութիւնից. (432թ.:) Վեհմիհրշապուհ պարսիկը նշանակուում է մարզպան Հայաստանի վերայ:*

### ԳԼՈՒԽ Բ. *Հալածանք:*

*Յազկերտ Բ. ասպատակում է Հոռոմոց գաւառները եւ հալածում քրիստոնեաներին: Վարազվաղան Սիւնին ընդունում է մոգական կրօն: Յազկերտ Բ. Միհրներսէհի եւ մոգպետի խորհրդով կանչում է քրիստոնեայ զօրքերին եւ հաստատում բանակ Հոնաց դէմ: Նորա ամբարտաւանութիւնը եւ պատրողական միջոցներով քրիստոնեաներին նեղացնելը: Գարեգին Նախարարի դիմադարձութիւնը եւ պատժուիլը :*

### ԳԼՈՒԽ Գ. *Առաջարկութիւն:*

*Յազկերտը խորամանկութիւններ է անում քրիստոնեաներին դայթակղեցնելու: Յայտնի հրամայում է մոգութիւն պաշտելու եւ բացարձակ հալածում է հաւատացեալներին: Դենշապուհ պարսիկը գալիս է Հայաստան եւ ծանր փոփոխութիւններ է ձգում: Յազկերտը նամակ է գրում քրիստոնեայ հպատակներին եւ պահանջում է ուրացութիւն:*





## ԳԼՈՒԽ Դ. Պատասխան։

Հայոց Յովսէփ կաթողիկոսն Արտաշատի ազգային ժողովով պատասխանում է նամակին։ Նամակի բովանդակութիւնն ըստ Եղիշէի եւ Ղազարու։

## ԳԼՈՒԽ Ե. Նախարարների գնալը։

Յազկերտն եւ իւր պաշտօնեաներն Հայերի պատասխանից անբաւական են մնում։ Հայոց եւ այլ քրիստոնեաների գլխաւոր նախարարները կոչւում են Դուռը։ Նոքա բերանացի եւս մերժում են Յազկերտի առաջարկութիւնը, բայց նորա սպառնալիքներից սոսկացած խնդրում են մտածելու ժամանակ։

## ԳԼՈՒԽ Զ. Նախարարների խորհուրդը։

Նախարարները խորհուրդ են անում միասին, թէ ինչպէս ազատուին Յազկերտի ձեռքից, եւ որոշում են առժամանակ երեսանց ուրանալ քրիստոնէութիւնը։ Վարդան Մամիկոնեանն հակառակում է նոցա որոշմանը, բայց երբ նախարարները երդումով ուխտում են հաստատ մնալ իրենց որոշմանը, յօժարանում է։ Բոլորն էլ հրապարակաւ երկրպագութիւն են անում արեգակին եւ կրակին։ Յազկերտը նախարարների հետ մոգեր է ուղարկում Հայաստան կրակապաշտութիւն տարածելու։

## ԳԼՈՒԽ Է. Ուրացութիւն։

Նախարարներն եւ մոգերը Պարսկաստանից ճանապարհ են ընկնում դէպի Հայաստան։ Պարսից բանակի միջի քրիստոնեաները բողոքում են նախարարների ուրացութեան դէմ, եւ դեսպանով իմաց են տալիս առաջուց եպիսկոպոսների ժողովին։ Եպիսկոպոսներն եւ նախարարների գերդաստաններն հանդիպում են նոցա։ Վարդան Մամիկոնեանն իւր գերդաստանով ընտրում է օտարութիւն գնալ։ Վասակ Սիւնին եւ միւս իշխանները դեսպան են ուղարկում եւ յետ բերում նորան։ Վարդանն աշխատում է ապստամբութեան գործն սկսել, բայց դեռ չի վճռւում։

## ԳԼՈՒԽ Ը. Միաբանութիւն։

Մոգպետն առաջին փորձը տեսանելու համար գալիս է մի եկեղեցու դռները քանդելու։ Ղեւոնդ երէցն եւ ժողովուրդը արգելք են լինում։ Մոգպետը հնար է փնտռում Հայերի կատաղութիւնից ազատուելու եւ յանդիմանում է Վասակին։ Վա-

սակը նորան հանդստացնում է եւ նենգութիւններ անում Հայոց դէմ: Եպիսկոպոսները պահանջում են Վարդանից որ բոլոր չարութիւնների վրէժն առնուի: Ուխտապահ նախարարները միաբանում եւ հալածում են Պարսից բանակը: Վասակն էլ երդումով միանում է նոցա հետ: Ուխտապահների զօրքը քանդում է մոգերին եւ առնում է բերդերը:

## ԳԼՈՒԽ Թ. Օգնութիւն:

Մոգերի մի մասը մնում է զօրքով Աղուանք եւ ստիպում է ուրացութեան: Աղուանները խնդրում են Հայերից օգնութիւն: Հայերը խնդրում են օգնութիւն Յոյներից, Յոյները մերժում են: Եպիսկոպոսները քաջալերում են ժողովրդին: Հայոց զօրքն երեք բաժին է լինում. Վարդան Մամիկոնեանը մէկ բաժնով գնում է Աղուանքն ազատում եւ Ճորայ պահակին տիրում.(450:)

## ԳԼՈՒԽ Ժ. Վասակի նենգութիւնը:

Վասակ Սիւնին Հայոց գնդի միւս բաժնով մնում է Հայաստանում եւ նորից յետ է կայնում իւր երդումից. Հայաստանի շատ տեղերը նորա ձեռքով աւերուում են, Հայոց եկեղեցիները քանդուում եւ եկեղեցականները հալածուում: Վարդանը վերադառնում է Աղուանքից: Վասակը փախչում է իւր երկրի ամրոցները. Հայոց ուխտապահ զօրքը մնում է Այրարատում ձմերելու: Եպիսկոպոսները մխիթարում են ժողովրդին եւ դեսպան են ուղարկում Յազկերտի մօտ: Յազկերտն յառաջ թողութիւն է շնորհում քրիստոնեաներին, յետոյ կրկին միտքը փոխում է: Հայերի մէջ տիրում է միաբանութիւն: Միհրներսեհը գալիս է Փայտակարան եւ Վասակի օգնութեամբ պատերազմի պատրաստութիւն տեսնում: Հայերի անօգնական վիճակը. Վասակի եւ իւր արբանեակների նենգութիւնները. Միհրներսեհ յանձնում է Վասակին Պարսից զօրքը եւ զօրագլուխները. գլխաւոր զօրապետութիւնը տալիս է Մուշկան Նիւսալաւուրտին:

## ԳԼՈՒԽ ԺԱ. Աւարայրի կռիւը:

Ուխտապահները ժողովուում են Արտաշատ: Առանձար Ամատունին գնում է լրտեսելու Պարսից զօրքը եւ շփոթ ձգելով նորա մէջ յետ է գալիս: Պարսից ու Հայոց բանակները տեղաւորուում են Արտազ դաշտի վերայ: Ուխտապահների նախապատրաստութիւնը. Ղեւոնդ երէցի ճառը. Վարդանի կարդացած քաջալերութիւնը: Ամբողջ զօրքը եւ զօրավարները կատարում են իրենց՝ քրիստոնէական վերջին պարտքը եւ պատրաստուում մահ

ընդունելու։ Պարսից զօրավարն էլ իւր զօրքն է քաջալերում եւ ճակատը պատրաստում։ Վարդանը բաժանում է Հայոց զօրքը չորս թեւ։ Պատերազմը տեւում է առաւօտուանից մինչեւ արեւի մայր մտնելը, երկու կողմն էլ յաղթւում է։ Վարդանն ուրիշ նախարարների հետ ընկնում է պատերազմի դաշտում (451 թ.)։ Հայերի յուսահատ վիճակը։

### ԳԼՈՒԽ ԺԲ. Մաքառումն։

Մուշկան Նիւսալաւուրտը Վասակի օգնութեամբ նուաճում է ցիրուցան եղած ուխտապահ Հայերին։ Յազկերտը հրամայում է մարզպան կարգել Ատրորմիզդին. ազատութիւն տալ քրիստոնեաներին իրենց հաւատը պաշտելու եւ Վասակին ու գլխաւոր քրիստոնեաներին էլ իւր մօտը կանչել։

### ԳԼՈՒԽ ԺԳ. Ազատութիւն։

Ատրորմիզդը խաղաղութիւն եւ կրօնի ազատութիւն հրատարակեց. Համայեակ Մամիկոնեանի գնդի վերայ զօրք ղրկեց։ Համայեակն սպանուաւ եւ նորա գունդն էլ ցիրուցան եղաւ։ Հայոց բողոքները լսեց եւ գրեց Յազկերտին։ Վասակը նախ՝ քահանաներին եւ ուրիշ կապեալներին ուղարկեց Պարսկաստան, ապա ինքն էլ գնաց (453) Յազկերտին ներկայանալու։ Յազկերտը նոր հրովարտակներ գրեց ազատութեան։ Հայոց նախարարները դորանից սիրտ առած՝ եկան ներկայացան Յազկերտի առաջը։

### ԳԼՈՒԽ ԺԴ. Հարցափորձ։

Հայոց քահանաները դատւում են Միհրներսեհի տանում. նոցա եւ նախարարներին կապել են տալիս եւ նշանակւում է մեծ ատեան հարցափորձի։

### ԳԼՈՒԽ ԺԵ. Վասակի անկումը։

Յազկերտը մեծ հրապարակի առաջ դատում է նախարարներին եւ Վասակին։ Վասակը մեղաւոր է դուրս գալիս եւ պատժւում։ Վարազվաղան Սիւնին լինում է Սիւնեաց տէր։ Վասակը մեռնում է թշուառութեան մէջ։

### ԳԼՈՒԽ ԺԶ. Քահանաներն ու Նախարարները։

Քահանաներն եւ նախարարները բանտարկւած մնում են Պարսկաստանում։ Յազկերտը Քուշանաց դէմ անյաջող պատերազմ ունենալով՝ հրամայեց քահանաներին սպանել. (453։)





## ԳԼՈՒԽ ԺԷ. Մոգպետ։

*Այր աշխարհի դենպետ իշխանը բանտարկեալ քահանաների շնորհիւ քրիստոնեայ է դառնում եւ Յազկերտի հրամանով տարաշխարհ է լինում։*

## ԳԼՈՒԽ ԺԸ. Քահանաների հրաժարականը։

*Քահանաների հրաժարուելը բանտարկեալ նախարարների մօտից եւ դէպի իւրեանց մարտիրոսութեան տեղը տարուիլը։*

## ԳԼՈՒԽ ԺԹ. Խուժիկ։

*Խուժիկ վաճառականը, որ ծածուկ քրիստոնեայ էր, ընկերանում է դահիճների հետ։ Սուրբ քահանաներին վերջին անգամ ստիպում են ուրանալ իրենց հաւատը. նոքա հրաժարում են, եւ նահատակւում։ Խուժիկը գողանում է սուրբ քահանաների մարմինները։*

## ԳԼՈՒԽ Ի. Խորէն եւ Աբրահամ։

*Խորէն եւ Աբրահամ քահանաները խնդրում են, որ իրենց էլ սպանեն։ Յազկերտի հրամանով նոցա խեղացնում են եւ աքսորում Ասորեստանի Շահուղ գաւառը։ Ասորեստանի քրիստոնեաները սիրով ընդունում եւ պահում են նոցա։ Խորէնը վախճանում է Ասորեստանում, իսկ Աբրահամը քրիստոնեաների թախանձանքով գալիս է Հայաստան եւ վախճանում է եպիսկոպոսութեան կարգի մէջ։*

## ԳԼՈՒԽ ԻԱ. Նախարարների վերադարձը։

*Նախարարների կեանքը բանտում եւ նոցա կրած զրկողութիւնները տեսնելով Յազկերտ ուզում է օգուտ քաղել եւ կրկին ստիպում է ուրանալ իրենց հաւատը։ Նախարարները չեն յօժարանում։ Շղոմշապուհ իշխանի միջնորդութեամբ նախարարները արձակւում են կապանքից եւ Պարսից զօրքի հետ պատերազմի են գնում։ Յազկերտ նոցա սիրել է սկսում։ Յազկերտը մեռնում է (456) եւ թագաւորում է Պերոզ (458)։ Նախարարները Պերոզի թագաւորութեան վեցերորդ տարին ներումն են գտնում եւ վերադառնում են Հայաստան. (463թ.)*

## ԳԼՈՒԽ ԻԲ. Կանայք։

*Կանանց դրութիւնն Հայաստանում առհասարակ թշուառ է երեւում։ Այրիք եւ կապեալ նախարարների կանայք զարմանալի համբերութեամբ տանում են շատ զրկողութիւններ։ Նոքա հոգս են տանում եւ իրենց զաւակների դաստիարակութեան մասին։*

### ԳԼՈՒԽ ԻԳ. Գիւտ կաթուղիկոս։

Գիւտի կաթուղիկոսութեան ժամանակն՝ անարժան մարդիկ տանուտէրութիւն են գտնում։ Բաբիկ Սիւնի, Առնակ Ամատունի եւ այլ բարեպաշտ նախարարք Գիւտի հետ խորհուրդ են անում ազատուել Պարսից ծառայութիւնից։ Նոցա խորհուրդը յաջողութիւն չգտաւ։ Գիւտը յայտնի կերպով յանդիմանում է ուրացեալներին։ Մաղխազ Գադիշոն գանգատ է անում Պերոզին Գիւտի վերայ։ Գիւտը կոչւում է Պարսից դուռը եւ զրկւում է կաթուղիկոսական պաշտօնից։

### ԳԼՈՒԽ ԻԴ. Վահան Մամիկոնեան։

Վրաց Աշուշայ իշխանն ազատում է Հմայեկի որդւոցը. (454 թ.) Զուիկը կրթում է նոցա Վրաստանում։ Ժամանակի իշխանները նախանձում են նոցա վիճակին։ Նոցանից անդրանիկի Վահան Մամիկոնեանի՝ յաջողումը։ Ուրացեալ նախարարների բանսարկութիւնից ազատուելու համար Վահանն ուրանում է իւր հաւատը։ Վրիւ Առոյին ամբաստանութիւն է անում Պերոզի առաջ Վահանի վերայ։ Վահանը գնում է Պարսից Դուռը եւ վերադառնում է արդարացած։

### ԳԼՈՒԽ ԻԵ. Ապստամբութիւն։

Վահան Մամիկոնեանը մտատանջութեան մէջ է ընկնում իւր ուրացութեան պատճառաւ։ Վրաց Վազգէն բդեշխի մահն եւ Վախթանգի ապստամբութիւնը. (482 թուին։) Հայոց նախարարները խորհուրդ են անում ապստամբելու։ Վահանը միաբանում է նոցա խորհրդին։ Վարազշապուհ Ամատունին յայտնում է նախարարների գաղտնիքը Ատրվշնասպ մարզպանին։ Ատրվշնասպ եւ Վեհվեհնամ փախչում են Անի բերդը, եւ այնտեղից գնում ամրանում են Արտաշատու բերդում։ Ուխտապահները յափշտակում են Պարսից գրաստը. բռնում են Գադիշոյ Մաղխազին եւ պաշարում են Արտաշատու բերդը։ Ատրվշնասպն եւ Վեհվեհնամը գիշերով փախչում են Ատրպատական. եւ ուրացեալների թելադրութեամբ գալիս են զօրքով ուխտապահների վերայ։

### ԳԼՈՒԽ ԻԶ. Ակոռու կռիւը։

Ուխտապահները հաստատւում են Դուին քաղաքում։ Սահակ ասպետը Հայոց մարզպան է ընտրւում եւ Վահան Մամիկոնեանն Հայոց սպարապետ (482 թուին)։ Հայոց գունդը մի քանի նախարարների առաջնորդութեամբ դուրս է գալիս Ատրվշնասպի զօրքի դէմ։ Ակոռի գիւղի մօտ պատերազմ է լինում եւ Պարսիկներն յաղթւում են։ Պատերազմի ժամանակ

Գարջոյլ Մաղխազն անցնում է Պարսից կողմը. Ատրվշնասպ սպանուում է։ Ուխտապահները վերադառնում են Դուին յաղթութեան տօն կատարելու եւ ձմեռն հանգստանալու։

## ԳԼՈՒԽ ԻԷ. Ներսեհապատի կռիւը։

Ուխտապահները Վրաց թագաւորից օգնութիւն են խնդրում եւ չեն գտնում։ Վահան Մամիկոնեանը մարդիկ է ուղարկում Հայոց նախարարներին օգնութեան կանչելու։ Միքանի նախարարներ ընդունում են Վահանի հրաւէրը։ Պարսից զօրքը գալիս է Հեր եւ Զարեւանդ։ Ուխտապահներն հանդիպում են նոցա Արտազ գաւառում եւ Ներսեհապատ գիւղի մօտ լինում է պատերազմ. (483։) Պարսիկները յաղթուում են եւ ուխտապահները մեծ աւարով վերադառնում են Դուին։ Վարդ Մամիկոնեանն ազատուում է Պարսից կապանքից։

## ԳԼՈՒԽ ԻԸ. Վախթանգի խարդախութիւնը։

Պարսից զօրքը մտնում է Վրաստան։ Հայոց ուխտապահները գնում են Վրաց օգնութեան։ Վախթանգը խաբխբելով նեղացնում է Հայերին։ Կուր գետի մօտ լինում է պատերազմ եւ Հայերը յաղթուում ու ցիրուցան են լինում (483)։ Վահան Մամիկոնեանը փախչում է Տայք, իսկ Սահակ մարզպանն եւ Վասակ Մամիկոնեանն ընկնում են պատերազմում։ Միհրան Պարսից զօրավարը գնում է Վահանի յետեւից եւ հաշտութիւն է առաջարկում։ Միհրանը կոչուում է Պարսկաստան եւ Վահանը գալիս է Դուին (484)։ Սուտ լուր է գալիս Սահակ մարզպանի կենդանութեան մասին եւ Մուշեղ Մամիկոնեանը գնում է Վրաստան։

## ԳԼՈՒԽ ԻԹ. Պերոզի մահը։

Զարմիհր Հազարաւուխտը զօրքով մտնում է Հայաստան եւ բանակ դնում Դուին քաղաքի մօտ. (484 թուին։) Հայերը դուրս եկան պատերազմ, բայց չկարողացան վերջացնել. Վահան Մամիկոնեանն իւր գնդովն հեռացաւ Խաղտեաց ամուր տեղերը։ Զարմիհր Վահանի յետեւն է ընկնում, բայց չի կարողանում բռնել։ Կամսարական Հրահատի եւ Ներսեհի կանայք գերի են ընկնում նորա ձեռքը։ Զարմիհրը գնում է Վրաստան. նորա տեղը մնում է Շապուհ Միհրանեան։ Վահանը զանազան քաջութիւններով անհանգիստ է անում Շապուհին։ Պարսից գունդը մեծ կորուստների մէջ է ընկնում. Գդիհոն Սիւնին սպանուում է ուխտապահների ձեռքից։ Պարսիկներն աշխատում են Դուին հանել եւ ազատել Վահանի

ձեռքից։ Պերոզի մահը (484 թուին)։ Շապուհ վերադառնում է Պարսկաստան եւ կամաւորականների կանանցը թողնում է Բողբերդում։ Վահան Մամիկոնեանը վերադառնում է Դուին։

## ԳԼՈՒԽ Լ. Հաշտութիւն։

Վաղարշը թագաւոր է լինում Պարսից (484 թ)։ Նիխորը գալիս է Հայաստան ուխտապահներին խաղաղութեամբ նուաճելու։ Նուարսակի դաշնադրութեամբ Վահանի երեք գլխաւոր պայմանները ընդունում է Նիխոր (485)։ Նիխորը վերադառնում է Դուռը դաշնադրութիւնն հաստատել տալու։ Վահան եւս կարճ ժամանակից յետոյ գնում է Դուռը։

## ԳԼՈՒԽ ԼԱ. Վահանի մարզպանութիւնը։

Վաղարշը հրապարակաւ գովում է ուխտապահների քաջութիւնը. ներում է ապստամբութեան մեղքը. Վահանին Մամիկոնեան տանուտէրութիւնն ու Հայոց սպարապետութիւնն է շնորհում եւ պատուով արձակում է Հայաստան. (485։) Վահանի միջնորդութեամբ կամաւորականներին էլ շնորհում է տանուտէրութիւն։ Անդեկանը գալիս է Հայաստան մարզպանութեան եւ կարճ ժամանակից յետոյ վերադառնում է։ Անդեկանի յորդորմամբ Վաղարշը մարզպան է նշանակում Վահանին. (486 թուին։) Յովհան Մանդակունի կաթուղիկոսը Դուին քաղաքի Մայր եկեղեցու մէջ մաղթանք է կատարում եւ ճառ ասում այս առթիւ։

---

# ՑԱՆԿ



## ԺԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

### ԳԼՈՒԽ Ա.



### ԳԼՈՒԽ Բ.

ԳԼՈՒԽ Գ.



ԳԼՈՒԽ Դ.



ԳԼՈՒԽ Ե.



ԳԼՈՒԽ Զ.

## ԳԼՈՒԽ Է.



## ԳԼՈՒԽ Ը.



## ԳԼՈՒԽ Թ.

## ԳԼՈՒԽ Ժ.



## ԳԼՈՒԽ ԺԱ.



## ԳԼՈՒԽ ԺԲ.



## ԳԼՈՒԽ ԺԳ.

ԳԼՈՒԽ ԻԴ.



ԳԼՈՒԽ ԻԵ.



ԳԼՈՒԽ ԻԶ.



ԳԼՈՒԽ ԻԸ.



ԳԼՈՒԽ ԻԹ.



ԳԼՈՒԽ Լ.



---

## ԱՑԼԵԻԱՑԼՔ·



ՀԱՑՈՑ ՄԻՔԱՆԻ ՊԱՏՄԻՉՆԵՐԸ·







*ՎԵՐՋ:*

## Գ. ԳՐՔԻ ՎՐԻՊԱԿՆԵՐԸ.

---

| Երես. | Տող | | Կարդա՛ |
|---|---|---|---|
| 17 | 18 | «Հիւսիսից՝ Հայք» | «Հիւսիսից՝ Չորրորդ Հայք». |
| 21 | 2 (ներքը) | Արջն | Արղն |
| 104 | 6 (վեր) | Արտագիրս | Արտագերս |
| 116 | 2 (ներքը) | Սումալուայ | Սուրմալուայ |
| 134 | 8 » | Բաբեկի | Բաբիկի |
| 161 | 17 » | Արտաշէս | Արտաշիր |
| 174 | | Արձեւացեաց | Անձեւացեաց |
| 174 | | Խորխունեաց | Խորխոռունեաց |